ՈՒԽՏԱՆԷՍ

ԵՊԻՍԿՈՊՈՍ

ՀԱՏՈՒԱԾ ԱՌԱՋԻՆ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## Հայոց



ՌՅԻ — 1871

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ԿԱԹՈՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

Ի ՎԱՂԱՐՇԱՊԱՏ.

ՀՐԱՄԱ՛ՆԱՒ

Տ. Տ. ԳԷՈՐԳԱՅ Դ.

ՎԵՀԱՓԱՌ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ

ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ։




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ի Տասներորդ դարու ծաղկեցաւ Ուխտանէս Եպիսկոպոս Սեբաստացւոյ, որ գրեաց զպատմութիւնս՝ ի խնդրոյ Անանիայի Վարդապետի Նարեկայ վանաց Առաջնորդի։

Ո՛չ սակաւ ընծայէ սա զտեղեկութիւնս կարեւորս որ վասն անցից անցելոց բաժանման Վրաց ի մէնջ, յաւուրս Մովսիսի Բ եւ Աբրահամու Ա կաթողիկոսաց ի Զ դարու. զոր գուցէ ակամայ եւ կամ ըստ հաճոյս այլայլեալ պատմէ հեղինակն եռահատոր պատմութեան Հայոց։

Այլ ցաւիմք, զի ոչ յաջողեցաք գէթ այլուստ գտանել զամբողջ աշխատութիւնս Ուխտանիսի։ Մի միայն օրինակ գոյր ի Մատենադարանի Մայր Աթոռոյս՝ բոլորագրով օրինակեալ իբր ի ԺԱ կամ ի ԺԲ դարու. ի վերջն պակասին թերթք, որով կիսատ մնայ Կոնդակն Շրջաբերական Աբրահամու Ա Կաթողիկոսի եւ շարունակութիւն պատմութեան, եւ ոչ գիտեմք, պատահմա՞մբ էին անկեալ՝ եթէ գիտութեամբ հատեալ ի բաց բարձեալ ի թշնամեաց։

Ի ճակատին խորագիր ունի այսպէս. «Զպատմութիւնս յերիս հատուածս, զոր ասացեալ է Տեառն Ուխտանիսի Սե(բաստացւոյ) Եպիսկոպոսի՝ ի խնդրոյ Հաւրն Անանիայի Նարեկավանաց Առաջնորդի եւ նախաշար Վարդապետի, հատուածն առաջին՝ յաղագս Թագաւորաց եւ Հայրապետաց մերոց, եւ երկրորդն՝

վասն բաժանման Մ̃րաց, և երրորդն՝ յաղագս Մկրտութեան ազգին այնմիկ Նորաղն կոչեցեալ,,։ Նատի յայսմանէ և ի գրութենէն մատենագրիս առ խնդրողն բացայայտ երևին, զի զերիս հատուածս պարտ էր ունել պատմութեանս Ուխտանէսի, յորոց առաջինն՝ ամբողջ, երկրորդն՝ մասամբ ինչ թերի գտանի ի մեզ, իսկ երրորդն իսպառ անհետացեալ. յորում մարթ էին լինել տեղեկութեանց արժանի ուշադրութեան բանախոյզ հնասիրաց՝ յաղագս Մկրտութեան Նորաղն կոչեցեալ Ազգի՝ և երկրի նոցա և այլոց՝ որպէս գրէ Ուխտանէս յառաջին գլուխ Ա. հատուածի ի թղթին առ Անանիա Վարդապետ (տե՛ս յէջս 14, ի տող 13—29)։

Համարք գլխոց սորա էին խառն և պակաս ըստ մեծի մասին, գրչութիւնն բազմաշփոթ, զորս լրացուցաք յարմարելով ըստ կարգին, նոյնպէս զ–ն փոխեալ յօ ըստ արժանս օտարական գործածութեանց, և ի տեղի եղծեալ և անվերծանելի բառից ինչ և բանից կետադրեցաք, իսկ զանիմաստն կամ ըստ մեզ զդժուարիմացն՝ որք գուցէ իցեն գրչասխալք, եդաք նօտրագրով։

Արդ փութացաք ընծայել ի լոյս՝ զոր ի ձեռին էր՝ ի վայելս մերոց և օտարաց, յանձնելով բանասիրաց Ազգիս, զի եթէ գտանիցեն զամբողջն մատենագրութեանս՝ յանկեան ուրեք կամ ի վանօրայս ինչ, ջան ի գործ արկցեն և զնոյն արձանացուցանել ի տիպ։

Երկնչելով մեր ի ժանտաց ժամանակին, զոր ինչ ազնուական մատենագրական ժառանգութեան պատմական երկ.ք վաղեմեաց մերոց նախնեաց գտանին ի Մատենադարանի Մայր Աթոռոյս, թէև իցեն թերիք և պակասք, հարկ է մեզ՝ տալ ի լոյս, զի մի՛ իսպառ անհետասցին յապագային։

## ՈՒԽՏԱՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

---

### ՀԱՏՈՒԱԾ ԱՌԱՋԻՆ

---

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՀԱՅՐԱՊԵՏԱՑ ԵՒ ԹԱԳԱՒՈՐԱՑ ՀԱՅՈՑ

### ԳԼՈՒԽ Ա

*Զառ ի յօրն լուսոյ շնորհաց ընդունակի՝ և զՄիածնի Բանի նորա բնակարանի՝ և զհամագոյակցի Հոգւոյն ընդունողի՝ զՏեառն իմոյ պատուականի և զհօրն հոգևորի ընկալայ զգրեալս կատարելապէս օրհնութեամբ, և բազում զ[illegible]՝ և հոգևոր ողջունիւ. զոր լի սիրով սակս խնդրոյն եկեալ առ մեզ՝ զոր ի սուրբ սրտէ և ի մտաց բարեաց բղխեալ բանի շրթանց քոց և մեծարանք ի քումմէ մեծանձնութենէդ առ իմն կրտսերութիւն, զոր բերաւ ի ձեռն սիրելի և հաւատարիմ եղբօր մերոյ Փիլիպպոսի քահանայի։ Այլ որ ընդդէմ դարձայ հրամանի քում՝ զտկարութիւնս իմ առաջի արկեալ, որպէս մի ոմն ի հնումն զնրբութիւն ձայնին և զծանրութիւն լեզուին առաջի արկանելով Տեառն, և այլ ոմն յետոյ քան զնա՝ զմանկութիւն տիոյն պատճառելով. վասնզի բարի է և տեղի տալ Աստուծոյ փոքր ինչ՝ գրեալ է. հայցեմ անմեղադիր լինել, զի ոչ այն միայն էր պատճառ, այլ և այլ իմն, զի զհաւատարմութիւն խնդրէի տեսանել ոչ միայն ի գրոյ . . . իատի առաքեցաւ ի քէն, այլ*

և յերկուց և յերից վկայից հաստատելոյ միանգամայն. և լու-
եալ իսկ էր իմ զգալն քո միւսանգամ առ մեզ, և այնմ ան-
սայի տեսանել զքեզ՝ և բերան ի բերան խօսել, և ստուգիւ ի
շրթանց քոց և ապա հաւատարմացուցանել զյառաջագոյն
գրեալսն առ ի քէն, որպէս և եղև իսկ, զոր և յետոյ ասացից
զժամանակ գալոյ քո՝ և զպատճառն՝ վասնորոյ եկիր, նաև զտե-
ղեն իսկ յայտ արարից, յորում սկիզբն եղև բանից իսկզբան
պատմութեանս՝ հարցանելով զպատճառն. Թէպէտև յառա-
ջագոյն սակաւ ինչ հասու էիր լեալ ի գրոյ անտի իմոյ՝ որ բե-
րաւ քեզ ի ձեռն Սիմէոն քահանայի, և ապա ի ձեռն Քրիստոփոր
զբաւանդակն (բովանդակ) ծանուցեալ։ Բայց արդ լինիմ քեզ
Ահարոն և Եսայիաս. Թէպէտև յանդգնութիւն է զայս ասել,
և ընթանամ պատրաստաբար առ հարցմունս խնդրոյն որ ի քէն,
և փութամ մատուցութեամբ հատուցանել զոր խոստացայ՝ վերա-
բերեալ յաղօթս քո։ Վասնզի կարօտ եմ օժանդակութեան
աղօթից քոց՝ ով փափագելի ի հարս՝ Հայր սուրբ. Թէպէտև
Հոգին սուրբ ի Թիկունս հասանէ տկարութեան իմոյ, զի Թե-
րևս կարացից կատարել առաջի քո զխնդրելին ի քէն ի մա-
տենիս այս փոքր պատմութեան զամենայն կարգ ըստ կարգի,
և մի ըստ միոջէ, զի գիտասցես ստուգիւ. Բայց նախ Տեա-
ռըն իմոյ պատուականին Հօր և պատկառելագունի զայլերս իմոյ
բանից առաջի արկանեմք քում սրբամաքրութեանդ, և աղա-
չեմ զի մի՛ և եթէ կամօք կամ յօժարութեամբ որ զիմն խա-
նարհեցայ տգիտութիւն, այլ անձկագար աղօթս առնել առ
Աստուած, զի Թերևս կարացից խնդրել տկարութեանս ըստ կա-
մաց քոց կատարել զկամս քո յայնմիկ յօժարութեանս, որ
զգուշուն Թողուլ՝ յոյս հայեցար. զի զայսմանիկ հրամայեսցես ի
քէն՝ քեզ պարտ էր կատարել առ իմս խնդիրս, որպէս յառաջա-
գոյն գրեցի առ քեզ սակաւ ինչ զպատճառն յայտ արարեալ

պատմութեանս. զի յայսմ ամենայնի ընաւ իսկ ոչ ունէի թէ լինիցի, այլ սակաւուք յայտարարութեամբ յիշատակել ի ձեռն գրոյն իմոյ՝ որ բերաւ առ քեզ։ Արդ քանզի խնդրեցեր ի սկզբբան ի ձեռն խնդրոյ, և ապա բերան ի բերան խօսելով զիմս յորդորեցեր զմիտս, որ կրսերս եմ ուսմամբ՝ և յետին քան զամենեսեան, իսկ ժամանակաւ քան զքաղում արբանեկակիցս իմ, և գիտեմ՝ ասէ, սիրոյ և խոնարհութեան եղև այս ինձ առ ի քէն։ Արդ սկսայց այսուհետև՝ սկիզբն դնելով զսէր և զխոնարհութիւն՝ որպէս վայելէ քում սրբութեանդ և պարկեշտ վարուցդ՝ ով պատուական գլուխ և պատկառելի. զի իբրև ընդ հայելի հայելով ի քեզ տեսանեմք զամենայն բարեկարգութեան ձև և նմանութիւն և իր և օրինակ։ Նախ Առաջնորդական պետութեամբդ բարգաւաճեալ, և ապա խորհրդով յաւելեալ լաւագունիւ։ Իսկ աստուածայնօքն առաւել ևս պայծառացեալ փառօք և մեծագոյն պատուով պանծացեալ ի պարծանս մեզ՝ և ի փառս Քրիստոսի։

Արդ ամենայն գիրք աստուածաշունչք և օգտակարք զօգուտըն մեզ ուսուցանեն պատուիրան, նախ սիրել զՏէր Աստուած յամենայն սրտէ և յանձնէ և ի զօրութենէ և ի մտաց՝ որպէս ուսուցանէ օրինադիրն Մովսէս, և որ սորին ընծակից՝ սիրել զընկերն իբրև զանձն, և որ այլն ևս. և յայլում վայրի այլ ևս՝ որ ի սոյն յարմարին խրատք և խօսք յաստուածայլին օրինացն, և երանելի լինել, որ խորհի յօրէնս Տեառն ի տուէ և ի գիշերի՝ ըստ մարգարէական ձայնին։ Դու դարձեալ, երանի՛ որ խորհի յաղքատն և ի տնանկն. և զայն ևս իւր համարի Աստուած։ Դու դարձեալ այլ երանէ մարգարէն զգնացեալսն ամբծութեան Ճանապարհաւ, զվայելչութիւնս նորա բոլորով սրտիւ, և տանել զոր յամենայնի գիրս գրեալ է վասն նորա, և այնուհետև երանելի լինել ամենայնիւ։ Դու այսոքիկ իմաստնոց և աստ-

ուածասիրաց է գործ, որ կարիցէ ճանաչել իմաստութեամբ գերատ՝ ըստ իմաստնոցն բանի. զի սիրել զՏէր Աստուած՝ բարի է յամենայն սրտէ՝ որպէս վերագոյն ասացաք, և կարի կարգաւոր և կատարելագոյն քան զամենայն սէր. և ոչ երբէք յացի անձն աստուածային սէր առ ի սիրել զԱստուած գրեալ է. և որ սիրէ զԱստուած, նա է տեղեկացեալ ի նմանէ. և յիշել զնա յամենայն ժամ, ուրախութիւն է ըստ մարգարէին։ Քանզի սիրելն զաստուած, հոգեխառն և աստուածախօս լինի սիրողին իւրում. և կոչել զԱստուած զօրութիւն իւր ըստ Դաւթայ ձայնին, նաև ամենեցուն առիթ փրկութեան լինի. որք կոչեն զաստուած զօրութիւն՝ և այն ի վերին իմաստութենէն լինի տըուեալ, որ է սուրբ, խաղաղարար, լի բարօք և պտղօք արդարութեան. վասնզի աղբիւր է Աստուած ամենայն բարեաց, և արբուցանէ զպապակեալ ոգիս՝ ըստ իւրաքանչիւր ցանկութեանց՝ ի բարի և ի սուրբ շնորհաց. քանզի տուիչ և լցուցիչ ամենայն բարեաց, և ինքն է բարի և աղբիւր բարութեանց, և ի նմանէ բղխէ ամենայն բարիք. և որք սիրեն զնա, լինի պարգևատու. նաև որք սիրեն զնա, սիրին ի նմանէ. որ սիրեն զիս՝ ասէ, սիրեսցի ի Հօրէ իմմէ, և ես սիրեցից զնա՝ այլովքն հանդերձ. զի ոչ ոք այնչափ սիրէ զնա, որչափ նա զմեզ սիրեաց. այնչափ՝ ասէ՝ սիրեաց աստուած զմարդիկ, մինչև զորդին իւր Միածին ետ՝ լուաք յԱւետարանէն։ Եւ դարձեալ, թէ՝ յայսմ երևեցաւ սէր Նորա ի մեզ, զի զանձն իւր դիցէ(եդ)վասն մեր. և այսպիսի սէր ոչ ոք կալցի՝ թէ զանձն իւր դիցէ ի վերայ բարեկամաց իւրոց. և դարձեալ, դուք բարեկամք իմ էք՝ եթէ սիրէք զմիմեանս՝ ի Տեառնէ իսկ հրամանաւորեցաւ. և դարձեալ, թէ յայսմ ծանիցեն ամենեքեան՝ թէ իմ աշակերտք էք՝ թէ սիրիցէք զմիմեանս. զի որ սիրէ զընկերն՝ զօրէնս կատարէ. և կատարումն օրինաց՝ սէր է, և սէր կատարեալ ի բաց մերժէ զերկիւ-

ղըն. զի երկիւղ ո՛չ գոյ ի սէր. վասնզի երկիւղ ընդ տանջանօք է։ Արդ լիցո՛ւք եղբայրասէրք՝ մանաւանդ քան անձնասէրք. զի որ սիրէ զեղբայրն, զաստուած սիրէ. և սիրելն զաստուած, ներուժն տանջանացն՝ որ անդն, նաև աստ ներէ մեզ բազում անգամ. և ա՛յն սիրոյ է պատճառ, զի զդարձն մեր խնդրէ առ ինքն. դարձարո՛ւք՝ ասէ՝ առիս, և ես դառնամ առ ձեզ. արդ ետ զանձն իւր ի մահ վասն մեր, և ա՛յն կամաւ Հօր, զի զորդին իւր Միածին ետ։ Եւ այսմ Առաքեալ վկայէ, թէ որ յիւր որդին ո՛չ խնայեաց, այլ վասն մեր ամենեցուն մատնեաց զնա. և յայլում տեղւոջ, եթէ ետ զանձն իւր վասն մեր ի չարչարանս խաչի և մահու, զի զմեզ փրկեսցէ ի մահուանէ։ Եւ դարձեալ այլուր, թէ՝ ետ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց։ Արդ ա՛յս է սէրն նորա ի մեզ. իսկ մերն առ նա՝ սիրել զնա ի բոլոր սրտէ և ի բովանդակ մտաց և ի զօրութենէ, և առնել զհաճոյսն նորա առաջի նորա յամենայն ժամ. և չարչարակից լինել նմա և նմանող ամենայնիւ, յամենայնի, որպէս և Պօղոս, թէ՝ նմանողք ինձ եղերո՛ւք՝ որպէս և ես Քրիստոսի. և ա՛յն՝ կամօք և յօժարութեամբ։ Այլև արդ մեք իսկ սպանանելով զանդամս երկրաւորս ըստ իւրում բանին. և եթէ ես աստուածոց . . . կեցից և ընդ Քրիստոսի ի խաչ ելից։ Եւ դարձեալ. թէ ո՛չ եմ ես կենդանի, այլ կենդանի է յիս Քրիստոս. և որ մեռանի մարմնով, ըստ Աստուծոյ կենդանանայ հոգւով. սպանէ՛ք՝ ասէ՝ զանդամս ձեր զերկրաւորս, ի բաց ընկենլով զամենայն կիրս՝ որ ըստ աշխարհի գործի հակառակ ճշմարտութեանն, և ի խաչ ելանել յաշխարհի՝ որպէս և գրեալ է. նաև, եթէ մեռանել իսկ հասանէ, և զա՛յն ևս կրել, որպէս և առաջին սուրբքըն կամօք և յօժարութեամբ մտանէին ի կապանս և ի բանտըս, և մատնէին զանձինս իւրեանց ի չարչարանս և ի մահ. և եթէ փախչել ումեք հասանէր, վասն աստուծոյ հնարիւք գո-

ղանայր զինքն առ ժամանակ մի, և դարձեալ ի մահ մատնէր. և դարձեալ այլ ոմանք յաղագս աստուծոյ և աստուածայնոյն ջատագով լեալ նախ քան զըմբռնելն զնոսա թշնամեացն, զանձինս իւրեանց ի վաղեց ի վայր մղէին. Թէպէտ և ոչ էր իրացն իրաւունք առնել, այլ նոքա զմահ յափշտակութեան լաւ համարէին իւրեանց՝ առաւել քան զչարութիւն ամբարշտաց։ Քանզի յառաջագոյն ուսեալ էին յօրինաց անտի և ի մարգարէից՝ սիրել զՏէր Աստուած՝ և մի՛ երկիրպագանել Աստուծոյ օտարի. Տեառն Աստուծոյ քում երկիրպագցես՝ ասէ, և զնա միայն պաշտեսցես։ Եւ դարձեալ, թէ՝ մի՛ եղիցին քեզ այլ աստուածք բայց յինէն. և դարձեալ, թէ՝ որ զոհէ օտարոտի աստուծոյ՝ կորիցէ։

Արդ մեք ունիմք այսպիսի բազում յիշատակ ի գրոց սրբոց, սիրել զՏէր Աստուած և զընկերն իբրև զանձն, և պարտէ կատարել յամենայն ժամ. ունիս՝ ասէ՝ բազում պատուիրանաց յիշատակ, զբարեգործութեամբ մի՛ զանց առներ. արդ պարտ է զհետ ընթանալ, և բուռն հարկանել զբարի գործոց, և գնալ ի ճանապարհս Տեառն՝ անխեթ և անխոտոր, և պահել զպատուիրանս նորա, և առնել զիրաւունս, և գործել զարդարութիւն յամենայն ժամ մինչև ի կէտ սահմանեալ կոչմանն Քրիստոսի. վասնզի աշակերտք եմք օրինացն Աստուծոյ և մարգարէից, նաև առաքելոց իսկ, և ամենայն սուրբ հարցն և վարդապետացն՝ որք խօսեցան մեզ զԲանն կենաց, մանաւանդ թէ քաղաքակիցք սրբոց և ընտանիք Աստուծոյ, շնորհօք (և) որդեգրութեամբ ետուն և տաճար բնակութեան Բանին Աստուծոյ, շինեալ ի վերայ հիման հաւատոյ առաքելոց և մարգարէից։ Արդ գնասցուք այսուհետև հաւատով՝ յուսով և սիրով, և սիրեսցուք զմիմեանս. որպէս և Աստուած զմեզ սիրեաց, և մեք սիրեսցուք զնա, և զպատուիրանս նորա պահեսցուք. վա-

որն զի ինքն իսկ ասաց, եթէ սիրէք զիս, և զպատուիրանս իմ պահեսջիք։ Արդ աստուած սէր է, և սէր՝ զթիւ, և զանուն, և զխորհուրդ Երրորդութեանն բերէ համար և օրինակ։ Հայր է՝ Որդի՝ Հոգի, և այսու Երրորդութիւն սուրբ խոստովանեալ լի-նի ի մեզ, և երկրպագեալ անձնաւորութեամբ, և անուամբ բաժանեալ, իսկ բնութեամբ և Աստուածութեամբ միաւորեալ և երկրպագեալ. և սոքա միան մեզ, և մի մեր բաժին և ժա-ռանգութիւն. Տէր է բաժին ժառանգութեան իմոյ՝ ասէ մար-գարէն։ Արդ միան մեզ հաւատք, յոյս, սէր. հաւատն՝ ի Հայր, յոյսն՝ յՈրդի, սէրն՝ ի սուրբ Հոգի։ Վասնզի այսոքիկ միան մեզ, և սոքօք գործին ամենայն արդարութիւնք։ Հաւատաց՝ ասէ՝ Աբրահամ յաստուած, և համարեցաւ նմա յարդարութիւն. և բազումք յուսով ապրեցան. և սէր՝ որ է զարդ կատարման, և սէր՝ ընկերի իւրում չար ոչ առնէ. և լրումն օրինաց՝ սէր է։ Արդ զայս փոքր ի շատէ գրեցաք առ քեզ յաղագս սիրոյ՝ վստահացեալ ի քոյին հեզութիւնդ՝ ո՛ հայր հոգևոր. քանզի դի-տեմք զքեզ ճշմարիտ աշակերտ գոլ Քրիստոսի հեզոյն և մար-դասիրին, և ուսեալ ի նմանէ հեզութիւն և արդարութիւն և խոնարհութիւն. զոր սկսաւ ինքն առնել և ուսուցանել. ու-սարո՛ւք յինէն, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ. և ես յո՞ բնա-կեցայց, եթէ ոչ ի հեզս և ի խոնարհս. արդարև բնակարան են այնպիսիքն սրբոյ Երրորդութեան. Ես և Հայր իմ ի նմա եկեսցո՛ւք՝ ասէ, և օթևանս առ նմա արասցուք. զի ուր Հայր և Որդի բնակին, և Հոգին սուրբ անմեկնելի իսկ լինի. քանզի որ խոնարհեցուցանէ զանձն իւր, բարձրասցի նոքօք. զոր սիրէ զԱստուած, Աստուած ի նմա բնակէ, և նա յԱստուած։ Եւ պարտ և արժան է սուրբ սրտիւ և հաստատուն հաւատով սի-րել և պաշտել զսուրբ և զանբաժանելի և զերկրպագելի Երրոր-դութիւնն։ Այլ վասն եղբայրսիրութեան չէր ինչ պիտոյ գր-

րել առ քեզ՝ ըստ առաքելոյ բանին. զի դու ինքն Աստուածուսոյց ես, կարող ես և զայդոսիկ զգրեալսդ ուսուցանել հասարակաց։ Վասնզի ուսեալ յԱստուծոյ՝ և ուսուցեալ զբազումս բազում անգամ, և ի մանկութենէ առեալ զլուծ խոնարհութեան, և նմա մնեալ և ուսեալ . . . . զամենայն գործս առաքինութեան, և Աստուածային բարեպաշտութեամբ դայեակեալ և դաստիարակեալ զմանկունս հաւատոյ նոր սիոնի։

Արդ զայսոսիկ գրեալս ի քեզ տեսանեմք կատարեալ, և Աստուածային շնորհիւ պայծառացեալ, և ձրիւք սուրբ Հոգւոյն առլցեալ գիտութեամբ, և հոգևորական երգով գեղգեղմամբ գեր ի վերոյ քան զամենեսեան, և ամենայն պատուիրանաց Աստուծոյ հասեալ և հաստատեալ քան զբազումս՝ ով Աստուածազարդ և Վսեմական Տէր իմ Տէր՝ և տիեզերական Վարդապետ, իբր ծառ իմն բազմապտուղ՝ և բարձր ի մէջ վայելուչ և աստուածատունկ դրախտիդ Նարեկայ կոչեցեալ ուխտի՝ սաղարթ առեալ և վարսաւորեալ վարուք առաքինութեամբ, և ապա ծաղկեալ ի տան Տեառն և ի գաւիթս Աստուծոյ, և բերեալ պտուղ արդարութեան՝ և ընդ միոյ հարիւր, և ընդ միոյ վաթսուն, և ընդ միոյ երեսուն, և բազում ճգնութեամբ և առաքինութեամբ գեր ի վերոյ եղեալ ի մէջ բազմաց, և կանխաւ առաջնորդեալ զքեզ ինքն յանդաստանս հոգևորս ընդ արթնեալ և ընդ զգուշացեալ մշակս սպասես գալստեան Տեառն, բեղմնաւորեալ զմնասս շնորհաց քոց՝ արկանել ի սեղանաւորս տաղանդ անշահութեամբ ի ներքին մարդն բնաւորեալ, զի ի գալստեան Տեառն առցես զանարատ և զանապակարքոյց զեղումն պարգևաց բարեաց ի Հօրէն լուսոյ, և լսել զաւետաւոր զայն ձայն՝ եթէ եկայք առ իս ամենայն աշխատեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ. և դարձեալ, եթէ եկայք օրհնեալք Հօր իմոյ՝ ժառանգեցէք զխոստացեալ

ձեզ զարքայութիւն. և այսօրէն յաջակողմեան ձայն. իսկ ապա ի բաց ասի որոշումն՝ որ յահեկացն, և որ զկնի այնորիկ։ Եւ այսօրէն ձայնք անդ՝ ուր կայ Աստուած ի մէջ Աստուածոց եղելոց և Թագաւորաց, որոշելով և բաժանելով զվատթարն ի լաւագունէն՝ և զարժանաւորութիւնն զանդերանութեան, և ընդ աջմէ ընդ արդարսն դասելով ընդ սուրբս ամենայն. վասնզի արժան է ոչ այլազգ ինչ ասել, եթէ ոչ բարի չափով Աստուծոյ զքեզ վարկանել արժանի, որ զամենայն չափով և կշռով ուղղէ և հատուցանէ զհատուցումն ըստ իւրաքանչիւր գործոց, որոշելով զվատթարն ի լաւագունէն, որպէս նախասացեալ եղև. վասնզի անսպառ խաղացումն սուրբ և երկրպագելի Հոգւոյն շնորհաց ի քեզ տեսանել՝ ով Աստուածարեալ Տէր և բազմերջանիկ Հայր՝ երկրորդ Կեփաս և առաջին Առաքեալ. որ և նորին շաւղք շրջեալ հանգիտանման գոլ նմա՝ մանաւանդ եթէ հանգիտապատիւ տարացոյց զնորայն մեզ ցուցանելով, նաև հանգիտահաւասար իսկ նման երևեալ մեզ։ Վասնզի մարմնական հանգստենէ փափկութեան ի հոգևորն ժամանեալ խրախճանութիւն, փափագեալ քո և փափագելի լեալ հանգստեան արդարոց. քանզի հաւանիմ ոչ նմա միայն նման գոլ, այլև այլոց արանց աստուածասիրաց և բարեպաշտից, որք են մարդասէրք և աստուածասէրք, այնք՝ որք ըստ բարեպաշտութեանն իւրեանց վարձ զայն առին զաստուածագործութիւն Աւետարանին՝ զկատարելն արեամբ՝ տալով առհաւատչեայ զանձինս իւրեանց ըստ հոգւոյն. և յայն սակս աստուածասիրութիւն լինէր նոցա։ Քանզի մեծ շահ աստուածպաշտութիւնն է՝ գրեալ է, և այն բաւականութեամբ հանդերձ։ Իսկ դու կենդանախառնեալ քոյին սուրբ և պարկեշտ վարուք, և յարանձնեալ խստակիր վշտամբերութեամբ, և կենդանի վըկայեալ ի մարմնի զանմարմնոցն բերելով նմանութիւն, մար-

գարէաքարոզ և առաքելաշնորհ բանիւ ուռկանաւորեալ զբազում վշտաց և ի նեղութենէ նեղ և նուրբ կենաց ծովածուփ կենցաղոյս արտաքս բերելով, և ի նոյն շաւիղ շրջեցուցեալ. յորում քում առաքելական ոտք շրջեալ ի խաղաղութիւն ըստ մարգարէին, և աւետարանեալ ի խաղաղութիւն զԲանն կենաց, որ և աստ կարասցես համարձակապէս զմարգարէին բան, թէ՝ ահաւասիկ ես և մանկունք իմ՝ զոր ետ ինձ Աստուած։

Արդ ով Հայր պատուական, զոր նախկին սիրոյն և կարօտութեանն ողջոյն տամ ի Քրիստոս զարժանն սիրոյ, և զաստուածազարդ անձինդ առողջութիւն խնդրեմ ուսանել, աղաչեմ՝ որ և Հոգին սուրբ՝ որում աւանդեցաք յաւուր վարդապետութեան, նա եղիցի դերահրաշ և արփիափայլ շնորհաց տարածիչ և նորոգիչ, և ի բարեկարգ բարեգործութեան՝ յորում էիր և ես և եղիցես, յարամնալով և ևս քան զեւս առաւել, որպէսզի ըստ Տեառն բանին՝ տեսանեն զգործս ձեր բարիս, և փառաւորեսցեն զՀայր ձեր՝ որ յերկինս։ Արդ զոր դարձեալ վերստին գրեմ խանդակաթ սիրով սուրբ և բազմերջանիկ Տեառն իմոյ Հօր և պատուեալ Վարդապետիդ, մանաւանդ եթէ երկայնին (երկնային) լուսոյ և սուրբ շնորհաց ծարագոյն առընդունակիդ, համարձակիմ ծառայական բանիւ քո յետին և տրուպ աշակերտս՝ կամ թէ որդիս՝ թէ ախորժելի է քում պատուասիրութեանդ, և կամ թէ ինձ համարձակելի անուանեալս Ռուխանէս. զոր և ողջոյն առաք հրաման աշակերտաքար տալ՝ որպէս օրէն է հրաշափառագունի վարդապետի. անկանիմ ծունրադիր և փափագելի կարօտութեամբ, և ի խոնարհ երկիրպագանեմ սուրբ և պարկեշտ անձինդ, և ի հեծութիւնս անմռունչս երգելի է, և ի ձեռն գրոյս հարցանեմ զողջունէ հրեշտակահանգէտ անձինդ. և աղաչեմ զկենաց տուողն, զի մշտնջենաւոր ձգեսցես զժամանակս կենաց քոց, որքան հա-

Ճեղի է սանգծչին՝ և մեզ խնդրելի. և եկեղեցւոյ Աստուծոյ առ ի լրումն պատկառոր նորոգման մաղթելի է, զոր ասեմս, եթէ եղիցի եղիցի։ Ա՛Հ ամ կամ*) ես կարօտութեան, և եթէ ոչ շաղակրատանս և բանից կոկոմանս համարեսցես, զոր տացէ ինձ Տէր առաւնել, և վայելեալ ի փառաց երեսաց քոց, զի ա-ռացից և ես զմարգարէականն, Երբ եկից երեւեցայց երեսաց քոց։ Ահերևս կարծես թէ մոռացեալ եմ զզուարթ և զպայծառ երե-սաց սիրոյն ունակութիւն. քա՛ւ և մի՛ լիցի. զի եթէ մոռա-ցայց զքեզ Երուսաղէմ, ասէ մարգարէն, մոռասցի զիս աջ իմ, այլովքն համերձ։ Բանզի սկիզբն ուրախութեան իմոյ դու ես. վասնզի ոչ խորհուրդք իմ և սիրտ թեթև ինչ մտօք ներքա-ղեալ առ քոյդ խորհին ճշմարտասիրութիւնդ, այլ կալի կա-րևոր և կատարելագոյն և գերագոյն։ Բանզի նոյնգունակ և զքոյդ իմանամ առ իմս փանաքիմս(ց) բանս. նաև առաւնեմ իսկ արդեամբք լեալ մեծարանս առ իս. որ փոքրս եմ և կատար առ քո կատարեալ մեծութիւնդ. վասնզի ես ոչինչ եմ. և եթէ եմ ինչ՝ քո եմ։ Եւ յաղագս այսորիկ յառաջադրեալ նախակար-գեցի զխորհուրդ սիրոյ և խոնարհութեան ի կարգի պատմու-թեանս. զի զքեզ առաւելով յիմս խոնարհեալ փոքրկութիւն նախ սիրոյ և խոնարհութեան։

Արդ քանզի ի ժամանակին յայնմիկ, յորժամ եկիր առ ա-տուածապատիւ և սուրբ Հայրապետն մեր Խաչիկ՝ բերելով նամ ընծայ և պատարագ հոգևոր զգիրս Հաւատարմատ՝. որ ընդ դէմ երկաբնակացն, զոր քո ինքնին խօսեալ ի խորհուրդ հաւատոյ ի ձեռն հոգւոյն սրբոյ ի քեզ բնակելոյ, և բերան ի բերան խօսեցար ընդ իս յաղագս պատմութեանս. զոր եթէ խնդրես զանեղծն ուսանել, ասացից նաև զբանից նշանն. տայցէ

(*) Դուցէ՝ յայամ կամ։

թէ ախորժես. և զեղանակս ժամանակին յայտ արարից. զի յորժամ անցեալ գնացեալ ի միասին՝ և նստաք յեզր գետոյն՝ որ կոչի Ախուրեան, և ասէաք զՊատարագամատոյցն Տեառն զօրութեանց, զոր ասեն Աթանասի, և էր յաւուրս ամառայնոյ, յամսեանն Տրէ, որ օր տասն ու մին էր ամսոյն, յաւուր կիրակէի յիններրորդ ժամուն։ Արդ այս քեզ նշան առ ի յինէն և կնիք սիրոյ և յուխտ յանձնառութեան կատարել զհայցուածըս քո յաղագս պատմութեանս։ Իսկ ի քէն առ իս, զի յիշեսցես զուխտս մեր և զնշան բանին, միանգամայն և զ՚նիք սիրոյ. զի ի սուրբ տեղիսդ՝ որ մակագրեալ ունիս զպետական անուն, յիշատակաւ սիրոյ մշտնջենաւորեսցես՝ յիշելով յաղօթս քո, զի շնորհ.ք սուրբ Հոգւոյն հասարակ քեզ և մեզ՝ բարեխօսութեամբ ամենայն սրբոց՝ պարգևեսցի ձեռնատու լինելով մեզ ի գործս, յորում կամք և պարծիք յաւուրն Աստուծոյ։ Արդ գիտեմ՝ զի մեծ է յիշատակիս շահ՝ ըստ սովորութեան սիրոյ՝ որ օրինօքն Աստուծոյ նմանողք մարդասիրութեան նորա. և Քրիստոսի աշակերտ գոլ ուսեալ ի նմանէ. որ թափեաց զինքն յաղագս մեր, մինչև ի ծառայի կերպարանս, և զօտարացեալսն յինքն ժողովեալ։ Արդ զայսոսիկ զաստուծոյ մարդասիրութիւնն և զաւանդեալն ի նմանէ զպատուիրանս առ ի շահ և յօգուտ հոգւոց մերոց՝ ի սրտի մերում իբր կենդանագիր ի տախտակս տպաւորեմք հանապազ, խնամ տանել միմեանց, և պինդ ունել և պահել զմիաբանութիւն հոգւոյն՝ պլովքն հանդերձ։

Արդ քանզի լուեալ էր մեր յաղագս պատմութեան քո՝ սակաւ հատուածով առնել յսկզբան թագաւորացն Հայոց մինչև ի մեզ, և զքո բանիբուն Պուետիկոս դասաշարժից վարժս խտագիս ասպարէզ առ քո խաղաղութիւն, և զընթացս լեզուիդ՝ որ քնար է հոգւոյն, և որպէս կամի շարժէ զնա. և զուրախարար գիր պատմութեան Հայոց փոքր հա-

տուածօք՝ որպէս վերագոյն ասացաք, զոր արարեալ առ ի մխիթարութիւն ընթերցողաց՝ և ի լուսաւորութիւն լսողաց՝ և ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ յիշատակեալ գրոց ևս պատմութիւն, հայցեմք փոքր ի շատէ գրով խնդրով՝ որ բերեալ առ քեզ սակաւ ինչ յայտարարութեանց ի ձեռն Փիլիպպոսի քահանայի՝ որպէս խնդրեալ ճառիս ասացաք. վասնզի և այսմ ևս ակն ոչ ունէի՝ եթէ ինձ հաւատարոց է. ի քէն վիճակ պատմութեանն: Արդ օն առեալ զքո աղօթս տացես ինձ ի սատարութիւն, զի թերևս կարացից ուղղել զմտաց բանին՝ և գնալ ի խաղաղ նաւահանգիստ՝ զանձն ի ներքս տարեալ ի ծերպս փոքր պատմութեանս. որպէսզի կատարեսցի վասն քոյոյ յօժարութեանդ՝ և իմոյ հաւանութեանս հրամանաց քոց: Վասնզի ընդ քո հարցողութեանդ քաղաքավարին՝ ոչ միայն կատարելով զհրամայեալս ի քէն, այլև ջերմ փափագանօք թէև ու՛ ինձ խնդրէիր՝ բանն հարկաւոր զմանէ և զընտանի կատարել՝ հնազանդէի հրամանի քում. քանզի հաւանիմ քում պատուականութեանդ, զի զխոշորութիւն բանից իմոց ի լաւագոյնն համարեալ հաշուես քոյով ճշմարտիմաց և իմաստուն մտօք. վասնզի յոյս ունիմ ի յօժարութիւն մտաց քոց՝ թէ համարիս: Վասնզի այսպէս ասէ ոմն սրբոց հարցն, եթէ յորժամ աշակերտքն քաջայոյս, յորժամ վարդապետն յօժարիցէ. յայնժամ վարդապետն շահս ու արդարէրէ, յորժամ աշակերտն զփոյթութիւն ցուցանէ. յայնժամ աշակերտն վարդապետին արուեստին ակն ունի, յորժամ զշնորհեալն որպէս զգործեալ ողջունեսցէ: Վասնզի այլազգ վարդապետին անհնար է ծագել, եթէ ոչ զաշակերտին լապտերս գոյցէ վառեալ ուսումնասիրութեան ձիթով: Նու դարձեալ, եթէ այլազգ անհնար է աճել աշակերտին, եթէ ո՛չ վարդապետն զառուն իմաստասիրութեան հեղուցու առաջի: Վասնզի ա՛յսս ունիմ ընթացից և փութոյ

երկոքին կողմանքն, և առ ի շինուած վեհագունութեան երկա-քանչիւրոց, զոր ինչ ըստ կարողութեան ի միասին բերել ի ներքս, միոյն զլեզուն սրբեալ, իսկ միւսում զխելխոն պատ-րաստ ունել։ Եւ այս յինէն իսկ առի՝ և զքէն վկայի, զոր ետ մեզ տարացոյց՝ որպէս ասացաքն՝ մի ոմն ի սրբոց հարցն։ Եւ արդ այնքա՛ն ի միմեանց բաժանեալք՝ որքա՛ն զանձու-կքն ճանաչել և մաքրել զբանս իմ՝ և յարմարել ըստ պատշա՛-ճի պիտոյից զանչափն ի չափաւորութիւն բերելով, և զչափա-ւորն աճեցուցանել, զաւելորդն հանել, և զպակասութիւնն լը-նուլ ըստ իմում կարի, և զամենայն կարգել մի ըստ միոջէ ըստ իւրաքանչիւր՝ խորհրդոյ. նախ՝ զթիւ թագաւորացն և զհայ-րապետացն մերոց, և զբաժանումն Վրաց ի Հայոց միաբանու-թենէ. և յետ այնորիկ զմիութիւն ազգին՝ որ Դրուաղն կո-չի. նա և զգաւառս, և զգեղս զխառնորս, և զքաղաքս, և զեկե-ղըս իւրաքանչիւր գաւառաց՝ որ են յաշխարհին յայնմիկ՝ որ-պէս և կամք քո հրամայեցին, և զվանօրայս հանդերձ վանական-նօք՝ անուամբ իւրաքանչիւրոց, և զանապատս միայնաւորաց, և որք բազմականք և որք միայնակեացք բնակեալ յապարս և յանապատս, և զօրինակ ցուցանել զօրութեանն աստուծոյ. որ ի ծածուկս և ի յայտնի գործէր ի մկրտեալսն՝ երևմամբ նշա-նաց և արուեստից՝ տեսլեամբ և յայտնութեամբ, միանգամայն և զգործս հոգևորս. և զբան և՛ զջան և՛ զվաստակ և՛ զհան-գէս երանելի եպիսկոպոսացն Գրիգորի՝ և իւրոյ պաշտօնէիցն, զգործակցութիւն և զհրաման Թագաւորին Տրդատայ, և զնա-խանձ նախարարացն ի հոգևոր գործն, և զհանդէս իշխանացն ըստ իւրաքանչիւր իշխանութեան, և զայլ ևս պատուաւորացն ըստ իւրաքանչիւր պատուոյ, որք գործակիցք լինէին մեզ ի բա-նըս և ի գործ հոգևոր։ Նաև զահ և զերկիւղ և սպառնալիս զազանամիտ և թեթևահաւատ (և) ճուաղաբարոյ մարդկան

այնոցիկ ի վերայ մեր։ Վասն զի այսոցիկ հրամայեալս ի քէն զատուգութիւն բերէ պատմութիւնս, թէպէտ և մեզ աշխատութիւն հասուցանէ յերկարութիւն բանիցս։ Եւ քանզի և ոչ այսու և եթէ բաւականանային չարութեամբք, այլ և ի մարտ մտանէին և ի կռիւ, և որսային ազգի ազգի հնարիւք մեքենայից հրացանութեամբք, և այլ ևս բազում և պէս պէս չարութեամբք՝ արդ և դաւաճանութեամբք. արդ զայսոսիկ խնդրեցեր ՚ուսանել։ Պարծեալ և սկիզբն և զանակութիւն և զպատճառս տասցիս՝ եթէ ուստի՞, կամ ի՞նչ, և կամ զիարդ, և կամ եր վասն, և կամ ո՞րպէս, և կամ որո՞վ օրինակաւ։ Վասնզի յիշեմ, զի խոստացայ կարգաւ ճառել՝ և զլով յանդիման կացուցանել ի պատմութեան տուս ով հոգևոր Հեղինակ և հաշտակաւոր Հաւատոյ։ Վասնզի զայսոսիկ խնդրեր կամք իմ ի քէն հանդերձ մախթանօք և բազում աղաչանօք կատարել ըստ յառաջագոյն գրելեացն իմոց, զայն խորհուրդ խնդրոյն՝ որ ի քէն առ մեզ եղև՝ որպէս յառաջագոյն ասաց(աք) յսկզբան ճառիս. արդ և կամք քո կատարեսցին ի փառս Աստուծոյ։ Իսկ այս առ ի մէնջ քեզ դարձուած բանից և թղթոց պատասխանի. որ ունի յինքեան արտասանեալ զխորհուրդ պատմութեանս։ Ողջ լեր ի Տէր։

## ԳԼՈՒԽ Բ

### Յաղագս Նախահօրաց։ Ոճիցն յԱրամայ։

Աստանօր սկիզբն արասցուք պատմել յաղագս թագաւորաց՝ սկսեալ յԱրամայ՝ որ է նախահայր մեր՝ և առաջին թագաւոր եղեալ ի վերայ երկրի. իսկ զկնի Արարչին հուսկ յետոյ քան զամենայն արարածս և թագաւոր զնա կացուցեալ ամենայն արա-

բածոյ՝ որ ի ներքոյ երկնից։ Վասնզի պարտ և արժան էր՝ որպէս ասէ գիրն, նախ գոյանալ Թագաւորութեան, և ապա ի ներքս գալ Թագաւորին՝ լինել Թագաւոր որոց ի վերոյ երկրի ընդ Թագաւորութեամբ փրկչին։ Իսկ ապա զկնի արտաքս հանելոյն ի դրախտէն՝ ամենեցին ծնունդք նորա, և բազմացան, և լցին զերկիր ըստ հրամանի Արարչին։

Ադամ նախաստեղծն կեցեալ ամս երկերիւր և երեսուն՝ ծընաւ զՍէթ. և եղեն ամենայն աւուրք Ադամայ՝ զոր եկեաց՝ ամք ինն հարիւր և երեսուն, և մեռաւ։ Սէթ կեցեալ ամս երկերիւր և հինգ՝ ծնանի զԵնովս. և եղեն ամենայն աւուրքն Սէթայ՝ ամք ինն հարիւր և երկոտասան, և մեռաւ։ Ենովս կեցեալ ամս հարիւր և իննսուն՝ ծնանի զԿայնան. և եղեն ամենայն աւուրք Ենովսայ՝ ամք ինն հարիւր և հինգ, և մեռաւ։ Սա առաջին յուսացաւ կոչել զաստուած։ Կայնան կեցեալ ամս հարիւր օթանասուն՝ ծնաւ զՄաղաղիէլ. և եղեն ամենայն աւուրք Կայնանայ՝ ամք ինն հարիւր և տասն, և մեռաւ։ Մաղաղիէլ կեցեալ ամս հարիւր և վաթսուն և հինգ՝ ծնանի զՅարեթ, և եղեն ամենայն աւուրք Մաղաղիէլի՝ ամք ութն հարիւր իննսուն։ Յարեթ կեցեալ ամս հարիւր վաթսուն և երկու՝ ծնանի զԵնովք. և եղեն ամենայն աւուրք Յարեթի ամք ինն հարիւր վաթսուն և երկու, և մեռաւ։ Ենովք կեցեալ ամս հարիւր վաթսուն և հինգ՝ ծնանի զՄաթուսաղայ։ Իսկ հաճոյ եղև Ենովք Աստուծոյ յետ ծնանելոյն զՄաթուսաղայ՝ ամս երկերիւր . . . և եղեն ամենայն աւուրք Ենովքայ ամք երեք հարիւր վաթսուն և հինգ։ Իսկ արժանի և հաճոյ վարս ստացեալ, և ոչ ուրեք գտանէր. զի փոխեաց զնա Աստուած յաշխարհէ ի կերպըս հրեշտակաց։ Մաթուսաղայ կեցեալ ամս հարիւր վաթսուն և հինգ՝ ծնանի զՂամէք. և եղեն ամենայն աւուրք Մաթուսաղայի՝ ինն հարիւր վաթսուն և ինն, և մեռաւ։ Ղամէք

կեցեալ ամս հարիւր ութսուն և ութ՝ ծնաւ որդի, և անուանեաց զանուն նորա՝ Նոյ։ Սա յԱդամայ տասներրորդ եղեալ ի թուոյ նախահարցն, և լինին ամք երկու հազարք։

## ԳԼՈՒԽ Գ

### Յաղագս Նոյի։

Մարգարէանայ Ղամէք՝ հայր Նոյի՝ կոչելով զանուն նորա՝ Նոյ. ասէ, սա հանգուսցէ զմեզ ի գործոց մերոց և ի տրտմութենէ ձեռաց մերոց՝ և յերկրէ, զոր անէծ Տէր Աստուած։ Գեղեցիկ իմն յարդարէ զբանս Մովսէս ստուգագիրն, եղև՝ ասէ՝ ոչ հանգիստ, այլ ջնջումն՝ որ ինչ միանգամ ի վերայ երկրի. և յառաջ մատուցեալ՝ ասէ, ինձ թուի հանգուցանելն դադարեցուցանել զամբարշտութիւնս և զչարիս սատակմամբ մարդկան զազրագործաց։ Իսկ դարձեալ մեկնութիւն տայ բանին, թէ՝ գեղեցկաբար ասաց. թէ՝ ի գործոց մերոց՝ որ է յանօրէնութեանց և ի տրտմութեան ձեռաց, որովք կատարեմք զպղծութիւնս. բայց հանգչելն արդարև ըստ այսմ մարգարէութեան՝ ոչ ամենեքեան, այլ կատարեալք յառաքինութեան ոգիք, յորում չարիքն իբրև ջրհեղեղաւ ջնջեալ՝ մաքրին որպէս առ Նոյիւ մոլորեալք ի չարիս։ Արդ իբրև եհաս ժամանակ մարգարէութեան Ղամէքայ՝ որ առ Նոյ, զի եկեալ հասեալ էր հատուցումն ամբարշտութեան և անիրաւութեան մարդկան, զի մեղք յաճախեցին ի վերայ երկրի յազգս ամենայն մարդկան, որ էին բնակեալ ընդ ամենայն երեսս երկրի. և Նոյ էր այր արդար և կատարեալ յազգի անդ իւրում, և եգիտ շնորհս առաջի Տեառն Աստուծոյ։ Իսկ ինքն էր ամաց հինգ հարիւրոց՝ յորժամ ծնաւ զՍէմ, զՔամ և զՅաբէթ։ Իսկ յամի վեցհարիւ-

ըներրորդի ելն ջրհեղեղն, և հարիւր ամաւ յառաջ՝ Նոյ գործեալ էր զտապանն ի փրկութիւն տան իւրոյ. Ճարտարապետ և արարիչ Աստուած էր, հրամայեալ նմա զամենայն նշանս և արուեստս գործել ի տապանին. զի լցաւ՝ ասէ, երկիր անիրաւութեամբ, և ես ածից ջրհեղեղ ի վերայ երկրի՝ սատակել զամենայն մարմին՝ որ ունիցի շունչ կենդանի։ Եւ պատուէր ետեալ ի Տեառնէ Նոյի՝ եմուտ ի տապանն հանդերձ ամենայնիւ՝ զոր հրամայեաց նմա Աստուած. և ապա զկնի կատարման Արարչական հրամանին՝ ել Նոյ ի տապանէ անտի. և օրհնեաց զՍէմ և զՅաբէթ՝ այլ ոչ զՔամ՝ յաղագս քամահելոյ նորա զմերկութիւն հօրն։ Եւ ասէ, օրհնեալ Տէր Աստուած Սեմայ. և ընդարձակեսցէ Տէր Աստուած Յաբեթի. և եղիցի Քանան՝ ծառայ նոցա։ Եւ ապա ծնան որդիս որդիք Նոյի. և աճեցին ծնունդք նոցա ըստ իւրաքանչիւր ազգաց։ Եւ ի Սեմայ ծննդոցն երեքտասաներրորդ Փաղեկ, որ յաւուրս նորա բաժանեցաւ երկիր, և եղև բնակութիւն նոցա և թագաւորութիւն ի Մասեաց մինչև ի գ․ա․ն ի Սոփերիոյ լեառն արևելեայց։ Իսկ (ի) Քամայ ծննդոցն Ներբովթի ի ժամանակս եղև սկիզբն թագաւորութեան նոցա՝ ի Բաբելոնէ մինչև ի Նինուէ։ Իսկ որդիք Յաբեթի և ծնունդք նոցա՝ որ սերեցան և աճեցին, և լցին զերկիր. ի սոցանէ եղև սկիզբն թագաւորութեան ի Հայք։ Ի գալն Հայկայ և անուանել զիւր անուն, և յայնմհետէ տիրել ի նմանէ և անդր ամենայն աշխարհի՝ արևմտից և հիւսիսի։ Եւ յելանել Նոյի ի տապանէն՝ եղև թագաւոր ի վերայ երկրի. զկնի Ադամայ երկրորդ թագաւոր։ Քանզի հրամայեաց նմա Աստուած՝ որպէս յսկզբանն Ադամայ, տիրել ամենայնի՝ որ ընդ ձեռամբ նորա իցեն ի վերայ երկրի։ Եւ օրհնեաց Աստուած զՆոյ և զորդիս նորա, և ասէ, աճեցէք և բազմացարուք, և լցէք զերկիր. և ահ և երկիւղ ձեր ի վերայ ամենեցուն եղիցի։ Եւ աճեցին և

երկիցին(են)ազգք, և անուանեցան լեզուք, և կոչեցան տոհմք ըստ աշխարհաց և գաւառաց. աճեցին և բազմացան և լցին զերկիր։ Եւ եկաց Նոյ յետ ջրհեղեղին ամս երեք հարիւր և յիսուն. և եղև ամենայն աւուրք Նոյի ամք ինն հարիւր և յիսուն, և մեռաւ։

## ԳԼՈՒԽ Դ.

### Յաղագս Սեմայ։

Սեմ որդի հարիւրամենի՝ յորժամ ծնաւ զԱրփաքսադ յերկրորդում ամի յետ ջրհեղեղին. և եկեաց Սեմ (յետ) ծնանելոյ նորա զԱրփաքսադ՝ ամս հինգ հարիւր. և ծնաւ ուստերս և դստերս, և մեռաւ։ Եւ Արփաքսադ եկաց ամս հարիւր երեսուն և հինգ, ծնաւ զԿայնան։ Եւ Արփաքսադ կեցեալ ամս երեք հարիւր և երեսուն, և մեռաւ։ Եւ Կայնան կեցեալ ամս հարիւր և քսան՝ ծնանի զՍաղաղայ. և ինքն կեցեալ այլ եւս ամս, և մեռաւ։ Եւ Սաղաղայ ամաց հարիւր երեսուն(անից)ծնանի զԵբեր. և կեցեալ յետ ծնանելոյն զԵբեր ամս երեք հարիւր և երեսուն, և մեռաւ։ Եւ կեցեալ Եբեր ամս հարիւր երեսուն և չորս՝ ծընաւ զՓաղեկ։ Ի սորա աւուրս՝ որպէս ասացաք, եղև բաժանումն երկրի՝ և սկիզբն թագաւորութեան յազգէն Սեմայ։ Եւ եկեաց Եբեր յետ ծնանելոյ նորա զՓաղէկ՝ ամս երկերիւր օխթանասուն, և մեռաւ։ Եւ Փաղեկ կեցեալ ամս հարիւր երեսուն և չորս՝ ծնաւ զՌագաւ. և յետ ծնանելոյն զՌագաւ Փաղեկի՝ եկաց ամս երկերիւր և ինն,(և)մեռաւ։ Եւ Ռագաւ կեցեալ ամս հարիւր երեսուն և երկու՝ ծնաւ զՍերուք. և եկեաց Ռագաւ յետ ծնանելոյն զՍերուք՝ ամս երկերիւր և եօթն, և ծնաւ ուստերս և դստերս, և մեռաւ։ Եւ կեցեալ Սերուք ամս հարիւր և

երեսուն՝ ծնաւ զ՚Նաքովր. և Սերուքայ կեցեալ յետ ծննդելոյ նորա զ՚Նաքովր՝ ամս երկերիւր, և մեռաւ։ Եւ եկեաց ՚Նաքովր ամս օխթանասուն և ինն, ծնաւ զԹարայ. և ՚Նաքովր եկեաց յետ ծննդեանն նորա զԹարայ՝ ամս հարիւր քսան և երկու. և ծնաւ ուստերս և դստերս, և մեռաւ։ Եւ եկեաց Թարայ ամս օխթանասուն, և ծնաւ զԱբրահամ։

## ԳԼՈՒԽ Ե

### Յաղագս Աբրահամու։

Սա յԱդամայ քսաներրորդ առաջնորդ լեալ ի կարգէ նախահարցն, և լինին ամք երեք հազարք։ Եւ ամենեքեան սոքա նահապետք՝ յԱդամայ սկսեալք՝ ծնանելով ուստերս և դստերս մինչև (ց)Աբրամ եկին հասին չափելով իւրաքանչիւր ոք զժամանակս իւր, և մեռաւ։ Իսկ Աբրամու ոչ ծնան որդիք. զի էր Սարայ կին նորա ամուլ, և ոչ ծնանէր, մինչև եհաս հրաման ի Տեառնէ աւետեաց նորա. և խօսեցաւ ընդ նմա Աստուած՝ և ասէ, ահաւասիկ ուխտ իմ ընդ քեզ, և եղիցիս հայր բազմութեան ազգաց. և ոչ կոչեսցի անուն քո այսուհետև Աբրամ, այլ եղիցի անուն քո Աբրահամ. զի Հայր ազգաց բազմաց եդի զքեզ. և արարից զքեզ յազգ մեծ, և օրհնեցից զքեզ. և թագաւորք ի քէն ելցեն. և ապա զկնի ուխտաւորութեանն ասէ Աստուած ցԱբրահամ, և Սարայի կնոջ քո ոչ կոչեսցի Սարայ, այլ Սառայ անուն նորա։ Եւ օրհնեցից զնա. և տաց քեզ ի նմանէ որդի, և եղիցի յազգ մեծ. և թագաւորք ազգաց ի նմանէ եղիցին։ Եւ երկիրպագ Աբրահամ Աստուծոյ։ Եւ ապա ծնաւ ի նոցանէ Իսահակ որդի աւետեաց. և ի նմանէ բազմացան ազգք և թագաւորք ազգաց։ Եւ եղև Աբրահամ Թագա-

ւոր և Հայր Թագաւորաց։ Եւ այս են ծնունդք Թարայի։ Աբրահամ, և Նաքովր, և Առան. և երթեալ նոքօք յերկիրն Քաղդէացւոց, եկին մինչև ի Խառան, և բնակեցան անդ։ Եւ եղեն ամենայն աւուրք Թարայի ի Խառան՝ ամք երկերիւր և հինգ. և մեռաւ Թարայ ի Խառան։

## ԳԼՈՒԽ Զ.

### Յաղագս Քամայ։

Քամ ծնանի զՔուշ. Քուշ ծնանի զՄեսարիմ. Մեսարիմ ծնանի զՆեբրովթ։ Ի նորա ժամանակս եղև սկիզբն թագաւորութեան նոցա ի Բաբելոն։ Եւ թագաւորեաց Նեբրովթ ի Բաբելոն՝ և այլոց քաղաքաց՝ որք են այսոքիկ. Որիդ, և Աքար, Քաղանանէ՝ յերկրին Սենաար։ Յերկրէն յայնմանէ ել Ասուր, և շինեաց զՆինուէ և զՌոովթ քաղաք, և զՔաղաղ, և զԴասեման, և ի մէջ Նինուէի և ի մէջ Քաղաղայ՝ այն է քաղաք մեծ։ Նեբրովթն այն առաջին սկսաւ լինել սկայ ի վերայ երկրի. և նա էր որսորդ առաջի Տեառն Աստուծոյ։ Նեբրովթ ծնանի զՆաբ. Նաբ ծնանի զԱնեբիս. Անեբիս ծնանի զԱրբէլ. Արբէլ ծնանի զՔաաղ. Քաաղ ծնանի զմիւս Արբէլ. Արբէլ ծնանի զՆինոս. Նինոս ծնանի զՆինուաս։ Իսկ ի Մեստրասայ ծննդոցն բաղում ազգք բաժանեցան. Ողոդիմացիք և Ենեմիմացիք, և Սաղբիմացիք, և Նեփթաղիմացիք, և Պատոսոնիմացիք, ուստի ելին Փղշտացիք և Կափթորիմացիք։

〰〰〰

## ԳԼՈՒԽ Ա։

### Յաղագս Յաբեթի։

Յաբեթ ծնանի զԳոմեր. Գոմեր ծնանի զԹիրաս. Թիրաս ծնանի զԹորգոմ. Թորգոմ ծնանի զՀայկ. Հայկ ծնանի զԱրամենակ. Արամենակ ծնանի զԱրմայիս. Արմայիս ծնանի զԱմասիայ. Ամասիայ ծնանի զԳեղամ. Գեղամ ծնանի զՀարմայ. Հարմայ ծնանի զԱրամ. Արամ ծնանի զԱրայն գեղեցիկ։ Արդ զայսոսիկ ազգաբանութիւնս ստուգեալ ի Մովսիսէ ի մերոյ պատմագրէ՝ որպէս ինքն վկայէ, եթէ ասացեալ՝ ասէ՝ ազգաբանութիւնդ հաւաստի է երիցունց ցեղից մետասաններորդ գոլով ցԱբրահամ և ցՆինոս և ցմերն Արամ։ Զի Արայն երկոտասաններորդ է յետ Նինոսի՝ մանուկ տիօք վախճանեալ. և ճշմարիտ է՝ ասէ, և մի՛ ոք երկուացի։ Եւ ի Յաբեթայ բաժանեցան և մեկնեցան ազգք բազումք. Կետացիք և Ռոդացիք. և ի սոցանէ այլք բազումք. և մեկնեցան կղզիք ազգաց յերկիր իւրեանց. իւրաքանչիւր ըստ լեզուս յազգս իւրեանց և ի տոհմըս իւրեանց աճեցին և բազմացան, և լցին զերկիր։

## ԳԼՈՒԽ Բ.

### Յաղագս բաժանման աշխարհաց երից որդւոյն Նոյի։

Սահմանք Սեմայ ի Պարսից և ի Բադդոմնէ մինչև ի Հնդիկս, և ձգեն մինչև ի Հռենոկորուրոյ։ Եւ անուանք աշխարհացն Սեմայ՝ Պարսիկք, Տապրիկք, Վրկանիկք, Բաբիլոն, Արաբիայ առաջին և երկրորդ. և որ այլն ևս մինչև ի Փիւնիկէ։ Եւ ունին կղզիս Սառդոնիայ, զԿրիտէ և զԿիպրոս, Գաղոս, Մեղիտէ, Սարդոնիայ, Մինիդայ, Գաղատիայ, Գորսինիայ, Գորտոս։

## ԳԼՈՒԽ Թ

### Եւ այլ սահմանք Քամայ:

(Ի) Հռենեկորուրայ մինչև ցԳադիրոն, կողմն հարաւոյ. և անուանք աշխարհացն Քամայ՝ Եգիպտոս, և Եթովպիէ՝ որ հայի ընդ Հնդիկս. և միւս Եթէովպիէ, յորմէ Քուշացւոց գետոյն ելանէ. Եւրիթրայ՝ որ է Կարմիր ծովն, որ հայի ընդ արեւելս. և այլ ևս ազգք մինչև ի Փռիւգիայ, և յԵգիպտոսէ մինչև յՍիկիլիանոս: Եւ ի նոսա կղզիք՝ որ են այսոքիկ. Եդակարսովդայ, Գեթեթիւրա, Սարեաթոս, Քիոս, Գիսքոս Մենիդուս, Իմբոս, Յարկոս, Կնիդոս և Կիւպրոս մեծ կղզի, և այլն:

## ԳԼՈՒԽ Ժ

### Սահմանք Յաբեթի:

Ի Մարայ մինչև ցԳադիրոն, ի կողմն հիւսիսոյ. և անուանք աշխարհացն՝ Ատրպատականք, Աղուանք, Ամազոնիայ, Հայք մեծ և փոքունք, Վիրք, Կապադովկիայ, Պամփիղագոնիայ, Գաղատիայ, Գաղիայ, Կողքիս, Սպանիա մեծ, և այլ ևս: Եւ այս են կղզիք նոցա. Բրենտինա, Սիկեղիա, Եւբիա, Ռոդիոքիս, Գոսքոս, և այլ ևս կղզիք երկոտասանք մեծամեծք, յորս քաղաքք բազումք բնակեալ են, որ անուանեալ կոչի Սպորադէս, այսինքն՝ ցան և ցիր: Զնահանգին Հռոմայեցւոց՝ յորս պանդխտութեամբ բնակէին Յոյնքն, և են այսոքիկ. Եւբիա Կրետէ, Սիկիլիայ, Կիպրոս, Կոմաս. Սամոս, Ռոդոս, Քիոս, Թէալթոս, Գեմնոս, Գէովրոս, Սամոթրակէ, Եւենբէովտացւոց Եւբիա, Կղազոմենէ, Միւտիւղոնէ, Փովկէ, Պրգենէ, Ե-

բիթրէ, Մասոսաէս, Կողոմփոնքիոս, Եփեսոս, Զմիւռնիա, Պերինթոս, Բիւզանդիոն, Քաղկեդոն, Պոնտոս։ Արդ այսոքիկ կղզիք։ Եւ այլ ևս քաղաքք՝ որք են ի բաժնի երից ոլորտոյն Ասո-յի, և՝ լերինք, և՝ բլուրք, և՝ ծովք, և՝ գետք։

## ԳԼՈՒԽ ԺԱ

### Յաղագս լերանց։

Եւ այս են անուանք երկոտասան լերանց անուանեաց. Լի-բանան, Կաւկաս, Տորոս, Աղտաս, Պառնասոս, Կիթերոն, Եղիկոն, Պարթենիոս, Մասիք, Դիւզաբանդոս, Պենիոս, Գոնպոս։

## ԳԼՈՒԽ ԺԲ

### Յաղագս ծովուց։

Ովկիանոս, որ կոչի Համաշխարհական ծով. և ծովն Հնդկաց, և ծովն Կարմիր, և ծովն Կասպից, և այլ ևս ծովք և ծովակք, և լերինք և կոհակք։

## ԳԼՈՒԽ ԺԳ

### Յաղագս գետոց։

Գետք մեծամեծք և անուանիք քառասուն. Խնդոս՝ որ է Սփրատոն, Գեղոն՝ որ է Գեհոնն, Դեկղաթ, Եփրատ՝ որ է Սատածանի, Յորդանան, Կեփիսոս, Տանիս, Մենոս, Եղիման-

Թաս, Եղիսաա, Որպիս, Թեսաղոն, Երասխ, Կուր գետ, Բորիսթենէս, Եղբեաս, Տորոս, Եւբոտաա, Մեանդրաս, Երմոս, Աքսիոս, Պիւրամոս, Բէոս, Երբրոնէն, Անդարիս, Քեղկոս, Պաենէոս, Եպարքիոս, Կախիստրոս, Սիմոս, Սկամանդրոս, Ստրիւմոն, Պարթենիոս, Խարրոս, Ռենոս, Բետէս, Բոդանոս, Թիբրրոս՝ որ այժմ անուանեալ կոչի Տիբերոս։

## ԳԼՈՒԽ ԺԴ

Եւ որ այլ ինչ ընդ բաժանման աշխարհաց։

Զհաւաստին ի սակաւուց որչափ կարացեալ ի բազմաց պատմեսցուք քեզ՝ ով ուսումնասէր դու և խոհեմ։ Ի ժամանակին յայնմիկ՝ ի բաժանել որդւոցն Նոյի զամենայն երկիր ընդ իշխանութեամբ իւրեանց հաստատեալ, տիրել կամէին բոլոր աշխարհաց՝ Զրուանն և Տիտանն և Յապետոսթէ, այսինքն՝ Սեմ, Քամ, Յաբէթ, և լինել իշխանք երկրի։ Իսկ Զրուանն տիրէ ի վերայ երկոցունցն եւս։ Իսկ ապա ընդդիմանայ նմա Տիտանն և Յապետոսթէ ի մարտ պատերազմի, զի թագաւորեցուցանել զորդիս իւր Զրուանն ի վերայ ամենեցուն խորհէր. և յայսպիսում խռանց և խռովութեան յափշտակեաց Տիտանն զմասն ինչ ի ժառանգութենէ զսահմանացն Զրուանայ. ասա ուրեմն ի մէջ անցեալ քոյր նոցա Աստղիկ, ասէ պատմագիրն, համոզեալ դադարեցուցանէ զաղմուկս. ապա յանձն առն .... թագաւորեցուցանել Զրուանայ։ Եւ յետ այնորիկ ապա իւրաքանչիւր ոք յիւրում բաժնի թագաւորեցեալ, վիճակի բաժանման (եղև) աշխարհս մեր Յաբեթայ կրսեր որդւոյն Նոյի։ Յաբեթ ծնանի զԳոմեր. Գոմեր ծնանի զԹիրաս. Թիրաս ծնանի զԹորգոմ. Թորգոմ ծնանի զՀայկ։ Արդ ծնունդք

Սեմայ և Քամայ ազգք լեալ, և սերեալ ցրուեցան յիւրաքան-
չիւր յաշխարհս և ի գաւառս։ Իսկ մերն Յաբեթայ՝ որք ի
ծննդոց նոցա կալան զաշխարհս մեր, զնահատակութիւն պա-
տերազմաց ի նոցանէ ոչ գտաք ուրեք, բայց միայն զքաջին
Հայկայ՝ և զԱրամայ՝ և զՏիգրանայ՝ որ եին յիւրում ժամա-
նակս։ Իսկ զայլոցն՝ որ եին ի Հայկայ մինչև ցԱրայն գեղեցիկ՝
ոչ գտաք քաջութիւն ցուցեալ պատերազմաւ, բայց միայն
զանուանս իւրաքանչիւրոցն ի վերայ նահապետաց անուանեալ
և աշխարհաց, և գաւառաց, և գետոց, և լերանց։

## ԳԼՈՒԽ ԺԵ

### Յաղագս Հայկայ։

Հայկս այս գեղապատշաճեալ, և անձնեայ՝ քաջագանգուր
գոյով, խայտակն և հաստաբազուկ։ Սա ապստամբեալ ի Բե-
լայ՝ գնաց յերկիրն Արարադայ ի կողմն հիւսիսոյ հանդերձ ծը-
ննդովք իւրովք՝ թուով իբրև երեք հարիւր. և կացեալ անդ
ժամանակ ինչ, ապա տայ զտեղին Կադմայ թոռին իւրում, և
ինքն գնայ ի գաւառն՝ որ կոչէ յիւր անուն՝ Հարք. շինէ գեղ
մի, և անուանէ յիւր անուն՝ Հայկաշէն։ Յետ այսորիկ ելանէ
Բել և գայ ի պատերազմ (ի վերայ) Հայկին։ Զայս իմացեալ քա-
ջին Հայկայ յազդմանէ Կադմայ թոռին իւրոյ, ելանէ իւրայնովքն
հանդերձ ի պատերազմ Բելայ. յառաջ վարէ զինքն՝ և մօտ
հասանէ յարքայ, և գրկալէր քարշեալ զլայնալիճ աղեղն՝ դի-
պեցուցանէ զերեքթիւնեան սուր սլաքն՝ կրծից տախտակին,
և շեշտ ընդ մէջ ճեղքեալ թիկանցն. և թափանցիկ լեալ՝ ընդ
յերկիր հարկանի սլաքն. և Բել կործանեալ ընդ ոտիւք զգետ-
նի Հայկին, և փչէ զհոգին։ Իսկ ամբոխն Բելայ տեսեալ զքա-

Ջուղթիւն Հայկին՝ փախստեայ լինէին դէպ երկրաց իւրաքանչիւր ոք։ Իսկ Հայկայ շինեալ զտեղի ճակատուն դաստակերտ, և անուն կոչէ՝ Հայք. փոխ այնորիկ և գաւառն այժմ անուանի Հայոց-Ձոր։ Իսկ զդիակն Բելայ պաճուճեալ դեղովք՝ հրամայէ տանել ի Հարք. և թաղեալ ի բարձրաւանդակ տեղւոջ ի տեսիլ կանանց և որդւոց իւրոց. և յայնմհետէ աշխարհս մեր կոչի յանուն նախնւոյն մերոյ Հայկայ՝ Հայք։

## ԳԼՈՒԽ ԺԶ

Յաղագս ազգաց և ծննդոց Հայկայ, և որ ինչ է նոցանէ գործ։

Արդ այժմ անցից ի թիւ մերոց արանց՝ որ ի ծննդոցն Հայկայ։ Արամանեակ, որդի Հայկայ, զոր ծնաւ ի Բաբելոն, բնակի ի Հարք յետ մահուան Հայկայ հօր իւրոյ. և Խոռ և Մանաւազ եղբարք իւր հանդերձ աղխիւք իւրեանց ընդ նմին։ Իսկ որդին (Մ)անաւազայ Բազ շինէ իւր գաւառ, և կոչեն զնահապետութիւն և զգաւառն՝ Մանաւազեան և զԲզնունեաց։ Իսկ Խոռն յիւր անուն անուանէ զազգն Խորխոռունեաց։ Իսկ Արամանեակ շինէ մասն ինչ, և կոչէ յիւր յանուն զլեառն Արագածու։ Իսկ որդին Արամայ Արմայիս շինէ իւր տուն յեզր գետոյն, և անուանէ յիւր անուն՝ Արմաւիր՝ և զանուն գետոյն յանուն թոռին իւրոյ Երաստայ՝ Երասխ։ Իսկ որդին նորա Շարայ շինէ իւր գաւառ, և անուանէ յիւր անուն՝ Շիրակ։ Իսկ Արամայիս ծնանի չորս որդիս՝ զԱմասիայ, և զԳեղամ, և զՓառոխ, և զՑոլակ. և ինքն շինէ երկուս տունս, և տայ երկուց որդւոցն իւրոց, և անուանէ յանուն Փառոխայ՝ Փառախոտ, և ի Ցոլակայ՝ Ցոլակերտ։ Իսկ Ամասիայ անուանէ զլեառն յիւր անուն՝ Մասիս։ Իսկ Գեղամ ծնանի զՀարմայ յԱրմաւիր, և ինքն

երթայ (յ)եզր ծովակի միոյ, և շինէ շուրջ զծովօն (գուցէ ծովուն) և անուանէ Գեղաքունի, և ծովն ի նոյն յանուն, և զլեառնն՝ Գեղալեառն. և ծնանի զորդի իւր զՍիսակ։ Սա երթեալ ի սահմանս Սիւնեաց՝ շինէ զգաւառն, և կոչէ յիւր անուն՝ Սիւնիք։ Իսկ Գեղամ շինէ ձեռակերտ մի՝ և անուանէ յանուն իւր Գեղամի, որ այժմ կոչի Գառնի՝ յանուն Գառնկայ թոռին իւրոյ։ Եւ ի սորա ծննդոցն առ Արտաշիսիւ արքայիւ Հայոց՝ պատանի մի լեալ Վարաժ անուն՝ բնակի առ եզերբ գետոյն՝ որ կոչի Հուրազդան, և անուանի գաւառն այն յանուն նորա՝ տուն Վարաժունի։ Արդ ասացեալ եղև ծնունդք Հայկայ՝ և որ ինչ ի նոցանէ գործք մինչև ցԱրամ։ Այս Հայկ՝ որդի Թորգոմայ՝ որդւոյ Թիրասայ՝ որդւոյ Գոմերայ՝ որդւոյ Յաբեթի՝ նախնի Հայաստանեայցս. և ազգք նորա և ծնունդք և աշխարհ բնակութեան, և յայնմհետէ սկսան բազմանալ և լնուլ զերկիր։ Իսկ Հարմայ կեցեալ ամս ինչ՝ ծնաւ զԱրամ. և Արամայ բազում գործ քաջութեան պատմին։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Յաղագս Արամայ պատերազմին ընդդէմ նահատակութեան։

Սա եղեալ այր պատերազմող և աշխատասէր, որ սիրելով զհայրենիս իւր՝ լաւ համարէր մեռանել ի վերայ՝ քանթէ օտար թշնամեաց կոխել զսահմանս նորա։ Սա եղեալ ի պատերազմ բազում և քաջ արամբք՝ յարևելս կոյս երթեալ պատահէ Մեդացւոց զօրաց. որոց գլխաւոր ի նոցանէ Մադէս անուն, այր հպարտ և պատերազմող, եկեալ ի սահմանս Հայոց, և սմբակակոխ արարեալ ծառայեցոյց ամս ինչ. ապա յանկարծօրէն ի վերայ հասեալ Արամայ զօրօք իւրովք՝ ի լուսա-

նալ աւուրն սատակեաց զբազմութիւն ամբոխիցն, և զգլխաւոր նոցա ձերբակալ արարեալ բերէ յԱրմաւիր. և անդ ցից վարեալ երկաթի ընդ ճակատ նորա՝ վարսել հրամայէ ընդ պարիսպն ի տեսիլ անցաւորացն: Եւ ինքն խաղայր զօրօքն զկողմամբ Ասորեստանի, և գտանէ անդ ապստամբեալս երկրին իւրոյ ինն բիւր հեծելոց և հետևակաց. և ճակատ տուեալ պատերազմաւ սատակէ իսպառ զզօրսն՝ ընդ նոսին և զԲարշամ զգլխաւոր նոցա, և զմնացեալսն հալածական արարեալ ընդ սահմանս Կորդուաց մինչև յերկիրն Ասորեստանեաց: Զսա աստուած պաշտեալ՝ ասեն՝ Ասորիք բազում ժամանակ: Եւ ապա յարեւմուտս արշաւեալ վեց հազար բիւրօք, և եկեալ ի կողմանս Բիւզանդացւոց՝ որ այժմ կոչի Կեսարիա, և պատահէ Պայապիս քաղաքի, որ բանակեալ ունէր զմիջոցս երկուց ծովուց՝ Պոնտոսի և Ովկիանու. և զնա հարեալ նմա պատերազմաւ՝ յաղթէ՝ բանակորին, և զզօրսն փախստական արարեալ սատակմամբ՝ ցիր և ցան զհեռաւորական տեղեօք, և այսպէս ընդարձակեալ զսահմանս Հայոց քաջութեամբն իւրով, մինչզի ամենայն ազգք զՀայք մեծ կոչեն, և յանուն Արամայ՝ Յոյնք՝ Արմէն իսկ կոչեն. իսկ Ասորիք և Պարսիկք՝ Արմինիք:

## ԳԼՈՒԽ ԺԲ

### Յաղագս Արայէ*):

Արայն այն գեղեցիկ՝ որդի Արամայ՝ տիրէ Հայոց զկնի հօր իւրոյ: Սա անուանէ յիւր անուն զդաշտն Արարատեան: Ապա վավաշն այն և բորբորիտոսն Շամիրամ՝ ի բազում ամաց լուեալ

(*) Ի ձեռ. օրինակին գրեալ էր յաղագս Արամայ:

զգեղեցկութենէ նորա՝ ցանկայր հասանել նմա. այլ ոչ իշխէր յայտնապէս՝ մինչև մեռաւ Նինոս՝ որ ի Նինուէ։ Նա սորա պատուեալ զախտն իւր վաղվաղակի այն Շամիրամ, առաքէ հրեշտակս առ Արայն գեղեցիկ բազում ընծայիւք՝ աղաչել զնա, զի կատարեսցէ զկամս նորա՝ կամ կնութեամբ՝ կամ կատարելով զցանկութիւն նորա։ Որում ոչ հաւանեալ Արայի։ Իսկ շամբուշն այն ի սաստիկ ցասման եղեալ՝ առնու զզօրս իւր, և դայ հասանէ ի սահմանս Հայոց ի դաշտն Արայի. և պատերազմի ընդ նմա. և մեռանի Արայն ի պատերազմի։ Այլ որ ինչ յաղագս նորա կարճառօտի այսչափ շատ լիցի յիշատակել։

Սա կեցեալ ամս ինչ՝ ծնանի զԿարդոս։ Իսկ Շամիրամայ զկնի այնորիկ յաջողութեան կալեալ զՀայս, շինէ իւր քաղաք ի գաւառին Տոսպն կոչեցեալ. և տուն արքունի շինէ հրաշազան իմն շինուածօք, և զմատակ ամբարտակ ի գետոյն հանեալ. և նախ քան զայս պատերազմեալ ի Հնդիկս՝ մեռանի ի Հայս՝ սպանեալ ի Նինուասայ որդւոյ իւրմէ։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

### Յաղագս՝ որ ինչ զկնի մահուանն Արայի պատմին կարգք։

Ասացաք որ ինչ վասն ծննդոցն Հայկայ գործք մինչև ի Պարոյր. որ պսակեցաւ մեզ առաջին թագաւոր ի Վարբակայ. զոր սակաւ ինչ յիշատակէ վասն նորա պատմագիրն. նմանապէս և զՀրաչեայ մինչև ցՏիգրան։ Իսկ զՏիգրան գովէ յոյժ ճշմարտապատումն Մովսէս ի պատմութեան իւրում, թէ որպիսի առնն այնպիսի գովելի է։ Նա ասէ այսպէս. ով ոք սորա յիշատակովք ոչ զուարճանայցէ և յորդորեսցէ այսպիսի լինել այր և արանց կացեալ գլուխ, և արութիւն ցուցեալ՝ զազգս

մեր բարձրացոյց, և զընդլծով կացեալս լծադիրս բազմաց և հարկապահանջս կացոյց. խաղաղութեան և շինութեան բերող, և բաշխիչ ամենայն բարեկարգութեան աշխարհիս Հայոց. և արար զգոյն, և զգեղն, և զհասակն, և զտեսակն, և զբարս բարի բնութեան նորա։ Այլ մեք զթագաւորելն նորա յիւրում տեղւոջն թողցուք կարգել։

## ԳԼՈՒԽ Ի

### Յաղագս Նահապետացն և Դատաւորացն՝ որք կային Առաջնորդք ժողովրդեանն Իսրայէլի։

Աբրահամու իբրև եկն եհաս լրումն աւետեացն, ծնաւ զԻսահակ. և ամք կենաց Աբրահամու հարիւր օթանասուն և հինգ։ Իսահակ ամաց վաթսնից ծնաւ զՅակոբ, և միահամուռ ամք կենացն Իսահակայ հարիւր և ութսուն։ Յակոբ՝ ամաց ութսուն և երից՝ ծնաւ զՂևի. և միահամուռն ամք կենացն Յակոբայ հարիւր քառասուն և հինգ։ Այլ թէպէտև սկիզբն եղև Ղևի աստ որդւոյն Յակոբայ, սակայն զՌովբէն ծնաւ նախ, և դնի սկիզբն մտելոցն յԵգիպտոս. և ըստ այնմ կարգի սկիզբն եղև քահանայութեան յերրորդ թոռոյ զաւակէն Յակոբայ, և ի չորրորդէն թագաւորութիւն։ Ղևի ամաց քառասուն և հինգ՝ ծնաւ զԿահաթ. և միահամուռն ամք կենացն Ղևեայ հարիւր երեսուն և եւթն։ Կահաթ . . . կեցեալ՝ ամաց վաթսուն և մին ծնաւ զԱմրամ. և միահամուռն ամք կենացն Կահաթու հարիւր երեսուն և երեք։ Ամրամ ամաց եօթանասուն և երեք՝ ծնաւ զՄովսէս. որ եղև նախամարգարէ՝ և առաջին քահանայ՝ և առաջնորդ ժողովրդեանն Իսրայէլի. և միահամուռն ամք կենացն Ամրամու հարիւր երեսուն և եւթն. և

ամք կենացն Մովսիսի հարիւր և քսան։ Յետ նորա եկաց գը-լուխ և առաջնորդ Յեսու Նաւեայ ամս երեսուն և մի. ծերքն ամս երեսուն. Դատաւորքն Գեդէոն, Բարակ, Սամփսոն, Յեփթայ, և որ առաջի և զկնի սոցա միահամուռ՝ ամս չորեք հարիւր և հինգ։ Իսկ Հեղի՝ որ դատեաց զԻսրայէլ ամս քսան, և եկեալ հասին կարգ ըստ կարգի, մի ըստ միոջէ զկնի իւրեանց, սկսեալ ի Մովսիսէ մինչև ցՍամուէլ. որ և նա եկաց ամս յիսուն և ութն։

## ԳԼՈՒԽ ԻԸ

### Յաղագս Դատաւորաց Իսրայէլի։

Թագաւորեաց Սաւուղ (ի վերայ) Իսրայէլի զկնի Դատաւորացն յաւուրս Սամուէլի մարգարէին. քանզի խնդրեցին իւրեանց թագաւոր, և ետ նոցա զՍաւուղ՝ որդի Կիսեայ՝ յազգէ Բենիամենի. և թագաւորեաց ամս քառասուն։ Իսկ խնդրեցին այլ թագաւոր. և ետ նոցա Տէր զԴաւիթ՝ որդի Յեսեայ, որում և ինքն վկայեաց, թէ գտի զԴաւիթ որդի Յեսեայ. այր ըստ սրտի իմոյ, որ արասցէ զամենայն կամս իմ։ Իսկ էր մարգարէ, և եղև թագաւոր, և թագաւորեաց Իսրայէլի ամս քառասուն։ Թագաւորեաց Սողոմոն՝ որդի Դաւթի, այր իմաստուն և հանճարեղ, խորհրդոցն Աստուծոյ քննիչ, թագաւորեաց ամս քառասուն։ Ռոբովամ՝ որդի Սողոմոնի՝ ամս հնգետասան։ Առ սովաւ բաժանեցաւ թագաւորութիւնն Իսրայէլի յերկուս. և թագաւորեաց ի Սամարիայ Ռոբովամ՝ որդի Նաբատայ, որ յանցոյցն զԻսրայէլ. յետ Ռոբովամայ Աբիա ամս երեք. Ասափ ամս քառասուն և մին. Ոզիա ամ մի. Դոդողիա ամս հինգ. Յովափատ ամս քսան և հինգ. Յովրամ ամս ութ.

Յովաս ամս քառասուն. Ամասիայ ամս քսան և ինն. Ոզիա ամս յիսուն և երկու: Սա յանդգնեցաւ խունկ արկանել ի տաճարին, և յանդիմանեցաւ ի Տեառնէ: Յովաթամ ամս տասն և վեց. Աքազ ամս յիսուն և վեց. Եզեկիա ամս քսան և ինն: Ի սորա աւուրս պաշարեաց զԵրուսաղէմ Սենեքերիմ արքայն Ասորեստանի. և հարաւ ի հրեշտակէ Աստուծոյ: Մանասէ ամս յիսուն և վեց. Ամովս ամս երկու. Յովսիա ամս երեսուն և մին. Յովաքազ ամիս երեք. Յովակիմ ամս տասն և մին. Յեքոնիա ամիս երեք. Սեդեկիա ամս տասն և մին: Զսա կալեալ Նաբուգոդոնոսոր արքայն Բաբելացւոց՝ խարեաց զաչսն, և խաւարեցոյց ի կենաց յաւիտենականին: (Ա)ռ գերութեամբն Բաբելացւոց՝ Նաբուգոդոնոսոր ամս քսան և հինգ: Եւլմարովդաք ամ մի: Բաղդասար ամս երեք: (Յ)Ադամայ առաջին, որ էր մարդ յերկրէ և թագաւոր ի վերայ երկրի՝ մինչև ցերկրորդ Ադամ, որ է Տէր երկնից՝ և Թագաւոր երկնի և երկրի, և լինին ամք հինգ հազար հինգ հարիւր. և ի Քրիստոսէ մինչև ցայս թուականն՝ հինգ հարիւր:

## ԳԼՈՒԽ ԻԲ

### Թագաւորք Պարսից յազգէն Իսահակայ:

Կիւրոս թագաւորեաց ամս երեսուն: Ի սորա աւուրս եկաց Յովսեդեկ՝ գլուխ և առաջնորդ ժողովրդեանն Իսրայէլի: Կամբտես ամս ինն. Մոգքն ամս եւթն. Դարեհ Վշտասպեան ամս երեսուն և վեց: Առ սովաւ Զօրաբաբէլ Եբրայեցւոց վերակացու եղեալ հանդերձ Յեսուաւ քահանայապետիւ, որ կատարեաց զշինուածս Տաճարին. և մարգարէանային Անգէաս և Զաքարիաս: Քսերքսէս Դարեհեան ամս քսան. Արտաւան

ամիս եւթն։ Յաւուրս սոցա կացին ծերքն գլխաւորք ժողովըրդեանն Իսրայէլի։ Արտաշէս երկայնաձեռն ամս քառասուն և մին։ Առ սովաւ Եզրաս եկ յԵրուսաղէմ, և ուսուցանէր զօրէնսն. և ի քսաներրորդի նորին թագաւորութեանն Նեեմի մատռուակն խնդրեաց ի նմանէ, և հրամանաւ նորին եկ յԵրուսաղէմ՝ և շինեաց զպարիսպն, և կազմեաց զհրապարակս քաղաքին։

Ի ժամանակին յայնմիկ կացին Դատաւորքն գլուխ ժողովըրդեանն Իսրայէլի՝ ամս չորս հարիւր և հինգ։ Քսերքսէս երկրորդ՝ ամիս եւթն. Սոգդիանոս՝ և նա ամիս եւթն. Դարեհ խորթ՝ ամս յիսուն և ինն. Արտաշէս ուշիմ ամս քառասուն. Արտաշէս երրորդ՝ որ և Ոքոս՝ ամս քսան և երեք. Դարեհ Արտեմեայ՝ ամս վեց։ Զսա եսպան Աղեքսանդր ի վեցերրորդ ամի թագաւորութեանն իւրոյ, և եբարձ զթագաւորութիւնն Պարսից, որ եհաս մինչև յամս երկերիւր և վեց՝ և ամիս երկու. և թագաւորեաց յետ ունելոյն զՊարսկոն՝ ամս վեց և ամիս եւթն։ Եւ ընդ ամենայն թագաւորեաց Աղեքսանդր ամս երկոտասան և ամիս եւթն։[3] Յետ Աղեքսանդրի թագաւորեաց յԵգիպտոս Պտղոմէոս-Ազոքոս ամս քառասուն. Պտղոմէոս եղբայրասէր. առ նովաւ թարգմանեցին զօրէնսն Եբրայեցւոց իմաստունքն։ Պտղոմէոս բարերար ամս քսան և երեք։ Առ սովաւ էր Յեսու Սիրաքայ, որ զամենայն արուեստս ի մանկութեան կարգեաց։ Այս Պտղոմէոս երրորդ՝ որ թագաւորեաց յԵգիպտոս, և այլ ևս Պտղոմէոսք ութ, որ թագաւորեցին զկնի միմեանց յԵգիպտոս։ Այլ մեք անդրէն դարձցուք ի կարգ թագաւորացն Հայոց։

# ԳԼՈՒԽ ԻԲ

## Թագաւորք Հայոց ի Հայկազանց։

*Թագաւորէ մեզ առաջին թագաւոր Պարոյր պսակեալ ի Վարբակայ ի Մարաց առաջին թագաւորէն՝ բազկակից իւր առնելով զմերն Պարոյր։ Քանզի Վարբակէս գաւառաւ Մեդացի էր՝ ասէ մեզ ստուգաբանելով պատմագիրն Մովսէս, և խորամանկութեամբ իւրով տիրէ Ասորեստանի և Նինուէի. և զքաջն մեր նախարար յինքն յարեցուցեալ զՊարոյր, թագաւորեցուցանէ զնա. և ժողովէ զբազմամբոխ արի արանց ամենայնիւ աջողաձեռնութեամբ ի տէգ նիզակի՝ և յաղեղն՝ և ի սուսեր, և պատերազմաւ տիրէ՝ որպէս ասացաք՝ Ասորեստանի և Նինուէի։ Բայց յինքն փոխէ զթագաւորութիւնն ի Մարս, ուստի Աշդահակն։ Բայց և մեր առ Մարաց թագաւորութեամբն կացեալ բնակք սպասաւորք ի մերում աշխարհիս, որպէս ասէ ստուգաբանելով Մովսէս ի պատմութեան իւրում։ Նա և գեղեցկապէս վկայ ունի իւր զմարգարէն Երեմիաս, զոր ի բանս իւր հրաւիրէ ընդ դէմ Բաբելոնի ի պատերազմ։ Հրաման տուր՝ ասէ՝ Արարատեան թագաւորութեանն և Աշքանազեան գնդին. և դարձեալ ինքն հաստատէ զբանս, եթէ այս՝ ասէ՝ հաւաստի ի մերոց գոլով թագաւորութեանն առ այնու ժամանակաւ։ Այլ զկնի սորա Հրաչեայ, Փառնաւազ, Պաճոյճ, Կոռնակ, Փաւոս, միւս Հայկակ, Երուանդ սակաւակեաց, Տիգրան։ Արդ զՏիգրանայ որ ինչ գովութիւն և քաջութիւն պատմի՝ ճառեսցուք ստուգիւ զկնի այնոցիկ։ Բայց զայլոցն զանուանսն՝ զորոց վերագոյնն յիշեցաք, անուն ինչ կամ գործ ոչ գտաք ի պատմութեան անդ, որպէս ինքն իսկ ասէ, եթէ վերջին Երուանդ և Տիգրան, ի սոցանէ՝ ասէ, ըստ յուսոյ կո-*

չեցեալ ասեմ։ Եւ դարձեալ, թէ՝ արդեւք ո՞չ կարի հեռի զոլով ժամանակին յիշեցուք զանուանս զայսոսիկ. և ինքն յաղագս Հրաչեայ զաւակաւ ինչ պատմէ զկնի այսորիկ։

## ԳԼՈՒԽ ԻԴ

### Յաղագս Հրաչեայ (էէ) Թագաւորութեանն։

Հրաչեայ թագաւորեալ Հայոց զկնի Պարոյրայ։ Սա Հրաչեայ կոչի վասն առաւել պայծառերես և բոցակնագոյն իմն լինելոյ։ Առ սովաւ՝ ասեն՝ կացեալ զՆաբուգոդոնոսոր Բաբելացւոց արքայ՝ որ գերեաց զՀրէայսն. և սորա ասեն զմի ի գերելոց գլխաւորաց Եբրայեցւոցն խնդրեալ ի Նաբուգոդոնոսորայ, անուն Շամբաթ, ածեալ բնակեցոյց յերկիրս մեր մեծաւ պատուով, և ի սմանէ՝ ասէ պատմագիրն՝ լինել զազգ Բագրատունեաց. և հաւաստի է։ Երդ ի դառնալն Նաբուգոդոնոսորայ ի Հրէաստանէ բազում աւարաւ և գերութեամբ, ընդ առաջ առաքէ նմա Հրաչեայ հրեշտակս պատուական գանձիւք և պայծառ պատարագօք. վասնզի դաշնաւորք էին միմեանց. և խնդրէ ի նմանէ մասն յաւարէ անտի. և նա տայ նմա զմի ի գերելոց գլխաւորացն՝ Շամբատ անուն, որպէս վերագոյնդ ասացաւ ի Մովսիսէ. և կացուցանէ զնա պատուով՝ մինչ ի ժամանակս Վաղարշակայ առաջին թագաւորին Հայոց։

Եւ նա կարգէ զնա իւր Թագադիր և Ասպետ. և ազգի նորա խոստանայ տիրութեան*) իշխանութիւն. զոր ապա ասացից յետոյ յայլում տեղւոջ։ Իսկ այլ թագաւորքն ստիպէին զնոսա ի պաշտօն կռոցն. զոր և թողից ասել յիւրաքանչիւր կարգի։

(*) Գուցէ Տանուտէրութեան։

# ԳԼՈՒԽ ԻԵ

## Յաղագս Տիգրանայ։

Տիգրան առաջին թագաւորէ Հայոց՝ եւթներրորդ ի Հրաչեայ. զովութիւնն նախասացեալ եղեւ յիններատասներրորդ ճառի անդ։ Սա դաշնաւորեալ Մարացն Աշդահակայ՝ տայ նմա զքոյր իւր Տիգրանուհի ի կնութիւն՝ ըղձիւք զնա խնդրեալ Աշդահակայ։ Եւ յետ այսորիկ ննջեալ Աշդահակայ դաւաճանութեամբ ի վերայ Տիգրանայ չար խորհեալ նմա։ Զոր իմացեալ օրիորդին Տիգրանուհեայ, ազդ առնէ Տիգրանայ եղբօր իւրում զնենգն Աշդահակայ։ Բայց զովելին մեր քաջահասակն և նիզակաւորն ժողովէ այնուհետեւ զքաջսն Հայոց ի սահմանաց իւրոց զօրս բազումս՝ զամենայն ընտիր աշխարհացն Հայոց, և երթայ զկողմամբք Մեդացւոց, հանդիպի զօրացն Աշդահակայ։ Իսկ սա ի խմբել պատերազմին ի գլխի հարկանի Աշդահակայ, և նիզակով իւրով հերձէ զերկաթի հանդերձն, և ի քարշել զձեռն իւր արտաքոյ զկէս մասն թոքոյն բերէ. և փաղձան առնէ պատերազմին մահն Աշդահակայ։ Եւ ինքն առեալ զքոյր իւր Տիգրանուհի՝ յուղարկէ յանուանեալն Տիգրանակերտ. և ինքն դառնայ յաշխարհն իւր բազում առ և աւար հանդերձ գերութեամբ ընդ ինքեան բերելով ։ Սա աջակցեալ Կիւրոսի՝ ի բաց բառնայ զթագաւորութիւնն Մարաց՝ առէ պատմագիրն։ Բայց ի սորա զարմից ոչ ոք եցոյց քաջութիւն պատերազմաւ. այլ միայն (յ)իւրաքանչիւր անուն զգառօս (գուցէ զգաւառս) իւրեանց կոչել, որպէս ի կրտսեր որդւոցն սորա Բաբայ՝ Բաբենեանք, և ի Զարեհէ՝ Զարեհաւանն։

Իսկ աւագ որդին սորա՝ Բապտիրան, զորոյ քաջութեան գովութիւն երգիչք երգէին ի պարս խաղուց, նաև աստուածա-

ցուցեալ առեն զնա Մարաց աշխարհին. և զչափ հասակի նորա անդրի կանգնեալ՝ պատուէին զոհիւք, ասէ մեզ ստուգիւ պատմագիրն։ Իսկ Տիգրան՝ ասէ՝ ընդվզեալ մեռանի յԱղէք-սանդրացւոց Մակեդոնացւոց։ Իսկ դարձեալ ասէ, թէ մինչև ցթագաւորութիւնն Վաղարշակայ՝ ի Հայս ոչինչ ճշմարտա-գոյն գտաք պատմել։

## ԳԼՈՒԽ Ի.Զ.

### Յաղագս Թագաւորելոյն Արշակունեաց ի վերայ Պարսից և Հայոց։

Այժմ արասցուք քեզ պատմել զթագաւորութիւն Պար-սից և Հայոց՝ որ յԱբրահամէ ով Հայր հոգևոր։ Աբրահամ նահապետ և գլուխ նահապետաց, և ըստ հաւատոց յԱդամայ և ի Նոյէ երրորդ մեզ կոչեցեալ նախահայր, իսկ յԱդամայ քսաներրորդ առաջներրորդ, և ի Նոյէ ըստ թուոյ ծննդոցն՝ որ ի Սեմայ՝ մետասաներրորդ ծնեալ ի Թարայէ յաւթանասա-ներրորդ ամի՝ Աբրահամ կոչեցեալ՝ և դարձեալ յորջորջ-մամբ Աբրահամ անուանեալ. և ի նմանէ ասեն եղեալ զազգն Պարթևաց։ Քանզի՝ ասէ՝ յետ մեռանելոյն Սառայի առեալ Աբրահամու կին զՔետուրայ, յորմէ ծնաւ Եմրան և եղբարք նորա. զորս ի կենդանութեան իւրում Աբրահամ մեկնեաց ի Սահակայ, և արձակեաց յերկիրն արևելից. որոյ սերեալ ազգ Պարթևաց, և ի նոցանէ Արշակ քաջ, որ ապստամբեալ ի Մակեդոնացւոց՝ թագաւորեաց յերկրին Քուշանաց ամս երե-սուն և մին։ Իսկ յետ նորա՝ որդի նորին Արտաշէս՝ ամս քսան և վեց։ Ապա Արշակ՝ որդի նորա՝ որ կոչեցաւ մեծ, թոռն քաջին Արշակայ, որ զԱնտիոքոսն սպան, և զՎաղարշ եղբայր իւր թագաւոր Հայոց կացոյց՝ երկրորդ իւր առնելով։ Ինքն չուեալ

ի Բահղ, հաստատեաց զթագաւորութիւն իւր. վասնորոյ զարմք նորա Բահղաւք անուանեցան, որպէս և եղբօր նորա Վաղարշակայ՝ ի նախնւոյն անուն՝ Արշակունիք. և որ այլ ևս պատմի զկնի այսորիկ ի Մովսիսէ, յետ տիրելոյն ասէ՝ ամենայն տիեզերաց Աղէքսանդրի Մակեդոնացւոց՝ որդւոյն Փիլիպպեայ, և Ողոմպիադայ՝ որ էր քսան և չորեքորդ յաջորդեայ բազմաց տալով զտէրութիւնն կտակաւ՝ ասէ պատմագիրն, զհարց և զհրաման իշխանութեամբ Մակեդոնացւոցն անուանեցի. և յետ այնորիկ ինքն մեռանի։ Յետ որոյ ապա թագաւորեաց ի Բաբելոն Սելեւկոս. որ կորզելով յինքն զբոլորից իշխանութիւն՝ նաև զՊարթևս հնազանդեցոյց մեծաւ պատերազմաւ։ Սա տիրեալ ամս երեսուն՝ թողու զթագաւորութիւնն որդւոյ իւրում ամս տասն և ինն։ Իսկ ի մետասաներրորդին ապստամբին Պարթևք ի Մակեդոնացւոցն. ուստի և թագաւորեաց Արշակ քաջ՝ որ ի զաւակէ Աբրահամու՝ ի Քետուրայ ծննդոցն՝ առ ի հաստատել բանին Տեառն՝ որ առ Աբրահամ, եթէ. թագաւորք ազգաց ի քէն ելցեն։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Թագաւորք Հայոց՝ որ է Պարթևաց։

Առաջին թագաւոր Վաղարշակ՝ որ թագաւորեաց Հայոց՝ հրամանաւ Արշակայ մեծի եղբօր իւրոյ՝ Պարսից արքայի։ Սա բազում արութիւն քաջութեան ցուցեալ ի ժամանակս թագաւորութեան իւրոյ զօրօք քաջացն Հայոց։ Քանզի խաղաց գնաց առ սահմանօքն խախտեաց ի վերայ Մակեդոնական զօրուն անթիւ բազմութեամբ. և այլ բազում նահատակութիւն քաջութեան ցուցեալ, և կարգ ուղղութեանց աշխար-

հիս Հայոց։ Բանիք խորհուրդ առաքեալ Վաղարշակայ մեծի արքային Հայոց, առաքէ հրովարտակ առ Արշակ մեծ եղբայր իւր ի ձեռն Մարիբայ Կատինեայ, քննել զդիւանն արքունի, և առ զգահնամակ նախարարացն Հայոց։ Զոր առեալ զթուղթըն եղբօր իւրոյ մեծին Արշակայ՝ առաջի առնէ նմա զդիւանըն արքունի։ Իսկ նա գտեալ զգահնամակն բերեալ(առ) Վաղարշակ արքայն Հայոց։ Իսկ նա առեալ զօրինակն՝ նախա(րա)րութիւնս կարգէ իւրաքանչիւր ումեք բարձ և պատիւ տալով նախարարացն՝ ըստ իւրաքանչիւր բարձի տալով իշխանութիւն միոյ միոյ ըստ արժանեաց՝ որում վայելէր։ Տայ և նախնւոյն մերոյ որ ի Հրէից՝ Բագարատուն՝ իշխանութիւն թագաւորութեան՝ թագ ի գլուխ դնել թագաւորին՝ և թագադիր անուանել, այլև Ասպետ, և զասպետական պատիւն տալ ազգին նորա. և առանց ոսկոյ և ականց մարգարտիւ երիզակեան վարսակալ հրամայէ ածել թագաւորին իւրոյ, և զայն՝ յորժամ յարքունիս և ի տան թագաւորին շրջիցի։ Նա զայլս մի ըստ միոջէ կարգէ և կոչէ անուանս։ Նախ առաջին օրինադրէ զինքն և զտուն իւր, սկիզբն առնելով ի գլխոյ իւրմէ և ի թագէ. և զկոչեցեալն՝ որ ի Հրէից Բագարատ՝ առնէ զնա ազգաւ թագադիր լինել Արշակունեաց. և ազգի նորա Բագրատունիք անուանէ։ Նա զայլս մի ըստ միոջէ կարգէ և կոչէ անուանըս. առաջին՝ Սիւնեաց տէր, երկրորդն՝ Ասպետ Բագրատունի, երրորդն՝ Արծրունի, չորրորդն՝ Մախազունի, հինգերորդն՝ Մամիկոնեան. և զայլ ևս կարգէ և հաստատէ յիւրաքանչիւր իշխանութեանն։ Նա ինքն յետ այսքան արութեանց և առաքինութեանց և բազում բարեկարգութեան՝ մեռանի ի Մծբին, թագաւորեալ ամս քսան և երկու, թողեալ զտէրութիւնն որդւոյ իւրոյ Արշակայ երկրորդի։ Նա յետ նորա թագաւորէ Արշակ առաջին՝ որդի Վաղարշակայ։ Սա նախանձաւոր լեալ հայրենի

առաքինութեանց՝ բազում ուղղութիւն և սա գործեաց. և պատերազմեալ ընդ Պոնտացիս՝ նշանակ զնիզակ իւր թողեալ, զոր մինչեւ՝ ասեն՝ արեամբ զեռալոց ձգեալ թաղեաց յերկանաքար արձանի. զոր բազում ժամանակ զարձանն զայն պատուեցին Պոնտացիք՝ որպէս թէ յԱստուծոյ է գործն։ Ի սմանէ երկուք ոմանք՝ որդիք Բագարատայ ի Բագրատունեաց՝ սրով կատարեցան վասն զկուռսն չպաշտելոյ։ Բայց ապա այլք յանձն առին յաւուր շաբաթու յորս և ի պատերազմ հեծանել, և զմանկունս իւրեանց ոչ թլփատել։ Սա թագաւորեալ ամս տասն և երկու՝ և մեռաւ։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Ութերորդ Թագաւորութիւն Յունաց։

Յունաց թագաւորութիւնն յԱթոսայ էր։ Բայց յետ թագաւորութեանն Աղէքսանդրի Մակեդոնացւոյ՝ հաստատեցաւ թագաւորութիւնն Յունաց. զի և Աղէքսանդր Յունաց էր թագաւորեալ ի տիեզերակալութեանն իւրում՝ ամս երկոտասան։ Արդ քանզի ոչ առնու որդի ի հօրէ զթագաւորութիւն նոցա, այս է, զի ընդ ժամանակս ժամանակս ժողովէին զիշխանութիւնս նախարարքն, և ընտրէին իւրեանց թագաւոր, զոր ընտրէին ըստ կամաց իւրեանց, զոր մինչև զիրքս Մակաբայեցւոցն. ապա զարձեալ մինչև զայս և Ազգին, թէ՝ թագաւորութիւնն յԱթոսայ ոչ էր թէ թագաւորէր որպէս ինքն կամէր, զորօրինակ՝ որդի թագաւորի յառնէ առաջնորդել թագաւորութեանն, այլ իւրք ժողովեցան որդիքն Նահապետաց ի քաղաքն մի առնալ, և ապա րին առան խորհրդեան, և առնէին կացուցանէին թագաւոր քաղաքին՝ այր իմաստուն՝ առաջնորդել թագաւորութեանն։ Արդ

տատանօք յայսմ վայրի սկիզբն լինի Թագաւորաց, զոր և ի գիրըս կայսերացն կարգեալ կան անուանք՝ և համարք՝ և գործք իւրաքանչիւրոցն՝ որ շատ և որ սակաւ, ոմանք չարափառութեամբ կեցեալք՝ և յիշատակ չարի թողեալ յաշխարհի. իսկ ոմանք բարեփառութեամբ հաստատեալ զթագաւորութիւնն իւրեանց, և անուն բարի ժառանգեալ ի կեանս յայսոսիկ՝ և որ գալոցն իցէ։ Արդ՝ որպէս ասացաք իսկզբան ճառիս, եթէ յորդւոցն Եսաւայ էր թագաւորութիւնն. վասն այնորիկ դեռևս սակաւին գինասէրքն են և որովայնամոլք, որպէս Եսաւն այն ի հնումն, որ ընդ միոյ կերակրոյ զանդրանկութիւն վաճառեաց։ Այլ մեք ի մերն դարձցուք ի կարգ խնդրոյն։

Գայիոս առաջին կայսր, որ կոչեցաւն Յուլիոս, ամս երեք և ամիս չորս։ Սա առաջին եկաց ի Հռովմ ինքնակալ կայսր երեք ամ ի Կղէովպատրէ Եգիպտոսի և Աղէքսանդրի թագաւորի. սա այլ ինչ գործք ոչ գործեաց, բայց զկնի Տղոս ամիս Յուլիս անուանեաց վասն յայնմ ամսեան ծնանելոյ։

## ԳԼՈՒԽ ԻԹ

### Յաղագս Արտաշէսի Թագաւորին։

Թագաւորէ Արտաշէս՝ որդի Արշակայ՝ ի քսան և երեք(երորդ) ամի Արշականայ Պարսից արքայի։ Սա յառաջադէմ եղեալ՝ զաւագութեան ածէր թեկն Հայոց և Պարսից միապէս. զի էր այր հպարտ և պատերազմասէր. որ շինեաց իւր արքունի ի Պարսից աշխարհին. և դրամ առանձին զիւրն հարկանէր պատկեր՝ ասէ պատմութիւնն։ Եւ խաղայ բազում զօրու յարևմուտըս, և ձերբակալ առնէ զԿիւրոս թագաւոր Լիւդացւոց։ Եւ գտեալ անդ պատկեր զԱրտեմեայ, և տայ բերել յաշխարհն

Հայոց. և կանգնեալ յԱրմաւիր, և ինքն նուաճէ զմիջոց երկուց ծովուց Ովկիանու և Պոնտոսի՝ ծառայեցուցանել իւր (ինքեան) զբոլոր արևմուտս։ Եւ կալեալ զԱրիւրոս կապեաց, և զօրս նորա սատակեաց. և ինքն մեռաւ ի զօրաց իւրոց՝ Թագաւորեալ ամս քսան և հինգ։ Եւ յետ նորա Թագաւորէ երկրորդ Տիգրան՝ որդի նորա՝ ի տասնևիններորդ ամի իշխանութեանըն Արշականայ Պարսից Թագաւորին։ Եւ ժողովեալ զօրս բազում՝ հալածական առնէ զզօրս Յունաց. որ եկեալ էին յաշխարհս Հայոց զկնի մահուանն Արտաշիսի՝ միջոց ինն համաբելով։ Եւ ապա շինէ մեհեանս, և բազինս կանգնեալ՝ զոհս ամենայն նախարարացն հրամայէ մատուցանել։ Զոր չառեալ յանձն արանցն Բագրատունեաց, զմիոյ ուրումն լեզուն հատեալ վասն զպատկերսն անարգելոյ. ապա և խոշտանկեալքն յանձն առնուին ուտել զմիս զոհիցն և զմիս խոզի, այլ ոչ ինքեանք զոհեցին կամ երկրպագեցին։ Յետ այսորիկ չուեալ ի Հրէաստան բազում և անթիւ զօրու, և առնու առ և աւեր (աւար) և գերութիւն բազում. և Թողու զայն ի սակաւ զօրս իւր։ Եւ ինքըն դիմեալ այլ բազմութեամբ զօրու ի վերայ Հռովմայեցւոց զօրուն՝ փախստական առնէ իսպառ. և ինքն դառնայ հանդերձ գերութեամբ յաշխարհ իւր։ Նաև զԿրասոս ոմն սպանանէ յեզր Եփրատ գետոյ, եկեալ յԵրուսաղէմէ առաւ և աւարաւ և բազում գանձիւք, և առեալ դառնայ ի Մծբին։ Եւ այլ ևս բազում պատերազմունս հարեալ՝ վախճանի ինքն Թագաւորեալ ամս երեսուն և երեք։ Երկրորդ Օգոստոս Յունաց Թագաւոր ամս յիսուն և ամիս վեց։ Սա սովաւ եղև աշխարհագիր ընդ ամենայն տիեզերս. յորում և Յովսէփ եղեալ յաշխարհագիրն հանդերձ Մարեմաւ՝ ծնաւ ի Բեթղահէմ զՓրկիչն մեր։ Այս Օգոստոս Աւգաստոս՝ Հոկտաւիոս յորջորջեցաւ, և զՍեկտոս ամիս՝ Օգոստոս անուանեաց յիւր անուն՝ վասն ի նոյն ամ-

սեանն իւրոյ ծննդեանն լինելոյ։ Նա համօրէն տիրեաց ամենայն Հռովմայեցւոց և Յունաց։ Ի սորա քսանևերեք(երորդ) ամի ծնանի Յիսուս Քրիստոս ի Բեթղահէմ Հրէաստանի, և լինի(յ) Ադամայ մինչև ի ծնունդն Քրիստոսի՝ ամք հինգ հազար հինգ հարիւր, իսկ ըստ Հրէից մինչև ի ծնունդն Քրիստոսի՝ չորս հազար ամք, և ըստ Սամրտացւոցն՝ չորս հազար, իսկ ըստ Յունացն Եպիփանու Կիպրացւոյ պատմութեանն՝ հինգ հազար հինգ հարիւր. ամ, և ըստ Քրոնիկոնին բազմավէպ պատմութեան՝ հինգ հազար հարիւր իննսուն և երկու։

## ԳԼՈՒԽ Լ

### Վասն Խաղաղութեան Արտաւազդայ։

Արտաւազդ՝ որդի Տիգրանայ՝ թագաւորէ Հայոց։ Սա այլ ինչ գործ արութեան և քաջութեան ոչ գործեաց. այլ միայն ուտելեաց և ըմպելեաց պարապեալ՝ և որսոց ցռուց և վարազաց, զիմաստութենէ և զքաջութենէ անփոյթ արարեալ։ Սա բարսեալ և թամբասեալ լինէր ի զօրաց իւրոց յաղագս սաստիկ որկրամոլութեան իւրոյ։ Արդ իբրև այս լինէր ի զօրաց իւրոց, եհան ի նմանէ զՄիջագետս Անտոնինոս։ Զայրացեալ Արտաւազդայ՝ հրամայէ զօրս ժողովել յԱտրպատականէ և զենակիցս լերինն Կովկասու՝ և զզօրս Աղուանից և զՎրաց և զԽախտեաց, և իջեալ նոքօք ի Միջագետս՝ հալածական և փախստական արար զզօրսն Հռովմայեցւոց։ Զոր ապա մարտնչեալ առիւծաբար Անտոնինոս, և առեալ զբազմութիւն զօրաց իւրոց, դիմէ ի վերայ Արտաւազդայ, և անցեալ ի Միջագետս՝ կոտորէ զզօրսն Հայոց, և ձերբակալ արար զԱրտաւազդ. պարգևէ Կղերպատրի. զոր ոչ գիտեմ՝ ինչ օրինակաւ լեալ մահ

նորա։ Եւ Թագաւորէ յետ նորա Արշամ՝ որդի Արտաշէսի՝ հրամանաւ Արշէզի Պարսից արքայի։ Նա սովաւ եղև սկիզբն Հայոց տալ մասնաւոր հարկ Հռովմայեցւոց։ Զսա զայրացուցեալ Զուրայի նահապետին Գնթունեաց ի վերայ Ենանայ Նախարարին Բագրատունւոյ. զոր զայրացեալ Արշամայ՝ հրամայէ տանջանս յարուցանել ի վերայ Ենանոսի, և վաղճան գործոյն այս ինչ՝ կամ թողուլ զօրէնս Հրէութեանն և երկիրպագանել կռոցն, կամ կախել զփայտէ և ջնջել զազգ նորա։ Եւ սպանեալ զմի յազգականաց նորա առաջի նորա՝ Սարի անուն, և զՍաբատիայ և զԱզարիայ որդիս նորա ի տեղի սպանման մատուցեալ. զոր ապա յերկեղէ կատարէ զկամս արքային հանդերձ ազգատոհմիւ. և Ենան յառաջին պատիւն իւր հաստատի։ Եւ Արշամ կեցեալ ամս քսան՝ մեռանի։ Տիբերիոս Թագաւորէ ամս քսան և երեք։ Ի սորա տասնեհինգ(երորդ) ամի գայ ի Մկրտութիւն Յիսուս Քրիստոս ի Յորդանան առ Յովհաննէս. և ի տասնուվեց(երորդն) ամի գլխատեցաւ Մկրտիչն. և ի տասնեւութ(երորդն) ամի խաչեցաւ Քրիստոս ի Հրէից. և ի տասնեւին(երորդ) ամին քարկոծեցաւ Ստեփաննոս։ Եւ ի նոյն ամի կոչեցաւ Պօղոս յառաքելութիւն։ Եւ էր յԵրուսաղէմ Եպիսկոպոս Յակոբոս եղբայր Տեառն. և տեղեկացեալ Տիբերեայ վասն սքանչելագործ նշանացն Քրիստոսի, խնդրեաց առ ինքն զՊիղատոս։ Իսկ նորա երկուցեալ ի տանջանաց, մինչդեռ յՈվկիանոսի նաւէին, մարտ անձին իւրոյ եղեալ՝ ընկեցաւ ի ծով։ Նա սովաւ էր Աբգար Թագաւոր Հայոց յՈւռհա. որև գրեալ թուղթ առ Փրկիչն ի ժամանակի Խաչելութեանն, և ընկալաւ թուղթ պատասխանի՝ օրհնելով զքաղաքն՝ ցուցանելով նմա զկատարումն ելից նորա յԵրուսաղէմ, և ուխտադրեալ առաքել առ նա մի յաշակերտացն բժշկել զհիւանդութիւն նորա. զի էր նա պատագրոս յոտից իւրոց։

## ԳԼՈՒԽ ԼԸ

### Վասն նուաճելոյ Աբգարու զՀայս։

Թագաւորէ Աբգար՝ որդի Արշամայ՝ ի քսաներորդ ամի Արշօրի արքայի Պարսից։ Ի սորա երեք ամի թագաւորութեանն՝ հարկին Հայք Հռովմայեցւոց. քանզի հրամայեալ յՕգոստոս կայսերէ՝ որպէս ասի յՂուկասու Աւետարանին՝ աշխարհագիր առնել ընդ ամենայն տիեզերս. վասնորոյ և ի Հայս առաքեալ գործակալք Հռովմայեցւոց՝ բերելով զպատկերն Օգոստոսի կայսեր՝ կանգնեցին յամենայն մեհեանս։

## ԳԼՈՒԽ ԼԲ

### Աստուածային խրախոյս Աբգարու առ Մարինոս, յորում տեսին զՓրկիչն մեր, ուստի սկիզբն հաւատոյն Աբգարու։

Ընդ այն ժամանակս եկաց ի գործ հազարապետութեան կայսեր ի վերայ Փիւնիկեցւոց՝ և Պաղեստինացւոց՝ և Ասորոց՝ և Միջագետաց՝ Մարին՝ որդի Ստորգեայ. առ որ առաքեաց Աբգարոս երկուս ի գլխաւորաց իւրոց՝ զՄարիհաբ Բդեշխ Աղձնեաց և զՇամշագրամ նահապետ Ապահունեաց և զԱնան հաւատարիմ իւր՝ ի քաղաքն Բէթգուբրին՝ զգացուցանելով նմա զպատճառ երթալոյն իւրոյ յարեւելս։ Իսկ նոքա դարձեալ անտի՝ եկին յԵրուսաղէմ. տեսեալ զՓրկիչն մեր Քրիստոս՝ և ականատես եղեալ՝ պատմեցին Աբգարու։ Եւ նորա զարմացեալ՝ հաւատաց ճշմարտութեամբ. և ասէ, այն զօրութիւն ոչ է մարդոյ, այլ Աստուծոյ. զի ոչ կարէ մարդ յարուցանել զմեռեալ, այլ Աստուած։ Եւ քանզի ինքն վշտացեալ էր մարմնով չարաչար ցաւոց, գրէ թուղթ առ Փրկիչն՝ գալ բժշկել զնա ի ցաւոցն. օրինակ զայս։

# ԳԼՈՒԽ ԼԳ

## Թուղթ Աբգարու առ Փրկիչն։

Աբգար Լամացի՝ իշխան աշխարհի՝ առ Յիսուս Փրկիչն և բարերար, որ երևեցար յաշխարհիդ Երուսաղեմացւոց, ողջոյն։

Լուեալ է իմ վասն քո և վասն բժշկութեանդ՝ զոր առնես ի վերայ հիւանդաց առանց դեղոց և արմատոց. զի որպէս ասի, տաս դու կուրաց տեսանել, և կաղաց գնալ, և զբորոտս սրբել, և զայս պիղծ հանել ի մարդկանէ, և որ միանգամ չարչարեալք ընդ երկար հիւանդութեամբ՝ բժշկես։ Դու և զմեռեալս յարուցանես։ Եւ իբրև լուայ վասն քո զայս ամենայն, եդի ի մտի իմ մի յերկուց, կամ եթէ դու իցես Աստուած՝ իջեալ յերկնից՝ որ գործես զայդ, և կամ թէ որդի իցես դու Աստուծոյ՝ և զայդ գործես։ Արդ վասն այնորիկ գրեցի ես առ քեզ՝ աղաչել զքեզ, զի աշխատ լիցիս և եկեսցես առ իս, և բժշկես(ցես) զհիւանդութիւնս՝ զոր ունիմ ես։ Նաև լուայ, եթէ Հրեայքդ տրտունջեն զքէն, և կամին չարչարել զքեզ։ Բայց քաղաք մի փոքրիկ և գեղեցիկ է իմ, և բաւական է մեզ երկոցունց, ե՛կ բնակեսցո՛ւք ի միասին։

Որոց տարեալ զթուղթն՝ պատահեցին նմա յԵրուսաղէմ։ Զայս վկայէ և Աւետարանական բանն, եթէ էին ոմանք ի հեթանոսաց եկելոց առ նա։ Վասնորոյ որք լուանն՝ ո՛չ համարձակէին ասել ցՅիսուս, այլ ասեն ցՓիլիպպոս և ցԱնդրէաս. Անդրէաս և Փիլիպպոս ասեն ցՅիսուս։ Իսկ ինքն Փրկիչն մեր յայնմ ժամանակի՝ յորում կոչեաց զնա, ո՛չ առ նա յանձն. բայց թուղթ հրամայեաց գրել աւրինակ զայս։



## ԳԼՈՒԽ ԼԴ

Պատասխանի Յիսուսի Աբգարու, զոր գրեաց Թովմաս Առաքեալ հրամանաւ Փրկչին։

Երանի՛ իցէ այնմ՝ որ հաւատայցէ յիս, իբր ո՛չ իցէ տեսեալ զիս. զի գրեալ է վասն իմ այսպէս. զի որք տեսանենն զիս՝ ո՛չ հաւատայցեն յիս. և որք ո՛չ տեսանեն զիս՝ նոքա հաւատայցեն և կեցցեն։ Իսկ վասն ա՛յն՝ զի գրեցեր դու առիս՝ գալ ինձ առ քեզ, արժան է ինձ աստ կատարել զամենայն ինչ՝ վասն որոյ առաքեցայ ես։ Եւ իբրև կատարեցից զայս, ապա համբարձայց առ Ա՛յն՝ որ առաքեացն զիս. և յորժամ համբարձայց, առաքեցից քեզ զմի յաշակերտաց անտի իմոյ, զի զցաւս քո բժշկեսցէ, և կեանս քեզ՝ և որոց ընդ քեզ են՝ շնորհեսցէ։

Զայս թուղթ բերին սուրհանդակք Աբգարու, ընդ որում զկենդանագրութիւն Փրկչական պատկերին. որ կայ յԵդեսացւոց քաղաքին մինչև ցայսօր ժամանակի։

## ԳԼՈՒԽ ԼԵ

Գնալն Թադէոսի առ Աբգար, և քարոզել քաղաքին Ուռհայէ։

Թովմաս առաքեալ՝ մի յերկոտասանից անտի՝ առաքեաց ըզԹադէոս ի քաղաքն Եդեսիայ՝ բժշկել զԱբգար ըստ բանին Տեառն։ Որոյ եկեալ ի տուն Տուբայ իշխանին՝ որ էր յազգէն Բագրատունեաց, և եղ համբաւ զնմանէ ընդ ամենայն քաղաքն։ Իսկ իբրև լուաւ թագաւորն Աբգար, կոչեաց զնա առ ինքն. և յարուցեալ ի գահոյիցն՝ երկիրպագ նմա։ Իբրև տեսին զայն իշխանքն՝ որ մօտ կային առ նմա, զարմացան։ Եւ ասէ ցնա Աբգար, եթէ դո՞ւ իցես աշակերտ օրհնելոյն Յիսուսի, զոր ասաց

ինձ՝ առաքել այսր, և կարո՞ղ իցես բժշկել զիս: Եւ ետ սուրբ Առաքեալն, եթէ հաւատաս ի Յիսուս Քրիստոս յորդին աստուծոյ, եդեցի քեզ՝ որպէս կամիս: Եւ թագաւորն, ես հաւատացի ի նա և ի Հայր նորա. վասնորոյ կամեցայ առնուլ զօրս իմ՝ և գալ կոտորել զՀրէայսն՝ որք խաչեցին զնա, եթէ՛ ո՛չ էր իմ արգելեալ վասն թագաւորութեանն Հռոմայեցւոց: Եւ ապա սկիզբն արարեալ սրբոյ առաքելոյն՝ աւետարանեաց նմա և քաղաքի նորա. և եդեալ ձեռն ի վերայ Աբգարու՝ բժշկեաց զնա. և զԱբտիու պատագիրոս և զամենայն հիւանդս քաղաքին բժշկեաց. և հաւատացին ամենեքեան. և մկրտեցաւ թագաւորն և ամենայն քաղաքն: Եւ զտունս կռոցն փակեցին և ծածկեցին: Եւ առաքելոյն Թադէի զմետաքսագործ ոմն խոյրարար մկրտեալ՝ և անուն կոչեալ նմա Ադդէ, ձեռնադրէ ի վերայ Եդեսիայ՝ փոխանակ իւր թողլով ի քաղաքին. և ինքն գայ առ Սանատրուկ քեռորդին Աբգարու. զոր կարգեալ էր ի վերայ զօրացն Հայոց. որ էր ի քաղաքին Շաւարշաւան՝ ի գաւառին՝ որ կոչի Արտազ:

## ԳԼՈՒԽ ԼԶ

### Թուղթ Աբգարու առ Տիբեր կայսր Հռոմայեցւոց:

Աբգար արքայ Հայոց՝ Տեառն իմում Տիբերեայ կայսեր Հռոմայեցւոց՝ խնդալ:

Գիտելով իմ՝ եթէ ոչինչ ծածկի ի քում թագաւորութեանդ, այլ իբրև մտերիմ ոք աւելի և ես իմացուցանեմ քեզ ի ձեռն գրոյ: Զի Հրէայք՝ որ բնակեալ են ի գաւառս Պաղեստինացւոց, ժողովեալք խաչեցին զՔրիստոս առանց իրիք յանցանաց՝ ի վերայ մեծամեծ երախտեաց՝ զոր արար առ նոսա՝ նշանս և սքանչելիս մինչև զմեռեալս անգամ յարուցանել.

գիտացի՝ զի զօրութիւնք այս ոչ են սոսկ մարդոյ, այլ Աստուծոյ։ Զի ի ժամանակին՝ յորում խաչեցին զնա, արեգակն խաւարեցաւ, և երկիր շարժեալ տատանեցաւ. և ինքն յետ երից աւուրց յարեաւ ի մեռելոց, և երևեցաւ բազմաց. և այժմ յամենայն տեղիս անուն նորա ի ձեռն աշակերտաց նորա զքանչելիս մեծամեծս կատարի(է). որև առ իս ինքեան եցոյց յայտնապէս։ Եւ արդ այսուհետև տէրութիւնդ քո գիտէ՝ որ ինչ արժանն է՝ հրամայել ի ժողովրդեանն Հրէից՝ որք զայն գործեցին, և գրել ընդ ամենայն տիեզերս, զի երկիրպագեսցեն Քրիստոսի իբրև ճշմարտի Աստուծոյ։

## ԳԼՈՒԽ ԼԵ

### Պատասխանի Տիբերոյն Աբգարու։

Տիբեր կայսր Հռոմայեցւոց՝ Աբգարու թագաւորի Հայոց՝ խնդալ։

Զթուղթ մտերմութեան քո ընթերցան առաջի իմ. վասնորոյ շնորհակալութիւն ի մէնջ քեզ հասցէ։ Թէպէտև ի բազմաց լուեալ էր մեզ զայդ, ·յառաջագոյն եցոյց և Պիղատոս ստուգապէս վասն նշանաց նորա՝ թէ յետ յարութեանն իւրոյ հաւատարիմ եղև բազմաց՝ թէ Աստուած է։ Վասնորոյ և ես կամեցայ առնել զայդ՝ զոր և դու խորհեցար։ Այլ քանզի սովորութիւն է Հռոմայեցւոց՝ Աստուած ի հրամանէ թագաւորի միայնոյ ոչ հաստատել բան, մինչև փորձեալ քննեսցի նա ի Սինկղիտոսէ։ Վասնորոյ և իմ յայտնեալ զբանս զայսոսիկ ի Սինկղիտոսէ, արհամարհեաց Սինկղիտոսս, զի ոչ քննեցաւ նա յառաջագոյն ի նմանէ։ Այլ մեք տուաք հրաման ամենայն ումեք՝ որում և հաճոյ թուեսցի Յիսուս, ընկալցի զնա Աստ-

ուած, և մահ այնոցիկ սպառնացեալ՝ որք չարախօս կայցեն քրիստոնէից. և վասն ժողովրդեանն Հրէից՝ որ յանդգնեցան խաչել, զոր լսեմ՝ թէ ոչինչ արժանի խաչի և մահու էր նա, այլ պատուի և երկրպագութեան, յորժամ առից պարապումն ի պատերազմէ Սպանիացւոց ապստամբողաց լինէն, քննեալ հատուցից նոցա զարժանն. ողջ լե՛ր։

## ԳԼՈՒԽ ԼԲ

### Թուղթ Աբգարու։

Դարձեալ առաքէ Աբգար առ Տիբեր ի ձեռն գրոյ բանս ինչ պատասխանաց արժանի այպանելոյ սակս Սինկղիտոսին, և ամբաստանութիւն զՊիղատոսէ՝ առ ի լծակից լինել Հրէիցն յաղագս յանդգնութեան ի վերայ Փրկչին, նաև վասն այնր, զի առանց հրամանի կայսեր գործեաց զգործն զայն ի քսութենէ Հրէիցն։ Եւ զթուղթն գրեալ՝ ասէ՝ ըստ արժանի քոյոյ տէրութեան տեսի, և ընդ հրամանի մտածութեան քո ուրախացայ։ Բայց գործ Սինկղիտոսի յոյժ այպանելի է և պարսաւելի։ Բայց քեզ տեառն իմում հաճոյ թուեսցի առաքել յԵրուսաղէմ փոխանակ Պիղատոսի, զի լուծցի անարգանօք յիշխանութենէ՝ յորում կացուցեր զնա. վասնզի արար զկամս Հրէիցն. և խաչեաց զՔրիստոս տարապարտուց առանց քո հրամանի. ողջ լե՛ր։

Եւ ապա խնդրեաց Տիբեր առ ինքն զՊիղատոս. և նորա երկուցեալ ի տանջանաց՝ մարտ անձին իւրոյ եղեալ՝ ընկեցաւ ի ծով։

# ԳԼՈՒԽ ԼԹ

## (Պատճեան) Թղթոյն Աբգարու։

Գրէ և առ Արտաշէս արքայն Պարսից վասն Յիսուսի։

Աբգար արքայ Հայոց՝ Արտաշիսի եղբօր մերում՝ արքայից արքայի՝ խնդալ։

Գիտեմ՝ զի լուեալ է քո վասն Յիսուսի Քրիստոսի որդւոյն Աստուծոյ. զոր խաչեցին Հրեայքն. որ յարեաւ ի մեռելոց, և առաքէ զաշակերտսն իւր ընդ ամենայն տիեզերս, քարոզել և ուսուցանել զԲանն կենաց։ Որ և մի յաշակերտաց նորա գլխաւորաց մի ոմն անուն Սիմօն. որ եկեալ ի կողմանս քոյոյ աշխարհիդ. արդ խնդիր արարեալ գտցես զնա. և նա բժշկեսցէ զամենայն ախտս հիւանդութեանց՝ որ ի ձեզ, և ճանապարհ կենաց ցուցցէ. և հաւատայցես բանի նորա՝ դու (և) եղբարք քո՝ և ամենայն որ հնազանդին քեզ կամաւոր. զի ախորժելի է ինձ զձեզ ըստ մարմնոյ ազգականս իմ՝ լինել և ինձ մտերիմ ձեզ հարազատ և ըստ հոգւոյ հաւասար միմեանց. ողջ լեր

Իսկ այսպէս երանելի Թագաւորն Աբգար ի ձեռն հրովարտակացն քարոզ լինէր Քրիստոսի յարևելս և յարևմուտս, առ կայսր և առ արքայն. և մինչդեռ պատասխանի չէր ընկալեալ այսմ թղթոյ, վախճանի՝ թագաւորեալ ամս երեսուն։

### Կայսերք։

Թագաւորէ Գայիոս երկրորդ, որ է ի թուոյ չորս թագաւորացն Յունաց, ամս երեք և ամիսս չորս։ Ի սորա յառաջնում ամի Մարկոս Աւետարանիչն յԱղէքսանդրիա և յԵգիպտոս քարոզեաց զԱւետարանն. և եկեաց ամս քսան և երկու. և

մարտիրոսացաւ ի Բոկողոսորիսաց։ Եւ յետ նորա նստաւ Աղէքսանդր Ա Եպիսկոպոս Անտիանոս . . . ամս քսան։

Կղօդէոս Թագաւորէ, որ է հինգերորդ ի կարգի կայսերացն Հռովմայեցւոց, ամս տասն և երեք և ամիսս ինն։ Նա սովաւ եղև սովն համաշխարհական. և ընդ նոյն ժամանակս եղբայր Երբեղոսի սպան զՅակովբոս զեղբայրն Յօհաննու՝ սրով, այն որ յառաջագոյն գլխատեաց զՅովհաննէս Մկրտիչ։ Եւ ի նոյն ժամանակս Պետրոս առաքեալ զԱնտիոքացւոց զեկեղեցին հաստատեաց. և գնացեալ ի Հռովմ՝ քարոզեաց զաւետարանն. և կացեալ անդ առաջնորդ եկեղեցւոյն ամս քսան։ Ընդ այն ժամանակս եկեալ յԵրուսաղէմ Պատրոնիկէ՝ կին Կղօդիայ կայսեր, կին բարեպաշտօն և երկիւղած ի Տեառնէ, և առեալ ի Հրէից իշխանութեամբն իւրով զխաչն տէրունական՝ աւանդեաց Յակովբու եղբօր Տեառն. և ինքն ընկալեալ զբժշկութիւն դստերն նորա՝ դարձաւ ի Հռոմ ուրախութեամբ։

## ԳԼՈՒԽ Խ

Վասն Բաժանելոյ որդւոյն Աբգարու և Սանատրկոյ ի միում ժամանակի։ Եւ յաղագս առաքելոյն Քրիստոսի Թադէոսի և Բարդուղիմէոսի։

Յետ մահուանն Աբգարու բաժանեցաւ թագաւորութիւն Հայոց յերկուս մասն. զի զմի մասն կալաւ Անանուն՝ որդին Աբգարու, և թագ կապեալ թագաւորեաց յԵդեսիայ. իսկ միւս մասինն թագաւորէ Սանատրուկ՝ քեռորդին Աբգարու։ Յայնմ ժամանակի հաւատաց Սանատրուկ ի քարոզութենէ առաքելոյն Թադէոսի ի Շաւարշան քաղաքի. զի նախ Աբգար հաւատաց, և ապա Սանատրուկ իւրայօքն. և դարձեալ թողեալ՝ ասեն.

Սանատրկոյ զհաւատն յերկեղէ նախարարացն։ Սա սպան
զսուրբ առաքեալն Թադէոս և զդուստր իւր Սանդուխտ, և
զայլս յարանց և ի կանանց. որոց անուանք՝ Զեմէնդոս, և Զա-
քարէ, և Զարմանդուխտ, և այլք բազումք՝ որք հաւատացին
յաստուած և մարտիրոսացան։ Իսկ ի կատարման առաքելոյն
Թադէի պատառումն եղև վիմին, որպէս ասէ պատմութիւնն, և
ընկալաւ զմարմինն սուրբ, և դարձեալ յիրեարս գալ ասի։ Եւ
ապա յայտնեալ նշխարացն երկոցունց՝ առաքելոյն և Սանդխ-
տոյ։ Նոյնպէս և վասն կատարմանն Ադդէի՝ որ եղև յորդւոյն
Աբգարու՝ ասի բան. զի զկնի մահուան հօր իւրոյ դարձաւ ի կռ-
ապաշտութիւն. և խնդրեաց խոյր յԱդդէէ. զոր ապա պա-
տասխանի առնէ նմա Ադդէ. ո՛չ արասցեն՝ ասէ՝ ձեռք իմ խոյր
անարժան գլխոյ քո, որ ո՛չ երկրպագէ Քրիստոսի Աստուծոյ. և
ընդ այնմ բանի հրամայեաց կտրել զոտս նորա։ Եւ ի կատարել
անարժան հրամանին՝ աւանդեաց զհոգին։ Եւ վիճակեցաւ Հա-
յոց Բարդուղիմէոս Առաքեալ. որ և նա կատարեցաւ յԱրեւբա-
նոս քաղաքի։ Իսկ զՍիմէոնէ՝ որ Պարսիցն վիճակեցաւ, զորմէ
գրեաց Աբգար առ Արտաշէս Պարսից արքայն, անգիտացուցա-
նէ զնմանէ պատմագիրն զհաւատոյն՝ եթէ զի՛նչ գործեաց, այլ
միայն կատարել ասէ ի Վերիոսփորայ։ Եւ զայսոսիկ մեր կարճ
ի կարճոյ առեալ պատմեցաք քեզ համառօտիւ՝ ուսումնա-
սէ՛ր դու։ Իսկ Սանատրուկ ի թագաւորելն իւրում զօրաժողով
լինէր ի վերայ որդւոյն Աբգարու, զի բոլորովին ինքն տիրեսցէ
Հայոց։ Որ ապա Աստուած պատերազմեցաւ ընդ որդւոյն Աբ-
գարու՝ խնդրելով վրէժս Ադդէի։ Քանզի տայր կանգնել սիւն
յապարանս իւր և ինքն իմօտ կալով հրամայէ զորպէսն. և զեր-
ծեալ յունողացն անկաւ ի վերայ նորա, և խորտակեալ զոտս
նորա՝ սատակեցաւ։ Եւ եբարձ Սանատրուկ ի տանէն Աբգարու
զամենայն զոյլմ նորա։ Իսկ զլուխ կանանցն Աբգարու՝ Հեղինէ

անուն՝ չոքաւ յԵրուսաղէմ յաւուրս Կղօդիոս կայսեր, և տուեալ զամենայն գանձս իւր յԵգիպտոս՝ գնեաց ցորեան բազում, և բաշխեաց կարօտելոց. և էր կին բարեպաշտօն և երկիւղած յԱստուծոյ իբրև զայր իւր Աբգար: Իսկ Սանատրկոյ ոչինչ կան գործք արժանի յիշատակի, բայց միայն շինելոյ զքաղաքն Մըծբին: Սա թագաւորեալ յերկոտասաներորդի ամի Արտաշիսի Պարսից արքայի, և խոցեալ նետիւ յորս՝ մեռանի՝ թագաւորեալ ամս Լ:

## Կայսերք:

Ներոն թագաւորէ, որ է վեցերորդ ի թուոյ կայսերացն Հռոմոց, ամս տասն և երեք և ամիսս ինն: Ի սորա եւթներորդի ամի Յակոբոս եղբայր Տեառն քարկոծեցաւ ի Հրէիցն վասն (քարոզելոյ) զՅիսուսէ գոլ որդի Աստուծոյ: Եւ յետ նորա եկաց յԵրուսաղէմ եպիսկոպոս Շմաւոն: Եւ յերեքտասաներորդի ամի սպան Ներոն զՊետրոս և զՊօղոս ի Հռոմ. և յետ սակաւ աւուրց յարուցեալ քաղաքն ի վերայ նորա, և նա փախուցեալ՝ ամբարիշտն ընկալեալ պատուհաս ի Տեառնէ՝ կենդանւոյն թաղեցաւ:

Թագաւորէ Վեսպիանոս ամս տասն, որ է եւթներորդ ի կարգի Կայսերաց Հռոմայեցւոց: Ի սորա եւթներորդ ամի Տիտոս Նորփէ Նորփէ(՞) պաշարեաց զԵրուսաղէմ, և առ զնա ի տօնի Զատկին: Եւ բրեաց զքաղաքն ի հիմանց, և բիւր արանց կոտորեաց. պատմէ և զայս Յովսէպոս, թէ՝ սովու և սրով հարիւր և քսան բիւրս կոտորեաց. և այլ ևս յիսուն բիւրս գերեաց, և վաճառակուր արար յօտար ազգս. և որ այլ ևս պատմի:

## ԳԼՈՒԽ ԽԸ

### Յաղագս Երուանդայ

Թագաւորէ Երուանդ զկնի մահուանն Սանատրկոյ՝ յեւթներորդի ամի Դարեհի վերջնոյ Պարսից արքայի, որ է եւթներորդ ի թուոյ թագաւորացն Հայոց։ Սա ծնեալ է ի կնոջէ միոյ Արշակունւոյ, որ էր խորշարագեղ, և խրթնի և խարստի։ Սա ծնանի զԵրուանդ յանկարգ իմն խառնակութենէ՝ ասէ պատմագիրն. և թագաւորէ Հայոց Երուանդ, և կոտորէ զամենայն որդիսն Սանատրկոյ, որպէս նա զորդիսն Աբգարու, իբրև թէ ի Տեառնէ լինել այնմ, բայց միայն ի տղայոյ միոյ Արտաշէս անուն. զոր առեալ Սմբատայ որդւոյ Բիւրատայ Բագրատունւոյ՝ դիմէ ի դուռն Դարեհի Պարսից արքայի, և ընկալեալ լինի ի նմանէ մեծաւ պատուով։ Եւ կացեալ անդ ամս ինչ մինչև զարգացաւ մանուկն Արտաշէս, ապա օգնականութեամբ Դարեհի ածէ ի Հայս. և մտեալ ի տուն Երուանդայ քաջին Սմբատայ՝ սպանանէ զԵրուանդ. և առեալ զթագ նորա՝ դնէ ի գլուխ Արտաշէսի, և թագաւորեցուցանէ զնա։ Եւ թիկունս արարեալ իւր Երուանդայ զՎեսպիանոս և զՏիտոս զկայսերս Հռոմայեցւոց, թողու ի նոսա զՄիջագետս։ Եւ յայնմհետէ բարձաւ ի Միջագետաց իշխանութիւնն Հայոց։ Իսկ Երուանդայ գործ ինչ քաջութեան ոչ պատմի, բայց միայն յամրոցէն(զոր)շինեաց յԵրասխայ*), որ այժմ կոչի յիւր անուն՝ Երուանդաքար, և դաստակերտին՝ Երուանդակերտ։ Բայց ասացից ինչ և ծաղրականս յաղագս Երուանդայ. զոր ասեն առասպելաբանելով ի կարգի զրուցաց, եթէ չար ունելով զաչս իւր՝ ոչ ոք իշխէր մտանել առ նա ի լուսանալ աւուրն՝ եթէ ոչ նախ սպասա-

---

(*) Այսինքն յեզր Երասխայ։

ւորք նորա ընդ յայգանալն՝ առեալ վէմ արձանաքարի՝ ունելով ընդ դէմ նորա, զոր ի հայելն Երուանդայ՝ պայթէր արձանաքար վէմն. ապա թէ ոչ այն լինէր՝ վնասէր զոր կամէր. և այսպիսի զօրութիւն դիւական առ ինքն ունելով՝ վախճանի՝ կալեալ զթագաւորութիւնն ամս քսան։

Կայսերք։

Թագաւորէ Տիտոս ամս երկուս, որ է ութերորդ ի թուոյ թագաւորացն Յունաց։ Առ սո(վաւ) Բեսփոս լեառն պատառեցաւ, և հուր հնչեաց, և զգաւառս և զքաղաքս այրեաց։ Դոմետիանոս, որ է իններորդ ի կարգի կայսերաց. սա թագաւորէ ի Հռոմ ամս տասն։ Ի սորա չորրորդում ամի տուաւ Յովհաննէսի Պատմոս կղզի վասն Բանին Աստուծոյ։ Առ նովաւ էին բազում հերձուածողք՝ Մենանդրոս և Մանի, որք էին աշակերտք Սիմոնի կախարդի, և Աբիոն, և Կերինթոս, և Նիկողիտոք. զորս նզովեն Կաթուղիկէ Առաքելական եկեղեցիք։

## ԳԼՈՒԽ ԽԲ

### Վասն Թագաւորելոյ Արտաշէսի Հայոց։

Թագաւորէ Արտաշէս՝ որդի Սանատրկոյ՝ յետ մահուան Երուանդայ. որ է իններորդ ի կարգի թագաւորացն Հայոց՝ յազգէ Արշակունեաց։ Թագաւորէ և տայ պարգևս զօրացն Պարսից և Մարաց, որք եկեալ էին յօգնականութիւն նմա՝ հրամանաւ Դարեհի Պարսից արքայի. արձակէ զնոսա յաշխարհն իւրեանց։ Տայ և իւրոց նախարարացն բարձ և պատիւ. յառաջ՝ քաջին Արգամայ տայ զերկրորդականն գահ և զսակ յականց կապեալ՝ և գինդս ոսկի յերկոսին յականջսն, և կար-

միր զգեստ միոյ ոտինն, և դրգալ ոսկի և պատառաքաղ։ Տայ և դայեկին իւրոյ Սմբատայ պատիւ ըղթագակապ ասպետութիւնն և զիշխանութիւնն ամենայն զօրացն Հայոց. և հրամայէ մանր մարգարտով փարնակալ ունել ի գլուխ՝ և շրջել ի տան թագաւորին։ Առաքէ և Դարեհի բազում ընծայս և պատարագս իբրև հօր և երախտաւորի։ Զայնու ժամանակս լինի պատերազմ Արտաշիսի ընդ արքային Ալանաց. և հնազանդեցուցեալ զնա, առնու իւր կին զՍաթենիկ դուստր արքային. և դառնայ և շինէ զքաղաքն, և անուանէ յիւր անուն՝ Արտաշատ. և որ այլ ևս գործք ի նմանէ պատմի ի Մովսիսէ ընդ այն ժամանակս՝ որ եկեալ էին ընդ Սաթենկայ՝ սուրբն Սուքիաս և իւրքն. իբրև լուան զԲան կենաց ի սրբոց Ոսկեանցն, որք էին լեալ աշակերտք սուրբ առաքելոյն Թադէոսի, և ի նմանէ մկրտեալ և ուսեալ զԲանն կենացն, և զնոյն ուսուցեալ սոցա առաջի թագաւորին և Սաթենկայ. և հաւատացեալ մկրտեցան ի նոցանէ, և երթեալ ի լեառն Սուկաւէթ, բնակեցան անդ ամս քառասուն և չորս։ Նա կատարեցան ի նոյն լերինն (ի) Բառահլայէ բռնաւորէ եկեալ յԱլանաց։ Նա էին սուրբ Ոսկեանքն բընակեալ ի սուրբ լերինն՝ որ կոչի Ծաղկէոտն։ Իսկ ապա մերս Արտաշէս թագաւորեցուցանէ զհամանուն իւր զԱրտաշէս ի վերայ Պարսից. և ինքն մեռանի՝ թագաւորեալ ամս քառասուն և մին։

Կայսերք։

Թագաւորէ Ներուաս ամս.. որ է տասներորդ ի թուոյ թագաւորացն Յունաց։ Տրայիանոս ամբարիշտ թագաւորէ,(որ էր) մետասաներորդ ի կարգի Կայսերաց, կեցեալ ամս տասն և ինն։ Սա սպան զերանելին Իգնատիոս և զայլս բազումս ի հաւատացելոց։ Թագաւորէ Ադրիանոս ամս քսան և մին, որ երկոտա-

սաներորդ ի Թուոյ Թագաւորացն Յունաց։ Սա եկն ի գաւառն Աթենացւոց, և հարցանէր վասն Սեկնոտոսի փիլիսոփայի Աթենացւոյ, որ՚ զինքն նուաճեալ էր ի վարս ժուժկալութեան՝ զՊեթագորէ նախանձն առեալ. և զամենայն ժամանակս կենաց իւրոց ի լռութեան զինքն նուաճեաց։ Իսկ առաքեաց գոչեաց զնա կայսրն Անդրիանէ. և բազում բան խօսեցեալ ընդ նա պէսպէս հնարիւք՝ ոչ կարաց բանս ինչ լսել ի նմանէ, բայց միայն ի ձեռն գրոյ բանս ինչ առակաց։ Թագաւորէ Անտոնինոս բարեպաշտ՝ որ է երեքտասաներորդ ի կարգի կայսերացն Հռոմայեցւոց։ Սա բազում բարեպաշտութեամբ կեցեալ՝ մեռանի Թագաւորեալ ամս քսան և երկու։

## ԳԼՈՒԽ ԽԳ

Թագաւորելն Արտաւազդայ և Տիրանին զարմանալի ինչ ժամանակն։

Այլ Թէպէտև զկնի այսորիկ՝ իմոյ բանիցս պատմի յաղագս Արտաւազդայ այլազգաբար իմն և այլաբանաբար, այլ ես ասեմ, Թէև ի Հեթանոսս և յանհաւատսն լինի Աստուծոյ խնայելն և անխնայելն. զի զայսպիսի սքանչելիս ներեաց տալ նմա, և անսայ տալ նմանեաց նորա՝ զի՞նչ զի և ի խաղս՝ և յերգս՝ և յառասպելս՝ և ի զրոյցս և ի վիպասանութիւն մարդկան, զհետ երթայ ամօք և ժամանակօք ի զարմացումն ածել զլսօղս՝ Թէ զի՞նչ ի Թագաւորելն իւրում Արտաւազդ եղև. այլ մեք ո՛չ եԹէ ի պէտըս ումեք ինչ գրեցաք, Թէպէտ և այլոցն գրեալ էին յիւրեանցն պատմութեան, այլ սակս զարմացման լսօղաց և մեք գրեցաք ի մերումս։ Արդ Թագաւորէ Արդաւազդ՝ որդի Արտաշիսի՝ որ է տասներորդ ի կարգի Թագաւորացն Հայոց։ Սա յետ Թագաւորելոյն իւրոյ անցեալ զկարմիջօքն Արտաշատ քաղաքի որ-

սալ կինձս և իշավայրիս, և աղմկեալ ի ցնորից իմն խելագար անսաց ընդ վայր ածելով երիվարաւ անկանի ի խոր իմն տեղի մեծ և խորասոյզ՝ լեալ անհետի։ Ի սմանէ երգիչքն Գողթան առասպելաբանեն այսպէս, եթէ ի մահուանն Արտաշիսի բազում կոտորուածք լինէին ըստ օրինի Հեթանոսաց։ Դժուարի՝ ասեն՝ Արտաւազդ ասելով ցհայրն, մինչ դու գնացեր, և զերկիրս ամենայն ընդ քեզ տարար, ես աւերակացս ո՞ւմ թագաւորեմ։ Վասնորոյ անիծեալ զնա Արտաշիսի՝ ասաց այսպէս. եթէ դու յորս հեծցիս յազատ ի վեր ի Մասիս, զքեզ կալցեն քաջք, տարցեն յազատ ի վեր ի Մասիս. անդ կացցես՝ և զլոյս մի տեսցես։ Զրուցեն և զսմանէ պառաւունք՝ եթէ արգելեալ կայ յայրի միում կապեալ երկաթի շղթայիւք. հանապազ կըրծելով զշղթայսն՝ ջանայ ելանել և առնել վախճան աշխարհի։ Այլ ի ձայնէ կռանահարկութեան դարբնաց՝ ասեն՝ զօրանան կապանքն։ Վասնորոյ և առ մերով իսկ ժամանակաւ՝ բազումք ի դարբնաց զհետ երթալով առասպելին՝ յաւուր միաշաբաթուոջ երիս կամ չորս բաղխեն զսալն, զի զօրասցին՝ ասեն՝ շղթայքն Արտաւազդայ։ Բայց է ճշմարտութեամբ այսպէս՝ որպէս վերագոյն ասաց(աք)։ Այլ ոմանք, ասեն, և ի ծնանելն զնա դիպեալ պատահարաց իմն՝ զոր համարեցան կախարդել զնա կանանցն զարմիցն Աժդահակայ. վասնորոյ բազումս զնոսա չարչարեաց Արտաշէս. և զայս նոյն երգիչքն յառասպելսն երգեն այսպէս. եթէ վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ, և դև փոխանակ նմա եդին։ Բայց ինձ արդարացեալ թուի լուրն. այն՝ եթէ ի ծննդենէ և եթէ մոլորութեամբ լեալ՝ մինչ նովիմբ և վախճանեցաւ, թողեալ զթագաւորութիւնն Տիրանայ եղբօր իւրում։

## Կայսերք:

Մարկոս Անտոնինոս, որ է ի թուոյ թագաւորացն Յունաց չորեքտասաներորդ: Սա թագաւորեաց ամս տասն և ինն և ամիս մի: Սա ել(ի) պատերազմ ի Կուադս և ընդ Գերմանիկս և ընդ Սարմատս. և առ ի չգոյէ ջրոյ՝ նեղեցան զօրքն ի ծարաւոյ. և գունդ մի ի զօրացն քրիստոնեայք՝ որք էին ի Մեղիտինեայ, յաղօթս կացին առ Աստուած, և ծունր կրկնեալ ի վերայ երկրի, և մինչդեռ թշնամիքն զարմացեալ էին, եղև յանկարծակի շարժումն մեծ, և կայծակունք տեղացին ի վերայ թշնամեացն՝ և սատակեցան. և ջուրք անձրևացն ընդարձակեցան, և արբին զօրքն: Ի սորա ժամանակս եղեն բազում հերձուածողք հակառակ Աստուծոյ պատուիրանացն, զոր նզովեն կաթուղիկէ եկեղեցիք:

Թագաւորէ Կոմիդոս ամս տասն . . . որ է ի կարգի կայսերացն Հռոմայեցւոց հինգետասաներորդ: Ի սորա ժամանակս էին հերձուածողք՝ Թէոդոտոն՝ և Ապեղէս՝ և Փրիւգացիք և այլ բազումք՝ զոր նզովէ եկեղեցիք ուղղափառաց:

Թագաւորէ Իուլիոս ամ մի. որ էր ի թուոյ թագաւորացն Յունաց վեցտասաներորդ: Առ սովաւ եղև սաստիկ հրայրեացք, և պաղատն և տուն կուսանացն այրեցաւ ի Հռոմ:



## ԳԼՈՒԽ ԽԳ

### Յաղագս Տիրանայ*)։

Թագաւորէ Հայոց Տիրան որդի Արտաշիսի. .**) յերեք ամի Պերոզի, որ է մետասաներորդ ի թագաւորացն Հայոց։ Սորա գործ ինչ պատերազմի կամ քաջութեան ոչ պատմի, այլ միայն մտերմութեամբ կեցեալ ընդ Հռոմայեցիս՝ եկաց խաղաղութեամբ՝ զքօսանաց և որսոց պարապեալ։ Ի յանդարտութիւն վարեաց զթագաւորութիւն իւր։ Նա ի ճանապարհի ուրեմն ձեան հիւսոյ կալեալ մեռաւ՝ կեցեալ ամս քսան և մին։

### Կայսերք։

Սեւերիոս ամբարիշտ, որ էր ի կարգի կայսերացն Հռոմայեցւոց տասն և եւթներորդ, թագաւորեաց ամս տասն և հինգ։ Սա յարոյց սաստիկ հալածանս ի վերայ եկեղեցեաց, յորում բազումք վկայեցին ի Քրիստոս. որ էր մի ի նոցանէ Լեոնիդէս հայր Որոգինի։ Նա ի սորա աւուրս թարգմանութիւնն որ յԵրիքով գտաւ ի կարաս թագուցեալ. և ի սորին աւուրս էին բազումք ի մտահաճ մարդկանէ, որք կամեցան ուղղութիւնս ինչ առնել յԱստուածաշունչ գիրս. զորս խափանեաց զխորհուրդս նոցա Հոգին սուրբ։

---

(*) Ի բնագրին գրեթէ եղծեալ էր խորագիրս այս, որ կարմրադեղով գրեալ։

(**) Ի բնագրին իսպառ եղծեալ քերեալ էր աստ տող մի, որ հազիւ նշմարի կարմրադեղով գոլ գրեալ։ Ըստ այսմ են և ի տեղիս տեղիս բառք ինչ և տողք է՛ որ կարմրագոյն, է՛ զի ծիրանեգոյն և է՛ զի սևագոյն մելանովք գրեալ են, և որպիսի և իցէ պատահմամբք (թողումք ասել զհնութիւն ձեռագրին) քերեալք կամ եղծեալք են, նշանակեցաք կէտադրութեամբք։

Թագաւորէ Անտոնինոս երկրորդ, որ և Սեւերիոս, ամս եւթն. որ է ի թուոյ թագաւորացն Յունաց տասնևութերորդ։ Առ սովաւ Նարկիսոս Եպիսկոպոս յԵրուսաղէմ, այր սքանչելի և նշանագործ. զի էր երբեմն հսկումն մեծի տօնի Զատկաց. և ի պակասել ձիթոյ ճրագացն, երանելին Նարկիսոս հրամայեաց սպասաւորացն բերել ջուր. և կացեալ յաղօթս ի վերայ ջրոյն՝ հրամայեաց արկանել ի ճրագսն հաստատուն հաւատով. և շրջեցաւ ջուրն ի բնութիւն ձիթոյ։ Զսոյն վկայէ Եւսեբի յԵկեղեցական պատմութեանն։ Եւ եկեաց Նարկիսոս ամս հարիւր տասն և ինն։

## ԳԼՈՒԽ ԽԵ

### Յաղագս Տիգրանայ։

Թագաւորէ Հայոց Տիգրան վերջին՝ եղբայր Տիրանայ՝ ի քսաներորդ և ի չորրորդ ամի Պերոզի Պարսից արքայի. որ է երկոտասաներորդ ի կարգի թագաւորացն Հայոց։ Սորա ոչինչ գործ արութեան ասի ուրեք։ Սա զկնի վաղճանելոյն Տիտոսի ութերորդ թագաւորին Հռոմայեցւոց՝ անցեալ յօգնականութիւն Պերոզի արքայի մինչ ի Հռոմայեցւոց իշխանութիւնն արշաւեաց. և յասպատակելն Պերոզի ընդ յԱսորիս ի կողմանըս Պաղեստինացւոց, և մերն Տիգրան հրամանաւ նորին ի Միջերկրայսն ըմբռնեալ ի կալանս յաղջկանէ միոջէ իշխեցելոյ կողմանցն այնոցիկ՝ ասէ պատմագիրն. որ և Ղուկիանոս անուն Կեսար անցեալ զօրօք բազմօք ի Միջերկրայսն, յետ մեռանելոյն Պերոզի նուաճէ զՀայս, արձակէ զՏիգրան, և տայ նմա զՌոփի կոյս։ Զոր եկեալ ի Հայս, և զլեալըն ի նմանէ պատանիս ազգ սերէ յանուն մօր իւրեանց Ռոփեայ՝ Ռոփսեան։ Եւ ինքն կեցեալ ամս քառասուն և երկուս՝ մեռանի։

Կայսերք։

Թագաւորէ Մարկիանոս ամս քսան, որ էր իննևտասաներորդ ի կարգի կայսերացն Հոռոմայեցւոց։ Առ սովաւ հանդիսիցն տեղիք շուրջ տեսանելեացն այրեցան հրով ի Հոռոմ։ Անտոնինոս երրորդ թագաւորէ ամս չորս. որ է քսաներորդ ի թուի թագաւորացն Յունաց։ Առ սովաւ հին Եմմաւուս նորոգեցաւ, և ի Նիկոպոլիս կոչեցաւ յԱփրիկանոսէ։ Թագաւորէ Աղեքսանդրոս՝ որդի Մամէի, որ է քսաներորդ առաջներորդ ի կարգի կայսերացն Հոռոմայեցւոց, ամս տասն և երեք։ Յաւուրս սորա Հեպերիքոս Բոստորացի դնէ իւր խօսս բազումս վասն Զատկի, և զտասնամեկն կանոնս, և յաղագս վեցօրէ ծննդոցն, և սակս օրհնութիւն օրհնութեանցն, այլև սակաւ ինչ յԵզեկիէլի։ Նա ի սոյն աւուրս էր Որոգինէս յԱղեքսանդր, և ներքինացոյց զինքն։

## ԳԼՈՒԽ ԽԶ

Յաղագս թագաւորելոյն Վաղարշու, և որ ինչ ի նմանէ գործք և պատերազմն ընդ Խազրաց, և մահուան նորին։

Թագաւորէ Հայոց Վաղարշ՝ որդի Տիգրանայ՝ փոխանակ հօր իւրոյ, յերեսներորդի երկրորդի ամի Վաղարշայ Պարսից արքայի. որ է երեքտասաներորդ ի թուոյ թագաւորացն Հայոց։ Սա շինէ աւան մի մեծ ի գաւառին Բասենոյ զտեղի ծննդեան իւրոյ. և պատեաց պարսպաւ զմեծ աւանն՝ որ ի Վարդգեսի՝ որ է ի վերայ Քասաղ գետոյ։ Ի սորա աւուրս միաբանեալ Մուշկանն ի ամբոխն Խազրաց և Բասլաց՝ անդր քան զդուռն Ճորայ՝ թագաւոր ունելով խուժանց զՎնասեփ

ումն, անցեալ զԿուռ գետով այսր. որ և պատահեալ նմա Վաղարշ արքոյին մեծաւ՝ ցիր և ցան արարեալ՝ դիաթաւալ կացուցեալ զամբոխն Խազրաց, և հետամուտ լեալ անցուցանէ ընդ կապանն Ճորայ: Զոր ապա միւսանգամ ճակատ կազմեալ թշնամեացն, որ թէպէտև վանեալ քաջացն Հայոց փախստական առնէին, սակայն Վաղարշ մեռանի ի նոցանէ՝ թագաւորեալ ամս քսան: Եւ առնու զթագաւորութիւնն Խոսրով որդի նորին՝ յերրորդ ամի Արտաւանայ Պարսից արքայի. և նոյնհետայն միաբանեալ զզօրս Հայոց՝ անցանէ ընդ լեառն մեծ՝ վրէժս պահանջելով մահուան հօր իւրոյ. և վանեալ հրով և սրով զաշխարհն զայն՝ առնու պատանդս, և դառնայ. և զիւրոյ տէրութեանն նշանակ արձան հաստատէ Հելլենացի գրով՝ որպէսզի ընդ հնազանդութեամբ լինել Հայոց:

Ապօնէրք:

Մաքսիմիանոս ամբարիշտ և չարափառ, որ է ի թուոյ թագաւորացն Յունաց քսան և երկու, ամս չորս: Սա յարոյց հալածանս ի վերայ եկեղեցեաց. և հրամայեաց կոտորել զբազումս. յորոց մի էր սուրբն Թէոդորոս. որ երանելիս այս ծնեալ է ի գիւղ մի Աքարէ անուն, որ հեռի է ի Վեռիա քաղաքէ վեց մղոնաւ, և է գաւառն այն Արմենեակ՝ որ կոչի Երկրորդ Հայք: Եւ պատմի այս յաւանդութենէ. եթէ սնեալ լինի սա հաստատաջրով ի հօրէ իւրմէ զկնի մահուան մօր իւրոյ. և հասեալ յարբունս՝ մարտիրոսացաւ յամբարշտէն Մաքսիմիանոսէ: Եւ նախ քան զայս դէպ եղև անցանել նմա ընդ Պրասմին Եւսեբեայ կնոջ այրւոյ, որ կոչէր Ահոսա. եկեալ մերձ ի գիւղն, նստի ընդ հովանեաւ(եաւ) ծառոյ միոյ ի միջօրէի ի տօթ ժամու. և կապեալ զերիվարն առ շքովն, և կամէր սակաւ մի հանգչել և գնալ: Ապա եկեալ ի դուրս կինն այն, զորմէ ասացաք, ետես

զսուրբն Թէոդորոս նստեալ՝ և զերիվարն մերձ առ նա. յայնժամ ձայն բարձեալ կնոջն առ սուրբն՝ ասէ, ով հեծեալ, ով հեծեալ, մի՛ նստիր այդր, զի կայ մօտ առ սահմանօքդ այդ վիշապ մի չար և մեծ յոյժ, և վնաս առնէ քեզ և երիվարիդ։ Իսկ ապա ընդ բանից կնոջն գայ վիշապն ահագին շարժմամբ և շառաչմամբ յոյժ. ապա յայնժամ անձապարեալ սրբոյն՝ և հեծեալ յերիվարն վաղվաղակի և առեալ զգայիսոնն ի ձեռն իւր՝ հարկանէ զվիշապն, և շեշտակի ճեղքեալ գայիսոնաւն զգլուխն երևելի չար վիշապին, և մղեալ զնա ի ջուր գետոյն՝ որ մօտ առ նա կայր՝ իբր ահագին գերան, որպէս յայնժամ Փրկիչն զաներևոյթ վիշապին զգլուխն ջախջախեալ ի ջուրսն Յորդանանու. և ապա՝ որպէս ասացաք՝ կատարի մարտիրոսութեամբ ի քաղաքին Ամասիայ։ Եւ բերեալ կնոջ բարեպաշտի ի գիւղն իւր Եւքայիտա զնշխարս սրբոյն, և դնէ ի տապանի մեծաւ պատուով. և է Եւքայիտա մերձ ի քաղաքն Ամասիայ. և կատարեցաւ սուրբ նահատակն ի մարերի ի քսան և ի չորսն՝ ի փառս Աստուծոյ։

Թագաւորէ Գորդիանոս, որ է քսան և երեք ի կարգի կայսերացն Հռոմայեցւոց, ամս վեց։ Սա յաւուրս Զատկի՝ տօնի կամեցաւ առնել աղօթս ընդ ժողովուրդս եկեղեցւոյն. և ոչ հրամայեաց նմա Եպիսկոպոսն Փղաբիանոս մինչև խոստովանեալ. և նա յանձն առնոյր յամենայն մտաց իւրոց։ Սա սովաէր Բերիրելոս Եպիսկոպոս Բոստրայ ի կողմանս Արաբացւոց. սա ժպրհեցաւ ասել վասն Փրկչին մերոյ, թէ ոչ էր սա անձամբ գոյութիւն յառաջ՝ մինչև երևեալ յաշխարհ և մարմնացեալ. և չի՛ք նորա ասէ աստուածութիւն յանձին իւրում, այլ աստուածութիւն Հօր իւրոյ բնակեալ ի նմա. և այլքն ի նոյն կողմանց այլ իմն բանս կատարէին արտաքոյ պատուիրանաց. և աղաչեցին զՈրոգինէս, և նա դարձոյց զնոսա ի ճշմարտութիւն. և կեցեալ նմա ամս վաթսուն։

Թագաւորէ Փիլիպպոս ի Հռոմ ամս եւթն, որ էր քսաներորդ չորրորդ ի կարգի կայսերացն Հռոմայեցւոց։ Ի սորա իսկզբան թագաւորութեանն հազար ամ լցաւ Հռոմայ իսկզբանէ շինութեան քաղաքին։ Սա սովաւ էր թագաւոր ի Հայք մեծն Խոսրով. և բազկակից իւր արարեալ զսա, առնու զօրս բազումս, և դիմէ ի վերայ Արտաշրի որդւոյ Սասանայ Ստահրացւոյ՝ քինախնդիր եղեալ Արտաւանայ ազգականի իւրոյ, հալածական առնէ զԱրտաշիր զարքայն Պարսից մինչև ի սահմանս Հնդկաց. զոր բազում անգամ միջնորդեալ՝ ասեն՝ Հնդկաց արքային, ոչ կարաց առնել հաշտութիւն։

## ԳԼՈՒԽ ԽԷ

### Յաղագս Խոսրովու Թագաւորելոյն։

Թագաւորէ Հայոց Խոսրով մեծ՝ որդի Վաղարշու՝ յերորդ ամի Արտաւանայ Պարսից արքայի, որ էր չորեքտասաներորդ ի կարգի թուոյ թագաւորացն Հայոց։ Զայնու ժամանակաւ վրէժխնդիր լեալ մահուան հօր իւրոյ յարքայէն Խազրաց, և հնազանդեցուցեալ՝ պատանդ առնու և դառնայ։ Յետ այսորիկ ապա հասանէ բօթ առ Խոսրով յաղագս սպանման Արտաւանայ, որ էր վերջին թագաւոր Պարսից ի Պարթևաց. յորմէ բարձաւ թագաւորութիւնն։

# ԳԼՈՒԽ ԽԲ.

## Դարձեալ վասն Խոսրովու։

Ի ժամանակս թագաւորութեանն Խոսրովու արքային Հայոց մեծաց՝ բարձեալ լինի թագաւորութիւնն Պարսից ի Պարթևաց յամս տէրութեանն փիլիպոսի կայսեր Հռոմայեցւոց։ Եւ զսոսա ասեն լեալ յԱբրահամեան զաւակէն՝ որ ի Քետուրայ. զորս ի կենդանութեան իւրում Աբրահամ մեկնեաց յԻսահակայ զծնունդն Քետուրայ զԶմրան և զեղբարս նորա. և արձակեաց յերկիրն արևելից։ Յորոց սերեալ ի նոցանէ ազգ՝ Պարթևք անուանեցան. և սկիզբն առնու թագաւորելոյ նոցա ըստ հաստատելոյ բանին Տեառն՝ որ առ Աբրահամ, եթէ թագաւորք ազգաց ի քէն ելցեն. և թագաւորեն Պարսից և Հայոց։ Արդ թագաւորէ Պարսից Արշակ քաջ. սա ապստամբ եղեալ ի Մակեդոնացւոց թագաւորէ՝ ի քաղաքին՝ որ կոչի Բահ-ղառ, յերկրին Քուշանացւոց։ Յետ վաթսուն ամի մահուանն Աղեքսանդր Մակեդոնացւոյ՝ թագաւորէ ամս երեսուն և մի. և յետ նորա Արտաշէս՝ որդի նորա՝ ամս քսան և վեց. ապա Արշակ՝ որդի Արտաշէսի՝ որ կոչեցաւն մեծ, որ եսպան զԱնտիոք՝ զորդի Սեղևկեայ, և զՎաղարշակ զեղբայր իւր թագաւորեցոյց Հայոց՝ երկրորդ իւր առնելով։ Այս միանգամ ասացեալ եղև իսկզբան մերոյ գործառնութեանս։ Արդ կալեալ Պարթևք զթագաւորութիւնն Պարսից՝ կարգ ըստ կարգի որդի ի հօրէ առնլով՝ ամս ՆԾԵ՝ մինչև բարձաւ թագաւորութիւնն նոցա։

## ԳԼՈՒԽ ԽԹ

### Թիւ Թագաւորացն Պարսից՝ որ է Պարթևաց՝ մինչև ի վախճան։

Արդ անցցո՛ւք ընդ Թիւ Թագաւորացն Պարսից՝ որ է Պարթևաց՝ սկսեալ յԱրշակայ մեծէ մինչև յԱրտաւան, յորմէ բարձաւ Թագաւորութիւնն։ Արշակ մեծ՝ ամս յիսուն և երկու. Արշականն՝ ամս երեսուն և երկու. ապա Արշէզ՝ ամս քսան. և Արշաւիր՝ ամս քառասուն և վեց. յետ որոյ Արտաշէս՝ ամս երեսուն և չորս. ապա Դարեհ՝ ամս երեսուն. յետ սորա Արշակ՝ ամս յիսուն և ութն. և ապա Արտաշէս՝ ամս Ի. Պերոզ՝ ամս երեսուն և չորս. իսկ յետ սորա Վաղարշ՝ ամս յիսուն. ապա հուսկ յետոյ քան զսոսա Արտաւան՝ որդի Վաղարշու՝ ամս երեսուն և վեց. զսա սպանեալ Արտաշրի որդւոյ Սասանայ Ստահրացւոյ՝ եբարձ զԹագաւորութիւնն Պահղաւկաց յերկրորդ ամի Թագաւորութեանն Փիլիպպոսի կայսեր Հռովմայեցւոց։ Աստանօր դադարումն առնու Թագաւորութիւնն Պարսից ի Պարթևաց՝ յազգէ Պահղաւկաց՝ սկսեալ յերեք հարիւր յերեսուն ամէ Փիլիպպոսի Պտղոմեայ, կալեալ ընդ ամենայն ամս չորեքհարիւր յիսուն և հինգ՝ մինչև բարձաւ տէրութիւն նոցա, սկսեալ յԱրշակայ մեծէ մինչև ցԱրտաւան, զոր սպան Արտաշիր՝ որդի Սասանայ Ստահրացւոյ, և ինքն եկեալ միաբանեաց ընդ իւր զզօրս Պարսից. և նոքա խռովեալ մերժեցին յինքեանց զտէրութիւն Պարսից, և հաճեալ հաւանեցան Ստահրացւոյն։ Իսկ իբրև եհաս բոթ մահուանն Արտաւանայ առ Խոսրով մեր Թագաւորն, ի մեծի տրտմութեան եղեալ վասն նորա, քանզի ազգական նորա էր, և խորհէր տեսանել զելս իրացն. այլ Թէպէտև վաղուրեմն լուաւ զզոյժ մահուանն Արտաւանայ, ոչ կարաց դադար առնուլ յայլ հոգոց և ի պատերազմացն յայն ամ։

# ԳԼՈՒԽ Ն

## Արշաւանք Խոսրովու ի (վերայ) Պարսից, և քինախնդիր լինել մահուանն Արտաւանայ։

Իսկ ի գալ տարւոյն՝ յետ սպանանելոյն զԱրտաւանն և թագաւորելոյն Արտաշրի՝ որդւոյ Սասանայ՝ սկսաւ զօրաժողով լինել Խոսրով արքայն Հայոց. և ժողովեաց զզօրս Աղուանից, և զՎրաց, և զԼփնաց, և զՃ՚ղբաց, և զԿասբից, և զզօրս Հոնաց հանեալ մեծաւ ուժով, և զայլ ևս բազում զօրս յայլոց ազգաց, և ազդ առնէր Փիլիպպոսի կայսեր Հոռոմայեցւոց, զի և նա օգնեսցէ նմա զօրս տալով։ Իսկ նա փոյթ ընդ փոյթ տայ նմա զօրս յԵգիպտոսէ և յանապատէն մինչև ի ծովեզերն Պոնտոսի։ Ապա այնուհետև խաղայ գնայ այնքան բազմութեամբ և զօրօք ի վերայ Արտաշրի. և ճակատ տուեալ՝ փախստական առնէ զնա, և զօրս նորա հարեալ իսպառ, և անչափ կոտորածովք վանեալ առհասարակ զամենեսեան, և թափեալ ի նմանէ զԱսորեստան և զայլ արքայանիստ աշխարհն Պարսից, և դառնայ մեծաւ յաղթութեամբ յաշխարհ իւր։

### Կայսերք։

Դեկոս չարափառ և անօրէն թագաւորէ ամ մի, և էր ի կարգի կայսերացն Հոռոմայեցւոց՝ քսաներորդ հինգերորդ։ Սա յարոյց հալածանս ի վերայ եկեղեցեաց, և եղեն վկայք Եպիսկոպոսք ի Հռոմ՝ Փլաբիանոս, յԱնտիոք՝ Բաբեղաս, յԵրուսաղէմ՝ Աղէքսանդրոս. նաև Որոգինէս չարչարանս կրեաց, ի կատարումն մարտիրոսութեան ոչ եհաս։ Սա բազում գրեանս խօսեցաւ, և էր ի նոսա բանք՝ որ ոչ էր ընդունելի, այլ հակառակ ճշմարտութեան. և կեցեալ ամս վաթսուն և ինն՝ մեռանի

ի Կիպրոս։ Եւ ի նոյն ժամանակս ննջեցին եւթն մանկունքն՝ որ յԵփեսոս՝ յԱքղոս լերին յայրին. եւ զկնի հարիւր եւ քառասուն ամաց զարթեան առ ի յանդիմանութիւն այնոցիկ՝ որք ոչն հաւատային յարութեան մեռելոց. եւ էին անուանք մանկանցն այսոքիկ, Մաքսիմիանոս, Մարտիանոս, Դոնիսխանոս, Յոհաննէս, Անտոնինոս, Ամղիքոս . . . ։

Գաղոս եւ Վաղենտիանոս՝ որք էին ի կարգի կայսերացն քսան եւ վեցերորդ, ամս երկուս եւ ամիս եւթն։ Առ սոցիւ Նաւատիոս երէց Հռոմայեցւոց եկեղեցւոյն եղեւ առաջնորդ աղանդոյն Կաթարոսաց, այսինքն՝ որք սուրբք կոչէին զանձինս իւրեանց, եւ զապաշխարութիւն ոչ ընդունէին. զի Նաւատիոս ասէր, որ ոք յետ մկրտութեանն սղալէ՝ առանց բժշկութեան մնայ այնպիսին. վասնայնորիկ աստուածաբանն այպանէ զնա հեգնական բանիւք, եւ ասէ, Նաւատեայ մարդատեցութիւնն՝ որ զմեղուցեալս դառնութեամբ դատապարտէր իբրեւ զանմիս եւ զանմարմին, եւ դարձեալ, եթէ ոչ ընդունէր զայնոսիկ՝ որ ի հալածանս գլորէին. զոր ապա ժողովեցան բազում Եպիսկոպոսք եւ Քահանայք եւ Սարկաւագունք, եւ նզովեալ մերժեցին զնա եւ զհաւանեալսն նորա. եւ էին Եպիսկոպոսք՝ Ստեփաննոս ի Հռոմայ, Դիոնէսիոս յԱղէկսանդրէ, Փղարիանոս յԱնտիոքայ, որ զկնի Նաւատեայ մոլորեցաւ. իսկ Դիոնէսիոս Աղէկսանդրացի հաստատեաց զնա ի հաւատս։



## ԳԼՈՒԽ ՂԸ

Գործեալ յարձակումն երկրորդ անգամ Խոսրովու ի վերայ Արտաշրի՝ առանց ուրուք օգնականութեան։

Յետ մահուանն Փիլիպպոս կայսեր Հռոմայեցւոց թագաւորէ Դեկոս. և Վաղերիանոս և Գաղիոս կայսերք Հռոմայեցւոց ոչ օգնեցին Խոսրովու մերոյ արքային սակս շփոթութեանց իւրեանց ընդ միմեանս։ Սակայն նա զօրօքն իւրօք ի գնալն իւրում յաղթեաց դարձեալ Արտաշրի, և հալածական արար զնա մինչև յաշխարհն Հնդկաց և Ճենաց. և ինքն զկողմանս Պարսից և զսահմանս Ասորոց մինչև ի դրունս Տիզբոնի՝ զքաղաքս և զգիւղս և զագարակս միանգամայն իսկ և զամենայն երկիրն ի սուր սուսերի մաշեալ՝ առնելով առ և աւար և գերի՝ դառնայ խաղաղութեամբ և մեծաւ յաղթութեամբ յաշխարհն իւր, և տուեալ բազում պարգևս զօրաց իւրոց։

## ԳԼՈՒԽ ՂԹ

Խօսք և խոստմունք Արտաշրի Պարսից արքայի առ զօրս իւր։

Յետ այսքան աւերման և հալածանաց կոչէ Արտաշիր առ ինքն զամենայն նախարարս իւր և զգլխաւորս, և խօսի ընդ նոսա վասն ամենայն իրացն եղելոց. և խոստանայ բազում պարգևս տալ՝ թէ ոք զերծուսցէ զնա ի հալածանացն Խոսրովու՝ կամ հնարիւք դեղոց և կամ դաղտնի խողխողմամբ սրոյ։ Իսկ Անակ՝ որ էր մի ի գլխաւորաց նախարարացն՝ անցեալ ի մէջ՝ խոստանայ առնել զկամս արքային։ Նա ելեալ հանդերձ կնաւ իւրով և ընտանեօք հատուածի պատճառանօք և կեղծաւորութեամբ։ Գայ հասանէ ի սահմանս Ատրպատականի ընդ մէջ Կորդուաց,

և դադարէ ի գաւառն Ակատազու։ Զոր՝ ապա լուեալ Խոսրովու՝ ուրախ եղև. և առաքէ ընդ առաջ նորա զօրս։ Եւ երթեալ հանդիպի նմա առ հանգստարանի սրբոյ առաքելոյն Թադէոսի. զոր անդ՝ ասէ պատմագիրն՝ զյղութիւն մօր սրբոյն Գրիգորի, նաև զառաքելութեան ընկալեալ զշնորհս, և ի կեանս իւր կրեալ զպակասութիւն չարչարանացն նորա՝ որպէս ուսուցանէ քեզ պատմագիրն։

## ԳԼՈՒԽ ԾԳ

### Գալն Անակայ առ Խոսրով յԱյրարատ գաւառէ։

Իսկ ի գալն Անակայ առ Խոսրով՝ խնդաց յոյժ, և ընդ յառաջ ելեալ նմա մեծաւ ուրախութեամբ ընկալաւ զնա։ Իսկ նա զհետ ինչ սակաւ աւուրց սկսաւ դաւով իմն և կեղծաւորութեամբ խօսել ընդ Թագաւորին՝ իբր թէ հաւատարիմ ցուցանել նմա զինքն։ Եւ սակս այնր աղագաւ եկի աստ, զի խորհեսցուք ի միասին և մերոյ ազգականին վրէժ խնդրեսցուք։ Եւ այսու հաւանեցուցեալ զԹագաւորն՝ բազում սէր և պարգևս առեալ էր ի նմանէ։ Այլև յերկրորդական նստուցանէր յաթոռ Թագաւորութեանն իւրոյ զԱնակ։ Եւ էր այս ի ժամանակս ձմերայնոյ։ Իսկ ի յաւուրս գարնայնոյ գայ Թագաւորն յՈւտի գաւառէ յԱյրարատ գաւառ, և խորհեցաւ զօրս ժողովել ի վերայ Արտաշրի ըստ սովորութեանն իւրոյ։ Եւ յիշեալ Անակայ զպայման ուխտ և զխոստումն Պարսից արքային, առեալ զԹագաւորն մեկուսանայր՝ իբր թէ խորհել ինչ վասն ճանապարհին, սպան զԹագաւորն։ Եւ ինքն մեռանի իւրայօքն։

## ԳԼՈՒԽ ՂԴ

Կարգ Թագաւորացն Հայոց և համար նոցին ակնեալ է Վաղարշակայ մինչև ի Խոսրով, զոր սպան Անակ։

Վաղարշակ ամս քսան և երկու։ Յետ նորա և Արշակ կեցեալ ամս քսան և երեք։ Արտաշէս ամս քսան և հինգ։ Տիգրան ամս երեսուն և երեք։ Յետ նորա Արշամ ամս քսան։ Ապա Աբգար ամս երեսուն և ութն։ Իսկ Սանատրուկ ամս երեսուն։ Յետ նորա Երուանդ ամս քսան և մին։ Ապա Արտաշէս ամս քառասուն և մին։ Տիրան ամս քսան և մի։ Իսկ յետ նորա Տիգրան ամս քառասուն և երկու։ Վաղարշ ամս քառասուն։ Իսկ Խոսրով որդի Վաղարշու ամս քսան և ութն. զսա սպանեալ ազգականի իւրոյ Անակայ ձեռամբ, և ինքն ի բայօքն ամենայնիւ. որ ապա զորպիսութիւնն ասացից յետ այսորիկ։ Իսկ յետ մահուանն Խոսրովու կացեալ մնացեալ առանց իշխանութեան տունն Հայոց ամս քսան և եւթն. քանզի նուաճեալ Ստահրացւոյն Արտաշրի զամենայն արիս և անարիս Պարսից աշխարհին, հնազանդեցուցանէ իւր, և խաղաղանայ ի պատերազմէն Հայոց։

## ԳԼՈՒԽ ՂԵ

Յայտարարութիւն որ ինչ գնին մահուանն Խոսրովու

Արդ իբրև կատարեաց զկամս նենգութեանն իւրոյ Անակ ի գլուխ մոլութեանն իւրոյ սուսերահար արարեալ զթագաւորն Խոսրով խաւար արար Հայոց, և խաւարեցաւ ինքն և իւրքն ամենայն՝ ըստ գրեցելումն թէ՝ գուբն զոր փորեաց և պեղեաց՝ ինքն անկցի ի խորխորատն. և դարձեալ թէ՝ որ սուր հանէ՝ սրով անկցի։ Իսկ իբրև լուան նախարարքն զմահ թագաւորին

իւրեանց՝ հետամուտ եղեալ զհետ Սմբատայ, և փակեալ զճանապարհն առաջի և անտի, և անցեալ զկարմիջաւն Մեծամօրի՝ որ ի վերայ Արտաշատ քաղաքի, և հասեալ ի խելս կարմնջին՝ և ի մէջ արգելեալ արգելլին զնոսա։ Իսկ նոքա յանձնարութենէ ճանապարհին իւրեանց՝ ջրահեղձ լեալ սատակէին որպէս փարաւոնն այն ի Կարմիր ծովուն, և կամ խոզքն զԼեգէոնսն ընդ լուծիցն խեղդեալ ի ծովն Գերգեսացւոց. և այնպէս անձամբ անձին դատաստան հատեալ՝ առին վրէժս ուխտապահին։ Գունդք սուր եդեալ ի վերայ անխնայ սատակմամբ կոտորեցին զկանայս նոցա և զմանկունս համօրէն ամենայն ընտանեօք. և այսպէս զմեծ խռովուհու ընկալեալք փոխանակ զոր ընտրեցին առ ին անձամբ զանձինս իւրեանց դատապարտեալ։

Այսուէրք։

Վաղերիանոս և Գաղլիոս, որք էին ի Թուոյ Թագաւորացն Յունաց քսաներորդ, ամս տասն և հինգ։ Սա ի սկզբան Թագաւորութեանն իւրոյ խոստացաւ առնել խաղաղութիւն եկեղեցւոյ. բայց այր մի կախարդ Եգիպտացի շրջեաց զնա յառաջին մտաց անտի իւրոյ, և ի նոյն այլ ամի եպիսկոպոսս Եգիպտացի Դիոնեսէ անուն հերձուածող, որ ասէր յետ հազար ամի հարուցումն լինել մարմնաւոր ի վերայ երկրի, և այլ ինչ բազում աղանդագործութիւն ի ժամանակին յայն գործէին զոհել հարց զորդիս և հերձել զմանկունս։ Ըստ այսորիկ և Պօղոս Սամոսատացի եպիսկոպոս Անտիոքայ, զոր նզովէ կաթուղիկէ տաճարական եկեղեցի։

Թագաւորէ Կղօդիոս ամ մի և ամիս ինն։ Սա էր քսաներորդ ութերորդ ի կարգի կայսերացն Հռոմայեցւոց։ Ըստ սմա Պօղոս Սամոսատացի, զոր վերադոյն նզովեցաք ընդ այլ չարափառսն, սա զատուղղ կանոն որոշեաց, և զԱրտեմոնի հերձուա-

ծրն դարձեալ նորոգեաց. զի զՓրկչէ մերմէ ասէր, թէ մարդ սոսկ էր նա՝ որպէս ամենայն մարդիկ, և բնաւորութիւն Բանին աստուածոյ՝ մարդ լեալ ճշմարտութեամբ. և ժողովէ եպիսկոպոսք ի տեղեաց տեղեաց յԸնտիոք յաղագս նզովելոյ զՊօղոս Սամոստացի. Դիոնէսիոս ի Հռոմայ, Պարմեղիանոս ի Կեսարիոյ, Գրիգորիոս և Աթենագորոս եղբարք եպիսկոպոսք եկեղեցեացն Պոնտացւոց, Հեղիանոս Տարսոնացւոց եկեղեցւոյն, Նիկոմա Նիկոնացւոց քաղաքին, Հիմենոս Երուսաղեմի եկեղեցւոյն, Թէոտեկնոս Կեսարիայ Պաղեստինացւոց, Մաքսիմոս Բոսոր քաղաքի։ Իսկ զԴիոնեսիոս աղաչեալ՝ զի և նա եկեսցէ ի ժողովն, այլ նա ոչ կարացեալ գալ սակս ծերութեան, բայց առաքէ թուղթ յաղագս խնդրոյ նոցա, և նզովեցին զՊօղոս Սամոստացին, և լուծեալ մերժեցին յեկեղեցւոյն։

## ԳԼՈՒԽ ԾԻ.Զ

### Արշաւանք Արտաշրի ի Հայս զկնի մահուանն Խոսրովու։

Արդ իբրև լուաւ Արտաշիր արքայն Պարսից զմահն Խոսրովու, խնդաց յոյժ. և զօրաժողով լեալ արշաւէ ի վերայ աշխարհին Հայոց համարձակաբար. և զզօրս Յունաց՝ և որ ի Փախուցելոյ Պարսից եկեալ էր յօգնականութիւն ի խորհրդոյ նախարարացն Հայոց, զայնս փախստական արարեալ դերեցին զօրով մեան աշխարհին Հայոց, և յաւէր դարձուցին։ Բայց Վաղերիանոսի կայսեր ոչ ժամանեալ ի շփոթմանէ իւրմէ օգնել մերոյ աշխարհիս, այլ և ի մեռոյ վճարէ զկեանս իւր, և առնու զթագաւորութիւնն Կղօդիոս. ապա Աւրելիանոս փոխանորդեալ միմեանց կարճ ի կարճոյ։ Յետոյ թագաւորեալ Կենդոս, և Տակիտոս, և Փողեստիանոս եղբարք ամսականօք աւուրբք։ Եւ

սակս այնորիկ արշաւեալ ի մեզ Արտաշրի համարձակաբար, և զաշխարհս խաղաղացուցանէր յերկիրն Պարսից։ Իսկ ի մեռանելն Խոսրովու՝ ոմն ի մտերմաց նորա Արտաւազդ անուն Մանդակունի՝ առեալ զՏրդատ ապրեցուցանէր ի գերութենէ անտի՝ տղայ գոլով փոքրիկ. և տարեալ ի դուռն կայսեր Տակիտոսի, և անդ սնեալ և ուսեալ առ կոմսի ումեմն Լիկիանէս անուն։ Ապա տեսեալ կայսերն Տակիտոսի զՏրդատ առ ինքն երթեալ և զաւերումն մերոյ աշխարհիս յԱրտաշրէ, հարկաւորեալ այնուհետև՝ ընդ դէմ ելեալ Արտաշրի. պատերազմաւ՝ մեռանի։ Յետ Տակիտոսի Թագաւորէ Յառոբոս. և բաժանեն զաշխարհս ընդ միմեանս Յառոբոս և Արտաշիր սահմանադրութեամբ խաղաղութիւն ընդ միմեանս առնելով։ Եւ զկնի նորա Շապուհ որդի նորին ամ մի մինչև ի Թագաւորելն Տրդատայ. որ լինի յանիշխանութեան կալ աշխարհիս մեր քսան և եւթն ամ։

Կայսերք։

Թագաւորէ Աւրելիանոս անօրէն և ամբարիշտ, որ էր ի թուոյ Թագաւորացն Յունաց քսանևհինգերորդ, ամս եւթն և ամիսս վեց։ Սա սպան զերանելի Հայրապետն Մամաս. զոր յիշէ Աստուածաբանն ի Նուակատեաց ճառին. գովէ ասելով, Մամաս հռչակեալ հովիւ՝ աստ՝ և վկայ, որ յառաջ եղինս կթէր զձեռպեալն այլ քան զայլ, զի օտար կաթամբն կերակրեացի արդարոյն։ Եւ դարձեալ խորհեցաւ հալածանս յարուցանել եկեղեցւոյն. և ի բարկութենէն Աստուծոյ հարեալ սատակեցաւ ի նոր բանտի. զի ընկալաւ նա զհատուցումն ըստ արժանի՝ որոց խորհեցաւ։ Յետ որոյ և Տակիտոս ամիսս վեց. և զկնի սորա Փողեստիանոս աւուրս ութսուն և ութ։ Սոցա ո՛չ գտաւ համար ի կարգի կայսերացն, նա և ո՛չ գործք ինչ սակս սակաւութեանցն ժամանակաց նոցա։

(Պ)րոբոս Թագաւորէ ամս վեց և ամիսս չորս. և է երեսներորդ ի կարգի կայսերացն Հռոմայեցւոց։ Առ սորա մոլեկան Մանիքեցւոց սատանայականն կործանումն ի բազում մարդկան եմուտ. զի երկու աստուածութիւնս զոյգ ասաց մանիքէնութ և խաւար՝ որպէս թէ չար կամ բարի։ Նա մոլեալ կատարեաց դիւական աղանդոյն. զի ասէր, ես եմ որ Մխիթարն ի լերինն երեւեցայ Հոգւով. և դարձեալ, եթէ ես եմ Հոգին բարեխօս. զոր նզովէ զնա Երրորդութիւնն սուրբ։

## ԳԼՈՒԽ ԾԳ:

Յայտարարութիւն յաղագս սրբոյն Գրիգորի՝ թէ ո՞րպէս տարեալ լինէր յերկիրն Յունաց։

Արդ ի զաւալն ընդ միմեանս երկուց Թագաւորացն այնոցիկ՝ արքային Հայոց Խոսրովու և Թագաւորին Պարսից Արտաշրի յաղագս վրէժխնդիր լինելոյ մահուանն Արտաւանայ ազգականին Խոսրովու, և ոչ քան զնա սաստկանայր պատերազմ ի վերայ Պարսից յարքայէն Խոսրովայ. և անողորմ խռովութեամբ քանդեալ ապականէր զերկիրն նոցա և գերութեամբ զամն տանն, որպէս վերագոյն ասացաք։ Նա թէպէտեւ բազում անգամ հրեշտակս առաքէր պայծառ պատարագօք խնդրել զխաղաղութիւն, չեղեւ հնար. նաեւ բազում անգամ միջնորդեալ արքային Յունաց՝ ոչինչ օգնեաց նմա։ Իսկ ապա Անակն այն՝ զորմէ վերագոյն ասացաք, խորհրդով արքային Պարսից գայ հաւանէ առ Խոսրով արքայն Հայոց հաւատուածի պատճառաւ. և զկնի երկուց ամաց սպանանէ զԽոսրով, և ինքն փախստական լեալ ջրահեղձ լինի։ Նա Թագաւորն Պարսից զօր մահուանն Խոսրովու տօն կարգէր ի կեանս իւր. և զխոստացեալ պարգեւն տայ մնացեալ ազգի նո-

լաւ։ Իսկ եկեալ էր ընդ նմա այր մի ի Պարսից Բուրդար անուն, և գնացեալ ի գաւառէն Արտազու ի կողմանս Կապուտակացւոց ի քաղաքն Կեսարու, և առեալ իւր կին ի Հաւատացելոց դըստ-րըն Եփիթաղեայ Սոփի անուն կոչեցեալ. և կացեալ անդ ամ մի, և առեալ զկինն իւր կամեցեալ գնալ ի Պարս. զորոյ զհետ մտեալ Եփթաղեայ հասանէ նմա ի գաւառին Այրարատեան, դադարեցուցանէ զնա ի քաղաքին Արտաշատու։ Արդ իբրև ետես Բուրդար զմահն Խոսրովու և զհրամանն՝ զաբել ի վերայ ազգին Անակայ՝ սպանանել առհասարակ, եմուտ առ կինն Անակայ փախստականի՝ որում անուն էր Ոգուհի, և առեալ ի գըրկոյ նորա զմանուկն Գրիգոր՝ ետ զնա ցկին իւր Սոփի. և նա դարձեալ սնուցանէր զմերն Լուսաւորիչ։ Իսկ զմիւս եղբայրըն նորա, որում անուն կոչէր Սուրէն, առեալ մանկաբարձն տարաւ ի դուռն արքային Պարսից։ Եւ նա տայ նմա զհօրն խոստացեալ պարգևսն՝ որպէս վերադոյնն ասացաք։ Եւ նորա սնեալ առ հօրաքեռն իւրում, որ էր կին որդւոյն Ջաւանշէրի թագաւորին Հեփթաղեաց։ Արդ վասն մանկանս այսորիկ՝ որ էր եղբայր որդւոյն Գրիգորի, Զենոբայ Ասորւոյ ասացեալ ստուգիւ ի պատմութեան անդ իւրում։ Իսկ մանուկն զարգացեալ և հասեալ յարբունս՝ գնաց բազում զօրօք առաջնորդեալ յերկիրն Չենաց և Գուրդանդաց. և դարձեալ իւր պատերաց զնշխանսն. և թագաւորեալ ի վերայ երկուց աշխարհացն՝ միաւորեաց ընդ ինքեան կալեալ զթագաւորութիւնն ամս ինն։ Արդ ամենք յԱսորոց կողմանն հաւաստեն Զգօն մի Յակոբ անուն կոչեցեալ, թէ՝ նա է եղբայր Գրիգորի. բայց չէ ճշմարիտ. զի Յակոբն այն հօրաքեռորդի էր որդւոյն Գրիգորի. և անուն մօր նորա՝ Խոսրովուհի։ Իսկ յորժամ մեռաւ մայր նորա, թագ և զթագաւորութիւնն բարձին ի հօրէ նորա Տիրանայ, զոր տայն արքայն Լփինոսիդէս։ Այս Յակոբ հանդերձ քերբն իւրով Սակդենեա

և Նորին որդւոյն Հրաչէիւ գնաց ի կողմն Գիթաց. և կացեալ անդ ամս ինչ՝ ապա դնեն թագ Հրաչէի. և թագաւորեցու-ցանեն ի վերայ ինքեանց մարդիկ աշխարհին։ Սա էր՝ որ եկն ի վերայ արքային Յունաց, զոր ըմբռնեացն Տրդատ։ Զայսոսիկ տեղեկութիւն տայ հաւատարիմ արանց որք էին ազգակիցք իւր և զաւառակիցք. և այս է, զոր դուք կարի իսկ քաջ գիտէք ի տեղեկութենէ հարցն մեր զրուցատրութեանց։ Դարձեալ և այլ ևս հաւատարմացուցանէ. բայց եթէ ստուգիւ կամիք տեղեկանալ, ասէ, ընթերցջի՛ք զվերջին դրուագն Բարդը-ծանայ Եդեհացւոյ. զոր կարի գեղեցիկ ասէ և զբանն՝ զոր խօսեցան ընդ միմեանս Տրդատ և Հրաչեայ արքայ. և կամ թէ յետոյ զի՛նչ արարին զՀրաչէ՝ ո՛չ գիտեմ ասէ պատմա-գիրն։

Կայսերք։

Թագաւորէ Կարոս որդւովքն Կարինիւ և Նումերիանոսիւ, որոց թիւքն կարգի կայսերացն Հռոմայեցւոց երեսներորդ առաջիններորդ, ամս երկու։ Յաւուրս սոցա Անատոլիոս Աղէք-սանդրացի եկաց Եպիսկոպոս Լաւոդիկեցւոցն, որ փիլիսոփա-յից ուսմամբ պայծառացեալ երևէր. և զթիւ չափոյ և համա-րոյ կարգեաց։

Դիոկղետիանոս կռապաշտ և ամբարիշտ թագաւոր ամս քսան։ Սա էր ի թուոյ թագաւորացն Յունաց երեսներորդ եր-կրորդ։ Սա թագաւորեցոյց զՏրդատ արքայ Հայոց մեծաց. և հասոյց հալածանս սաստիկս ի վերայ եկեղեցեաց. զի տա-ճարք աղօթից կործանեցան. և Կտակարանք այրեցան ի հրա-պարակս. և անթիւք եղեն վկայք արք և կանայք. և բազում հայրապետք մարտիրոսացան, Պետրոս Աղէքսանդրի Եպիսկո-պոսն, և Փիլիաս Թմուացիս քաղաքի, Անթիմոս Նիկոմիդացի,

տէր Կանոս ի Փիւնիկէ եկեղեցւոյն Տիւրոսացւոց, Դուկիանոս Մեծացւոց, Սուղիանոս Գաղացւոց, Պետրոս և Միզոս Եգիպտացւոց, և այլք բազումք. և սուրբ Հռիփսիմեանքն ի նոյն ինքն ամբարիշտն Դիոկղետիանոսէ գնացին փախստականք ի Հայս, և մարտիրոսացան վասն Քրիստոսի։ Եւ ի նոյն ժամանակին ելեալ ի Կիրապէն մեծ խոստովանողն Քրիստոսի սուրբն Գրիգոր, որ եղև քարոզ և Լուսաւորիչ Հայոց ի ձեռն մկրտութեանն սուրբ աւազանին. և եկեաց յետ այսորիկ ամս երեսուն, և հանգեաւ ի Քրիստոս։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Յաղագս նահատակութեան Տրդատայ նախ քան զհաւատալն։

Արդ իբրև եհաս ժամանակ Տրդատայ ժառանգելոյ զաթոռ թագաւորութեան իւրոյ զհայրենիսն, զօրաժողով լինէին թագաւորն Գոթաց ընդդէմ Պռոբայ Յունաց թագաւորին. և յղէ առ կայսրն Յունաց Պռոբոս, զի միամարտեսցին ընդ միմեանս. և զօրք իւրեանց (ի) խաղաղութիւն մնասցեն։ Իսկ արքայ Պռոբոս ահիւ մեծի եղեալ տագնապէր՝ որպէս Սաւուղն այն ի Գողիադայ. քանզի էր անզօր ի պատերազմի. և պատմեաց զօրացն իւրոց զբանն Գոթաց թագաւորին։ Իսկ Լիկիանոսն այն՝ որ առ մօտն էր Տրդատ՝ զօրացոյց զթագաւորն՝ և ասէ, է աստ այր մի յազգէ թագաւորացն Հայոց՝ որում անուն Տրդատ, և իրքդ այդ նովաւ վճարի։ Եւ որպէս անդ վասն Դաւթի առ Սաւուղ ասացին զյաղթելն Գողիադու, և կամ որպէս ինքն վասն իւր յաղագս առիւծուցն և արջուցն սատակման. և զօրացաւ ի բանս Սաւուղ պարգևս խոստանալով Դաւթի, և պատուցանել հրամայէր նմա վիրապանս և որ այլս կազմած սա-

ղաւարտս. այնպէս եղեւ առ Տրդատ ի կայսերէ. որպէս անդ բանն Աստուծոյ թագաւորեալ էր յողորկ քարն Դաւթի, նոյնպէս և սոսա առ Տրդատ: Թէպէտև դեռ ոչ էր հաստատեալ և ընդունակ լեալ բանին, սակայն հանդերձեալ էր նշանակեալ որ լինելոց էր առ յապա՝ յաղթել անմարմին Գողիաթու: Եւս զգեցուցին մեծազօրին Տրդատայ զկերպ կայսերն. և Լիկիանոսէ պատմեալ զամենայն կայսեր զգործ քաջութեանն Տրդատայ առաջի ամենայն բազմութեան զօրացն, և ասացեալ նախ զքաջութիւն դրանցն ախերց, և զյաղթութիւն զօրացն, և զդարման երիվարացն, զոր ընկենոյր ընդ բարձրութիւն պարսպին յայնկոյս բարդս բարդս, ընդ նմին և զիշեանն և զայլն ևս. նաև զայլ գործսն՝ որ յընթացամարտսն էր լեալ, և զձիավարեալսն, և որ այլ ուրեք գործ ի նմանէ եղեալ: Յետ այսորիկ իբրև լուաւ զայս կայսրն, հրամայեաց ածել զՏրդատ: Իբրև եկն, պատմեաց նմա զամենայն. ապա այնուհետև ժամ առեալ մարտի: Իսկ իբրև եհաս ժամն, հրամայեաց կայսրն՝ զի զարդարեսցեն զՏրդատ ի կերպ կայսեր: Եւ նորա առեալ զզօրս Թագաւորին՝ ձայնիւ փողոյ յառաջ մատուցեալ յանդիման Թշնամւոյն. և ի հանդիպել միմեանց Տրդատ(այ) և Թագաւորին Գութայ, մերձակի կուշտ առարեալ երիվարաւն՝ ուժգին դոչմամբ յարձակեցաւ ի միմեանս: Յաղթեալ քաջին Տրդատայ՝ ի փախուստ դարձուցանէր զԹագաւորն. և հասեալ ձերբակալ առնէ, և ածեալ յանդիման կացուցանէ կայսերն: Յայնժամ մեծացուցանէ կայսրն զՏրդատ անչափ պարգեօք: Եւ թագ եդեալ ի գլուխ նորա՝ զարդարեաց Թագաւորական ծիրանօք. և տուեալ ի ձեռս նորա զօրս բազումս՝ արձակեաց յաշխարհ իւր: . . . . Եւ յոր Թագաւորն Հրաշեալ՝ զորմէ ասացաք. արդ իբրև եկն Տրդատ մեծաւ խնդութեամբ, եգիտ անդ զօրս բազում ի Պարսից. զոր ապա քաջապէս փախստա-

կան առաքեալ խաչառ հարուածով՝ մինչև յաշխարհն Գաղատից. և զայն առաքեալ բազում ժամանակս քննախնդիր լեալ առ ի նոցանէ գործելեացն, և զթագաւորութիւն իւր լիապէս բովանդակ յինքն նուաճէր զօրացեալ ի վերայ ամենեցուն։

## ԳԼՈՒԽ ՂԹ

### Յաղագս Կոստանդիանոսի մեծի։

Թագաւորէ Կոստանդիանոս ամս երեսուն և չորս, և է ի կարգի կայսերացն երեսներորդ երորդ։ Սա էր կոչեցեալ ի ծնողաց իւրոց Կոստանդիանոս, և անուանեցաւ (ի) զօրաց իւրոց՝ Սեբաստոս։ Նա հաւատացեալ յԱստուած և ի Բան նորա յորդին Միածին և ի կենդանարար ամենասուրբ Հոգին, և տուեալ պատերազմ ընդ անօրէն թագաւորսն՝ սատակեաց զնոսա զՄաքսիմիանոս և զՄաքսենդիոս և զԼիկիանէս, և որ զկնի այսորիկ պատմի մինչև տալ պատերազմ ընդ թշնամեացն Կոստանդիանոսի։ Որև ապա հրաման տայ զօրաց իւրոց զնշանն խաչին Քրիստոսի գրոշմեալ ի կապերտոցի, որպէսզի ունիցի յաջոյ ձեռին իւրում զխաչն. և մտեալ ի Հռոմ՝ հրամայեաց յամենայն տեղիս նշանակօքս կանգնել զնշան յաղթութեան խաչին Քրիստոսի՝ որպէս ուսուցանէ պատմագիրն։ Սա հալածեաց զհերձուածողսն՝ որ ի ժամանակի անդ նորա յարեան՝ զԱրիոս և զայլ համախոհս նորա, զԵւսաստիանոս [?], և զԱրսերոս [?], և զԵւդոքսիոս։ Ի սորա ժամանակս եղև ժողովն Նիկիոյ մայրաքաղաքին Բիւթանացւոց, և նզովեցաւ Արիոս յերեք հարիւր և ի տասն և ութն (հայրապետացն)։ Սա փոխեաց զթագաւորութիւնն ի Հռոմայ ի Բիւզանդիոն, որ այժմ կոչի Կոստանդնուպօլիս։

## ԳԼՈՒԽ Կ

Յաղագս սնուցման և ուսման և վարդապետութեանն սրբոյն Գրիգորի յետ մահուանն Անակայ, և աղէտիցն՝ որ էհաս ընտանեաց նորա և ազգականաց նորա ի զօրացն Խոսրովու։

*Յորժամ սատակեցին զնոսա յանխնայ ըստ արժանի որոց գործեացն Անակ ընդ Խոսրովու, և խաւար արար Հայոց, որով և ինքն խաւարեցաւ. արդ զկնի կատարման ազգին և ընտանեացն՝ առեալ զմանուկն Գրիգոր դայեկացն՝ փախուցին յերկիրն Յունաց. և երթեալ բնակէր յերկիրն Կեսարացւոց. զոր միանգամ ասացաք։ Եւ անդ սնանէր և ուսանէր ի ձեռանէ երկեղածաց Քրիստոսի, և այն՝ յաղագս մերոյ փրկութեան լինէր անհասանութեան խորհուրդ, որով այնպիսին լինէր պատրաստեալ ճանապարհ նորա և մուտ ի մեզ կենաց մերոց դուռն լուսոյ։ Զի զնա սնուցանէին և ի Քրիստոս ընծայէին հաւատով, իսկ նա յարքունս հասեալ ամուսնանայ և որդիս ծնանի. յետ երից ամաց երկու որդիս ծնեալ՝ ի կամաց երկուց մեկնեալ յամուսնէն գնայ առ Տրդատ մինչդեռ յերկիրն Հռոմայեցւոց էր. և տեղեակ և հմուտ էր աստուածային պատուիրանին և յայժ հաստ Քրիստոսական դպրութեանն. և գնացեալ ի պատուիրանս Տեառն ուղիղ վարուք և ճշմարիտ առաքինութեամբ ի կեանս իւր։ Իսկ իբրև լուաւ և տեղեկացաւ ստուգիւ ի դայեկաց իւրոց զհայրենեաց իւրոց զգործ՝ զոր եղև, թէ ուստի՞, կամ զիա՞րդ և կամ ո՞րպէս եւ գնաց առ Տրդատ՝ որպէս ասացաք, և թագուցեալ զինքն ի վեր ո՛չ հանէր թէ ո՞ կամ ուստի՞ իցէ՝ մինչ ի ժամանակս չարչարանաց իւրոց. զոր զգացոյց ումն ի նախարարացն՝ Տաճատ անուն, թէ սա է որդի Անակայ մահապարտի, որ եսպան զԽոսրով հայր քո։*

Այլ նա զինքն թաքուցեալ՝ որպէս վերագոյնն ասացաք՝ միայն ի ծառայութիւն տայր զինքն Տրդատայ. և ընդ նմա եկեալ յաշխարհս Հայոց. ապա յառաջին ամին իւրոյ թագաւորութեան գնաց Տրդատ յԵկեղեաց գաւառ ի գեղն Երիզա՝ զոհել Անահտական (կռոյն)։ Իսկ իբրև զոհեաց ինքն և իւրքն որ զհետ նորա, եկին բնակեցան յեզր Գայլ գետոյ։ Եւ ի խրախանալ նախարարացն՝ հրամայեաց Գրիգորի զոհել Անահտի. զոր ոչ առնոյր յանձն, այլ ասէր, Տեառն իմոյ մատուցից զոհս. և պատարագս օրհնութեան հանդերձ երկրպագութեամբ. զի նա միայն է Աստուած՝ և չիք այլ ոք. և նա է արարիչ ամենայն արարածոց, երկնից և երկրի, հրեշտակաց և մարդկան, և ամենեցուն՝ որ երևին և որ ոչն երևին, և Տէր ամենայնի. և նմա պարտ է մատուցանել պատիւ՝ և երկրպագութիւն՝ և փառս յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Եւ իբրև լուաւ զայս թագաւորն, այնուհետև և ի հարց և ի փորձ մտեալ՝ բազում բանիւք սկսաւ խօսել ընդ միմեանս։ Եւ իբրև ո՛չ կարաց բանիւք ողոքանօք կամ սպառնալեօք կամակից լինել, ապա այնուհետև հրամայեաց չարչարել զսուրբ Գրիգորիոս բազում և ազգի ազգի չարչարանօք և նեղութեամբ տանջել. զոր ո՛չ ոք ի մարդկանէ կամ ի սրբոց այնքան չարչարանս կրեաց՝ որպէս և նա. զոր ասացից փոքր ի շատէ յայլում տեղւոջ։

## ԳԼՈՒԽ ԿԱ

### Յաղագս Բռնատանէց։

Մոռացումն եղև մեզ յիշատակել զնահատակութիւն սրբոց քառասնիցն՝ որ եղև յամբարիշտն Լիկիանէ. զոր եհարց երանելի սուրբ թագաւորն Կոստանդիանոս՝ զՄաքսիանոս և զՄաք-

սինդեւս, և զՄաքսիմոս, և զամբարիշտն Լեկիանէս։ Սա յա-
ռայց հալածանս ի վերայ եկեղեցեաց. և հրամայեաց հանել
հրովարտակ ընդ ամենայն գաւառս իւրոյ իշխանութեանն. և
հանեալ զհարիւրապետս ամն հանդերձ գնդաւն իւրով ի գա-
ւառն՝ որ կոչի Կապադովկէք, և ի Թեմն Խուլախունէք, և Ա-
նատաւլիկէք, և Խարբանայք, և Արմենիակք, և Դաղիմոն, զի
զօրս գայցեն ի Պրիստանէից զօր՝ մատուսցեն ի պաշտօն կռոցն,
և կամ սպանցեն չարչարանօք։ Արդ իբրագէկ եղեալ հաւատա-
ցեալքն անարժանն այն հրամա(նա)ցն, յարուցեալ յիւրաքան-
չիւր գաւառաց՝ դէմ եդեալ տարադէմ թաքչել ի տեղի ինչ
թաքստեան, և եկեալ հասին ի սահմանս Սեբաստիոյ. զինեն
ըստ իւրաքանչիւր յաջողութեան՝ ոմանք ի Մելեսիոն, որ է
ամրոց և լեառնակողմ, իսկ այլք ի Տախալատուն, որ և այն լեառն,
և Թափի ի կողմն Տիւկնոց, և են զերծ տեղիք և հեռագոյն և
ամրոց։ Իսկ հարիւրապետն այն՝ զօրմէ սաացաքն՝ հանդերձ գըն-
դաւն իւրով հետամուտ լեալ գայ հասանէ նոցա յիւրաքան-
չիւր ամրոցի. և բաժանեալ զգնդուորսն՝ հրամայէ նոցա յեր-
կուցս յայսցանէ ընտրել զոր կամին, կամ հաւանել հրամանա-
ցըն Լիկիանէ(ի), և դառնալ յիւրաքանչիւր տեղի խաղաղու-
թեամբ, և կամ մեռանել չարչարանօք։ Արդ իբր(և) ո՛չ հնա-
զանդեցան անօրէն հրամանացն, սուր ի վերայ եդեալ կոտորե-
ցին զըազումս. և այլք փախստական լեալք զերծան ի ձեռաց
նոցա։ Իսկ ի տեղի սպանելոցն զկնի հալածանացն շինեցին եկե-
ղեցիք բազում, որ այժմ կոչի Եկեղեցաձոր, և սակս այնորիկ
տեղիք նահատակութեան նոցա պատուին և փառաւորին ի բը-
նակչաց աշխարհին։ Իսկ սուրբ քառասունքն ո՛չ եղեն կատա-
րիչք անօրէն հրամանացն Լիկիանէ(ի) առ ի սպանումն հաւա-
տացելոցն, և ո՛չ հաղորդ անարժան սպանողացն, այլ հրաժա-
րեալ ի նոցանէ, երթեալ բնակէին յայրի մի յեզր գետոյն՝ որ

կոչի Եղեռ՝ ի տեղի մի ամրոցին, զի յայնմ ժամանակի ամայի էր լեալ տեղին այն, իսկ այժմ չէն, որ կոչի Բաջ — Աշահնայ. որ դեռևս տակաւին կայ տեղիք կայարանաց սրբոցն և գիր իւրաքանչիւր անուանցն գրեալ ի տախտակս քարանցն, և զնշան յաղթութեան խաչին տպաւորեալ ի նոյն ինքն յարձանս վիմացըն, որ այժմ ես պատուին տեղիք բնակութեանն նոցա Եկեղեցեօք և պաշտօնէիւք։ Բայց հարիւրապետն ոչ գիտաց զտեղի բնակութեան նոցա, այլ երթայր պատմէր Լիկիանէ(ի) զերսըն և զեղեալսն միանգամայն և զդառնալ քառասնիցն՝ և զոչ հնազանդիլն հրամանացն հարիւրապետին։ Իսկ ապա յետոյ երթեալ պատմէին Լիկիանէ(ի) վասն սրբոցն, և նշան ածէին ըղտեղի բնակութեան նոցա։ Եւ նորա հրաման տուեալ դքսին և դատաւորին՝ որք էին ի քաղաքին Սեբաստիայ, զի խնդիր արարեալ քառասնիցն՝ գտցեն և արկցեն ի չարչարանս, որ կամ ուրասցեն (գուցէ՝ անսասցեն) անարժան հրամանաց նորա՝ պաշտել զկուռսն, և կամ մեռցին չարչարանօք։ Եւ երթեալ խնդրակքն գտին զնոսա ի անդուղջն՝ զոր վերագոյնն տեսաք. և առեալ գնացին ի քաղաքն Սեբաստիայ։ Եւ էր օրն՝ յորում հանէին զնոսա ի բնակութենէ իւրեանց՝ տասն և հինգ Մարտ ամսոյ. զոր մեք ո՛չ վարկպարազի ինչ՝ այլ ստուգիւ քննեալ յուսումնասիրաց ումանց՝ որք էին մարդասէրք և աստուածասէրք. և վասն այնորիկ կարգեցաք մեք զօրն զայն տօն սրբոց Քառասանիցն՝ տօնել ամ յամէ անխափան ի փառս Աստուծոյ։

Արդ որպէս տեսաք, ստուգիւ քննեալ մեր գտաք զսկիզբն չարչարանաց նոցա զօրն զայն՝ յորում կարգեցաք զտօն. իսկ կատարումն նահատակութեան՝ նոցա եղև ի մարտի ինն կարգեալ ի սրբոց հարցն, զոր տօնեցաք և տօնեմք համապաղ ընդ ամենայն ուղղափառ Եկեղեցիս։ Արդ զնոսա գովէ և երանելին Բարսեղ ի պատմութեան անդ իւրում, և ասէ, ո՜վ հաւատ լիցի

սոցա պատուոյս, զոր ո՛չ մի լեզու միայն, այլ և ո՛չ քառասուն լեզու բաւական լինին զայնչափ արանց առաքինութիւն օրհնել և գովել. վասն զի մեզ ոչ ընդ մի վկայ է սքանչանալ՝ և ոչ ընդ երկու՝ և ո՛չ ի տասներորդ չափ վկայեցելոց, այլ ընդ քառասուն այր, որ իբրև զմի ոգի միաբանեալ ընդ միմեանս՝ նահատակեցան ի փառս Քրիստոսի, որում փառք յաւիտեանս, ամէն։

Այլ մեք ի մերն դարձցո՛ւք ոճ և ի ժամանակեալ տեղին՝ զոր խոստացաք ասել։

## ԳԼՈՒԽ ԿԲ

### Յաղագս չարչարանաց սրբոյն Գրիգորի։

Յառաջին ամին Տրդատայ արքային Հայոց մեծաց սկիզբն լինի չարչարանաց սրբոյն Գրիգորի ի գաւառին Եկեղեաց ի գեղն Երիզա ի մեհեանն Անահտական։ Եւ հրամայեաց թագաւորն Գրիգորի պսակս և ոստս ծառոց նուէրս մատուցանել բագնին։ Իբրև նա ո՛չ առ յանձն, յայնժամ խօսել սկսաւ թագաւորն բազում բանիւք ընդ Գրիգորի, և զգաղն նորա առնիւքն, և զերախտիքն իւր առ նա. սակայն ոչ կարաց հաւանեցուցանել զնա։ Ապա այնուհետև հրամայեաց չարչարել. և սկսան նախ զկապանս ձեռացն յետս կոյս, և հարկանել զայլ ի բերան նորա։ Եւ հրաման թագաւորին սաստկանայր. և նա ևս քան զևս զօրանայր և ընդունէր խնդութեամբ զչարչարանսըն։ Ապա շառաւիղս կախեալ ի վերայ ողին նորա և գելոց՝ կապեալ կրծից նորա և առաւանս ի կապս կրծիցն գելարանացն, և համբառնալ ի բարձրաւանդակ ի տանիս ապարանիցն որմոյն մեքենայիւք, և յետ այնորիկ զկախաղանս գլխիվայր զմիոյ ոտանէն, և ծուխ մխախառն ի ներքոյ նորա, և զգա՛նս սաստիկս

բրջք դալարօք ի ձեռն տասն արանց. և այլ լեալ զաւուրս եւթըն, և ապա զկոճեղս կազմեալս միոյ միոյ ոտին ոլոքի խոտցից ոտիցն և զբեւեռս երկաթիս վարեալ ընդ ներքանս ոտիցն, և առեալ զձեռանէն սորա աստի և անտի ընթացուցանէին յայսկոյս յայնկոյս, մինչզի արիւնն հոսէր իջանէր և ոռոգանէր զերկիր։ Նաև յետ զկառափս գլխոյ հարկանելոյ անհնարին հարուածովք և ապա յետ այնորիկ զգլուխ նորա դնել ի մամուլս հիւսանց, և փող եղեգնե(այ) դնել ի քիթս նորա, և արկանել աղ և բորակ և քացախ ի ներքս։ Յետ այնորիկ զմոխիրն՝ զոր լցեալ ամանով ինչ օղենի, և կապեալ ի փողս նորա, և կացեալ նովիմբ աւուրս վեց. յետ որոյ ապա պնդեալ ոտից նորա ի հրապոյրս տկաց, և զկախեալ գլխիվայր, և դնել ձագարի նատոյ տեղւոջն՝ և արկանել տկաւ ջուր յորովայն նորա։ Նաև ապա զքերել կողիցն երկաթի քերչօք՝ մինչև ոռոգանէին վայրքըն յարենէ սրբոյն. և կամ թէ զտարածումն տատասկին ի գետնի անդ, և մերկացուցանել զսուրբն Գրիգորիոս, և ընկեցեալ ի վերայ տատասկին՝ և քարշէին մինչև ծակոտեալ առհասարակ մարմին երանելոյն՝ և անդէն թաղին ի ներքս, և դարձեալ քարշէին՝ մինչ ոչ մնայր տեղի ողջ։ Ապա յետ այսորիկ արկանել կապիճս երկաթիս ի ծունկս նորա, և վարել ուռունս և բառնալ ի կախաղանս մինչև յօշեցին ծունկք նորա ի կախաղանի, և այն լինէր երիս աւուրս։ Նաև ապա պուտամբք երկաթի հալեալ կապար և արկանել զմարմնովք նորա, մինչզի այրել և խորովել մարմինք երանելոյն։ Իսկ երանելին ի միոյ միոյ միջոց ի չարչարանացն աղօթս առ Աստուած մատուցանէր։ Նաև ապա յետ այսր ամենայնի անհնարին տանջանայ՝ մատուցեալ ոմն ի նախարարացն, զոր վերագոյնն ասացաք, որում անուն Տաճատ՝ մատնիչ եղև հանգոյն Յուդայի, և ասէ ցարքայ թէ՝ չէ պարտ դմա կեալ, ասէ, զի որդի վրիժա-

պարտի է դա, որդի Անակայ՝ որ սպան զհայր քո Խոսրով։ Իսկ իբրև լուաւ թագաւորն, և տեղեկացեալ ստուգիւ, ապա հրամայեաց կապանօք խաղա(ղա)ցուցանել յԱյրարատեան գաւառէ, և տանել զնա ի Դղեակ բերդն, և իջուցանել ի Վիրապն. որ էր խորութեամբ անհնարին և խաւարին և զիջին ի մէջ թիւնաւոր օձիցն, որ շեղջս շեղջս կուտէին զմարմինս նորա. և ի յաղտմանէ նոցա և ի շնչոյն և ի գոլորշեացն՝ թխացեալ լինէր մարմինք նորա և սևացեալ իբրև զածուխ. և այս լինէր զամս հնգետասան։ Եւ յարհաւրաց հրեշտակին կերակրեալ լինէր ի ձեռն կնոջ միոյ, որ բնակեալ էր մերձ ի Վիրապն. զի տանէր՝ ասէր՝ աւուրս աւուրն նկանակ մի փոքրիկ՝ և տարեալ ընկենոյր ի Վիրապն։ Եւ երանելին ոչ դադարէր յաղօթելոյ ի մէջ օձիցն։ Արդ որպէս ասացեալ եղև, զայնքան անհնարին և բազում չարչարանս կրեալ երանելւոյն Գրիգորի, և առ միոյ միոյ չարչարանաց թողացուցեալ լինէր ի թագաւորէն յաղագս հարցի և պատասխանոյ, զի թերևս զղջասցի և դարձցի։ Իսկ նա ևս քան զևս պնդէր ի հաւատս, և ի միջոյ չարչարանացն բազում աղօթս մատուցանէր յերկարեալ զքանս իւր. և գրէին զամենայն ատենական դպիրքն նշանագրացն։ Արդ վասն նկանակին սակաւ ինչ ասացեալ եղև։ Իսկ վասն ջրոյ լուեալ է մեր յաւանդութենէ, թէ ի խորութենէ Վիրապին և ի կաթուածոյ հիմանցն ժողովեալ լինէր առսակաւ սակաւ յաւուրս ինչ, և այնու զովանայր կարօտիւ։ Թէպէտ և կինն այն զկնի նկանակին ջուր մատուցանէր, այնպէս ընդ օձիցն կեցեալ լինէր և կերակրեալ, և արբեալ ի կաթուածոյն՝ զոր ի մարդկանէ չէք հնար տեսութեամբ անգամ մերձենալ ի յօձ. բայց նա թաղեալ ի մէջ այնքան բազմութեան օձիցն, որպէս և ինքն վկայէ։ Եւ այնպէս կացեալ և համբերեալ ի նմա զայնքան ամս և զժամանակս կենդանեակ

վկայն Քրիստոսի սուրբն Գրիգոր, մինչև եհաս նմա հրաման ի Տեառնէ՝ ելանել և լուսաւորել զաշխարհս մեր ջրով և Հոգւով։

## ԳԼՈՒԽ ԿԳ

### Յաղագս Տրդատայ։

Թագաւորէ Հայոց Տրդատ՝ որդի Խոսրովու զկնի սպանման հօր իւրոյ՝ և յանիշխանութեանն մնալ Հայոց ամս քսան և եւթն։ Սա էր ի թուոյ թագաւորացն Հայոց հնգետասաներորդ։ Ի սորա առաջին ամին սկիզբն առնու չարչարանացն սուրբն Գրիգոր. և ի տասնուչորս ամին վկայքն Քրիստոսի Հռիփսիմեանքն եկին ի Հայք, և ի հնգետասան ամին մարտիրոսանալ նոցա։ Եւ ի նոյն ամի սուրբն Գրիգոր ել ի Վիրապէն, և Հայոց Լուսաւորիչ գտաւ. և ժողովին ամենայն ամք յԱդամայ մինչև ի հնգետասան ամն Տրդատայ՝ հինգ հազար ութ հարիւր ամ։

## ԳԼՈՒԽ ԿԴ

### Վասն սրբոց Հռիփսիմեանցն։

Յետ թագաւորելոյն Դիոկղետիանոսի կայսեր Հռոմայեցւոց՝ ելեալ երանելեացն Հռիփսիմեանց յաշխարհէն Հռոմայեցւոց, և յաղագս հալածանաց դէմ եդեալ եկին յաշխարհս Հայոց։ Իսկ իբրև եկին հասին սուրբքն ի Նիկոմիդէ քաղաքն, ուստի քաջն Տրդատ զիշեանն հանդերձ բարդ բարդ խոտաւն ի ներքուստ ի դուրս արտաքոյ պարսպին ձգեալ ընկենոյր։ Իսկ երա-

նելին Հռիփսիմէ թագաւորազն լեալ՝ կամ թէ դուստր թա-
գաւորի, և լուեալ զքարոզութիւն առաքելոցն սրբոց Պետրոսի
և Պօղոսի, և զհաւատն որ ի Քրիստոս, երթեալ բնակէր ի
միայնար(ան)ի մի մօտ ի քաղաքն Հռովմ՝ հանդերձ երանելովն
Գայիանիւ դայեկաւն իւրով՝ և այլ բազում ընկերօք, որովք
եկն յաշխարհս Հայոց։ Իսկ իբրև եհաս հալածումն նոցա յամ-
բարշտէն Դիոկղետիանոսէ, գաղտնագնաց արարեալ ի Հռով-
մայ եկին հասին յաշխարհս Հայոց ի գաւառն Այրարատեան,
և բնակեցան մօտ ի Դուին՝ որ է քաղաք Հայոց. որ էին լեալ
աւելի քան զեւթանասուն հոգի՝ ասէ պատմագիրն։ Այլև
այն յաղագս սիրոյն Քրիստոսի լինէր, զայնքան տար աշխարհ
հատեալ անցեալ եկին ի Հռովմայ ի Հայք. որ է ի Հռոմայ
մինչև ի Դուին հինգ հազար և հարիւր մղոն. և մղոնն եւթն
ասպարէզ։ Զոր ապա տեղեկութիւն առեալ ամբարիշտն
Դիոկղետիանոս զգալ նոցա յաշխարհս մեր, առաքէ հրովար-
տակ առ Տրդատ արքայն Հայոց, որ ունէր խորհուրդ զայս.
եկին՝ ասէ՝ առ ձեզ կանայք ոմանք յաշխար(հէս) մեր(մէ).
զոր կամէի զմի ոմն ի գլխաւորացն՝ որում անուն Հռիփսիմէ՝
առնուլ ինձ ի կնութեան. արդ տեսցես եղբայր, յորժամ զը-
տանիցես յաշխարհիդ քում, առ իս առաքեսցես. և եթէ հա-
ճոյ թուեսցի յաչս քո՝ առցես զնա քեզ կնութեան։ Իսկ իբրև
խնդրեաց և եգիտ թագաւորն Տրդատ, և ոչ կարաց ի կամս
իւր ածել զերանելի սուրբ տիկինն Հռիփսիմէ. քանզի Քրիս-
տոսիւ էր զօրացեալ. և էր նա յազգէ թագաւորացն, որպէս
իսկզբան ճառիս ասացաք. և կամէր հարսնանալ Քրիստոսի
երկնաւոր թագաւորին. և ընտանի և ազգակից լինէր. պահեաց
զկուսութիւն իւր ճշմարիտ. վասնզի ճշմարիտ կուսութիւնն
ազգակցութիւն ունի առ հրեշտակս. յաղագս այնորիկ ոչ հը-
նազանդեցաւ երկրաւոր թագաւորին Տրդատայ. վասնորոյ չար-

չարեցաւ և եղև վկայ Քրիստոսի. և զկնի սորոյն Գրիգորի պատճառ եղև լուսաւորութեան աշխարհիս Հայոց հանդերձ այլովք ևս ընկերօք երեսուն և երիւք։ Իսկ այլքն ի նոցանէ ի ճանապարհի բաժանեալ գնացին ի լեառն Վարագ, որ էին առ (առ)Տոսպ գաւառի։ Արդ չարչարի չքնաղագեղն այն և պատճառ մերոյ փրկութեան հանդերձ ընկերօքն միանգամայն և մեռանի վասն Քրիստոսի։ Յետ որոյ և սուրբն Գրիգոր լուսաւորիչ իսկ եղև իւրով կենդանի վկայութեամբն ելեալ ի Վիրապէն սակաւ աւուրբք զկնի կատարման նոցա. վասնզի արդիւնք էր նա մահուան նոցա. իսկ նոքա պտուղ աղօթից նոցա, զոր առնէր ի Խորվիրապին ի մէջ Թիւնաւոր օձիցն։

## ԳԼՈՒԽ ԿԵ

### Վասն հաւատոյն Տրդատայ՝ որ եհաս նմա ի Տէառնէ։

Արդ իբրև էառ Թագ քաջն Տրդատ յաշխարհին Հոռոմայեցւոց, և եկեալ Թագաւորեաց ի վերայ աշխարհին Հայոց ։ զկնի սպանման հօր իւրոյ՝ և յանիշխանութեան լինելոյ Հայոց զամս քսան և հինգ, և էր ի հնգետասաներորդ Թուոյ Թագաւորացն Հայոց՝ սկսեալ ի Վաղարշակայ և յիւրքն։ Նա յառաջին ամին իւրոյ Թագաւորութեանն չարչարեաց զսուրբն Գրիգոր. (ի)չորեքտասան ամին սուրբ վկայքն Քրիստոսի Հռիփսիմեանքն եկին ի Հռոմայ ի Հայս. (ի)հնգետասան ամին սպան զնոսա չարչարանօք. և ի նոյն ամի սուրբ Գրիգոր ել ի Վիրապէն, և Հայոց Լուսաւորիչ եղև. և լինի ամք յԱդամայ մինչև ի տասնեհինգ ամ Տրդատայ՝ հինգ հազար և ութ հարիւր։ Իսկ ապա զկնի չարչարանացն սրբոց Հռիփսիմեանց ելեալ Տրդատ ի կառս իւր՝ կամէր ելանել ընդ դուռն քաղաքին. և հասեալ

Նմա առ ժամայն պատուհաս ի Տեառնէ՝ ի կառացն ի վայր կործանեաց. և սկսաւ մոլեգնել և ուտել զմարմինս իւր, և որ այլն ամենայն հարուածք՝ որպէս ասէ պատմագիրն: Նաև զնախարարացն՝ ասէ՝ ի նոյն հարուածս մոլեգնեալ ի դիւաց, և առհասարակ ամենեքեան ահիւ ըմբռնեալք արք և կանայք՝ միանգամայն և ամենայն հասակ: Ապա տեսիլ երևեալ Խոսրովիդխտոյ քեռ թագաւորին, ոչ գոյ բժշկութիւն՝ ասէ՝ հարուածոց թագաւորին Տրդատայ (և) նախարարաց իւրոց:

## ԳԼՈՒԽ Կ.Զ.

### Ո՞ր է Վրթանէս որդւոյն Գրիգորի:

Իսկ առաքէն զնախարար ոմն Օտայ անուն. և երթեալ հանէ, և առեալ բերէ առ թագաւորն մեծաւ խնդութեամբ: Իսկ թագաւորն ընդ յառաջ ելեալ հանդերձ նախարարօքն. և նա հինգօրեայ անսուաղ թողեալ զամենայն բազմութիւնն՝ միայն ունկն դնելով վարդապետութեան նորա. և ի զգաստութիւն եկեալ ծանեան զնա և զինքեանս: Իսկ յայնմհետէ զայս զԱռաջաւոր պահոցս օրինադրեցին յամենայն (ամի) պահել: Զոր և ի Հռովմ Սեղբեստրոս հաւանեցաւ պահել Կոստանդիանոսիւ թագաւորաւն, նաև ամենայն Իտալիոս. զոր արդ ևս Առաջաւորք կոչեմք: Իսկ յորժամ լցան աւուրք այլ ևս պահոցն վաթսուն և հինգ օր, թափեցաւ մորթ վայրենական ի թագաւորէն, և դիւաբնակ միտք նորա բժշկեցան: Այլ մեք ի նոյն դարձցուք բան: Ապա (մ)երձեալ հանդիպի նշխարաց սրբոց Հռիփսիմեանցն, և զսպեալ զնոսա յիւրաքանչիւր հանգիստ փոխեաց: Իսկ ինքն վարդապետէ ամենայն բազմութեան մարդկան աւուրս վաթսուն և հինգ՝ որպէս ասէ. ուսուցանէ

Նոցա սկիզբն առնելով յանսկիզբն էութենէ Աստուածութեան, և զառաջագործութենէ *) երկնի և երկրի։ Եւ յԱդամայ սկիզբն արարեալ մինչև ի մարմնանալ Բանին Աստուծոյ՝ օրինակ և նմանութիւն բերելով ի նախահարցն և ի նահապետացն և ի մարգարէից մինչև ի ծնանիլ Բանին Աստուծոյ ի Կուսէն, և զԹլփատելն, և զընծայելն ի տաճարին, և զմկրտելն, և զընդօրինելն Աստուածապէս, և աստուածային մարմնովն զքարկոծիլն, և զմատնիլն, և զբևեռիլն ի խաչին, և զմեռանելն, և զԹաղիլն, և զՅարութիւնն, և զՀամբառնալն, և զմիւսանգամ Գալուստն հանդերձ մարմնով, և զդատաստանն, և զհատուցումն։

Եւ եղև յետ այսորիկ առնու ձեռնադրութիւն. և ընկալեալ զաստիճան Քահանայութեան ի յերևմանէ Հրեշտակին ի ձեռըն տեսլեանն՝ որ երևեցաւ նմա, և այն յաղագս փոքր մի ընդդիմանալոյ արքային եղև։ Եւ ապա այնուհետև ի մկրտութիւն ձեռն արկանէր զաշակերտեալսն. և լուսաւորէր ի ձեռն աւազանին լուացմանն։ Եւ կործանէր զբագինսն ամենայն կռոցն, որ և հասանէր ամենայն ուրեք հանդերձ Թագաւորաւն ընդ ամենայն տեղիս։

## ԳԼՈՒԽ ԿԸ

### Գալն Տրդատայ ի Հայս։

Իսկ ապա ի գալն Տրդատայ ի Հայք յսկզբան Թագաւորութեան իւրոյ, յորժամ Թագաւորեաց յերրորդ ամի Դիոկղետիանոսի կայսեր Հռոմայեցւոց, առնու իւր կին զԱշխէն դուս-

(*) Գուցէ զառաջագործութենէն։

տըր Աշխէնդարայ. յորմէ ծնաւ զԽոսրով՝ ոչ նման հաւատակից իւրոց ծնեալ։ Իսկ ընդ այն աւուրս լինէր Կոստանդիանոսի հարսանիս՝ առնլով նմա կին զդուստրն Դիոկղետիանոսի զՄաքսիմիանէ. յորում ժամանակի և հաւատաց ի ձեռն տեսլեան աստղանշան խաչին, որ երևեցաւ նմա։ Իսկ հրապուրեալ ի կընոջէ իւրմէ. զոր ապա զորպիսութիւնն ասացից յետոյ յայլում տեղւոջ։

## ԳԼՈՒԽ ԿԲ

### Յաղագս թագաւորին Տրդատայ նախ քան զհաւատալն։

Իսկ թագաւորն Տրդատ զկնի ամենայն քաջութեան և առաքինութեան՝ զոր գործեաց պատերազմաւ ի Յոյնս՝ և ի Հայս՝ և ի Պարս, բազում զօրօք Հայաստանեաց իջեալ ի դաշտն Գարգարացւոց ի սահմանս Աղուանից, յորում և զմիջակտուր զԲաղացն արար թագաւորն, զոր այժմ ոչ երբէք կոչէ աշխարհն Բաղսաց, զոր կարծեմ փոխել անուանն. ոչ յիշէ որպէս Խորայն ի Գարբանու. բայց է բլուր մի յաշխարհին Ուտիացւոց՝ մերձ առ ստորոտով լերինն՝ որ կոչի Արաթիւն, որ դեռ ևս կոչի բլուրն այն Բարսղաբերդ. և զկնի այսորիկ այնքան բազմութեա(մբ) զօրացն արշաւէ ի վերայ Շապհոյ որդւոյ Արտաշրի՝ զմնացեալ պարտս հօրն իւրոյ հատուցանել. առ և աւար արարեալ՝ հանդերձ գերութեամբ դառնայ յաշխարհ իւր մեծաւ յաղթութեամբ։ Արդ դարձայց անդրէն ի կարգ բանին։

Առնոյր այնուհետև սուրբն Գրիգոր խորհուրդ հաւանութեան ընդ թագաւորին Տրդատայ և իշխանսն՝ կործանել զկուռսն ամենայն, և երթեալ հանդերձ բազմութեամբ զօրուն ի տեղիս կռոցն, ուր և դիպէին և հասեալ յՆերիղացւոց յՆե-

բեզամոյնս տեղի անուանեալ. զի նախ նա դիպեցաւ ի Ճանապարհին. և ի նա ձեռն արկեալ քանդեցին։ Եւ նա յԱնահտական մեհեանս երթեալ՝ որ յԱրտաշատ քաղաքն լինէր, և զայն ի հիմանց տապալեալ աւերեցին։ Եւ ապա երթեալ ի Դարանաղեաց գաւառն և ի գեղն Թորդան, և անդ զմեհեանն սպիտակափառ դիցն Բարշամինայ քանդեցին՝ և զպատկերն փշրեցին։ Եւ ապա հասեալ յամուրս Անի, անդ կործանեցին զպատկերն Արամազդայ, որ հայրն կոչէր դիցն ամենայնի։ Եւ անդէն երթեալ ի գաւառն Եկեղեաց, փշրեցին զոսկի պատկերն Անահտականից դիցն։ Եւ ապա անցեալ ընդ Գայլ գետ՝ քանդէին զ[illegible]ոնիական մեհեանն դստերն Արամազդայ ի Թիլն աւանի։ Եւ անտի գային հասանէին ի գեղն Բագայառիճ կոչեցեալ. և անդ աւարեալ զՄիհրական մեհեանն որդւոյն Արամազդայ։ Եւ ապա ամենայն ուրեք զնշան Տէրունական խաչին կանգնեալ սրբոյն Գրիգորի՝ հալածէր զբազմութիւն դիւացն, որ բունեալ էին ի մեհեանս կռոցն. որև կէսքն ի կողմանս Կովկասայ անկանէին հալածական, և այլքն ի սահմանս Խաղտեաց՝ վայ ի վերայ անձանց իւրեանց կարդալով։ Եւ զամենայն գանձըս մթերեալ ի մեհենացն՝ յաղքատս բաշխէին։ Եւ զմնացեալ գանձն հանդերձ դաստակերտօք ի սպասաւորութիւն եկեղեցւոյ նուիրէին։

Բայց ոչ ուրեք առնէր յայտ հիմնարկութիւն եկեղեցւոյ, և ոչ սեղան ուղղէր. վասնզի դեռ ոչ ունէր պատիւ Քահանայութեան՝ որպէս ասէ պատմութիւնն։ Բայց յաղագս նշանացն և սքանչելեացն՝ որ լինէին, տեսեալ զայն թագաւորին և բազմութեան զօրացն՝ հաստատէին՛ ի հաւատս։ Եւ ապա խորհուրդ արարեալ թագաւորին Տրդատայ հանդերձ կնաւ իւրով և քերբն և ամենայն բազմութեամբ զօրացն, զի ի կարգ քահանայութեան ածցեն զԼուսաւորիչն, զի մկրտութեան ևս ար-

ժանի լինիցի(ն)։ Իսկ նա ընդդիմաբանեալ ոչ առնոյր յանձն, մինչ զի տեսիլ սքանչելի երևեալ Թագաւորին հաստատէր զբանըն։ Նաև երանելոյն Գրիգորի երևեալ տեսիլ՝ որպէս և ինքն իսկ ասէ զհրեշտակին երևումն, ապա հաւանեալ՝ ասէ, կամք Աստուծոյ եղիցին կատարեալ։ Ապա Թագաւորն փութանակի հրամայէր գունդ գումարել բաղում իշխանաց իւրաքանչիւր զօրօք. և պատրաստեցին զսուրբն Գրիգոր հանդերձ իշխանօքըն. և առաքեցին ի Կեսարիայ Կապուտկացւոց առ մեծն Ղևոնդ Արք եպիսկոպոս Կեսարու հանդերձ հրովարտակով, զի ձեռնադրեսցէ զսուրբն Գրիգոր ի Հայրապետութիւն Հայոց։ Զոր ընկալեալ մեծաւ խնդութեամբ՝ մի՝ վասն խոստովանական անուանն, և մի՝ յաղագս լուսաւորութեան Հայոց աշխարհիս, ձեռնադրէ և դարձուցանէ հանդերձ պատասխանով հրովարտակին։

## ԳԼՈՒԽ ԿԹ

Պատմեալ ի նոյն խորհուրդ յաղագս սրբոյն Գրիգորի երեւալոյն ի ձեռնադրութիւն Հայրապետութեանն։

Երդ յորժամ եհաս հրաման ի Տեառնէ սրբոյն Գրիգորի զպետականն առնուլ իշխանութիւն, յայնժամ տեսիլ սքանչելի երևեալ Թագաւորին յԱստուծոյ. քանզի հրեշտակ խօսէր ընդ նմա և ասէր. պարտ է քեզ Գրիգոր վիճակեցուցանել ի Հայրապետութիւն, զի լուսաւորեսցէ զձեզ։ Նա և Գրիգորի երեւեալ հրեշտակ յԱստուծոյ, զի մի՛ ընդդիմասցի Աստուծոյ Թագաւորին, զի յԱստուծոյ է հրամանն։

Ապա այնուհետև Թագաւորն գումարեալ գունդ ի գլխաւոր նախարարացն իւրաքանչիւր զօրօք։ Առաջին՝ իշխան Անկեղտա-

նըն, երկրորդ՝ իշխան Աղձնեաց՝ որ էր Բդեաշխ, երրորդ՝ իշխանն Մարդպետութեան և զիշխանն Թագակապ՝ որ կոչի Ասպետ, և զիշխանն Ասպարապետ, և զիշխան Կորդուաց, և զիշխանն Գուգարացւոց, որ և նա անուանիւր Բդեաշխ. և զիշխանըն Ռուշտունեաց, և զիշխանն Մոկաց, և զիշխանն Սիւնեաց, և զիշխանն Դաւղեաց աշխարհին, և զիշխանն Ուտիացւոց, և զիշխանն Շահապն՝ Զարաւանդ՝ և Հեր գաւառի, և զիշխանն Արծրունեաց: Նա և հանեալ զԳրիգոր յոսկիապատ կառս արքունականս, և գային հասանէին ի քաղաքն Կեսարացւոց: Նա և հանդիպեալ սրբոյ Կաթուղիկոսին Ղևոնդի, մատուցին զթուղթ թագաւորին Տրդատայ: Նա և տուեալ ողջոյն ամենեցուն. ապա եկեալ ժողով բազմութեան Եպիսկոպոսաց՝ ձեռնադրեցին զսուրբն Գրիգոր Հայրապետ Հայոց մեծաց. և էր գլխաւոր Եպիսկոպոսացն մեծն Ղևոնդիոս: Նա և առեալ պատասխանի թղթոյն՝ դարձան մեծաւ ուրախութեամբ. և եկին հասին ի քաղաքն Սեբաստիա: Նա և կացեալ անդ աւուրս ոչ սակաւ, և արկեալ ի նմա հիմն եկեղեցւոյ. որ և շինեցին իսկ հրամանաւ սրբոյն Գրիգորի արք հաւատարիմք, և անուանեցին յանուն սրբոյն Գրիգորի. որ դեռ ևս կայ յեզր քաղաքին: Իսկ ապա լուեալ արքայն Տրդատ զգալն սրբոյն Գրիգորի՝ ելեալ ընդ առաջ նորա զօրօք բազմօք առ ստորոտով Նպատ լերինն՝ հանդիպի առ ափն Եփրատ գետոյն. և ընդ պատահելըն միմեանց լցան ուրախութեամբ: Նա և տուեալ զպատճէն թղթոյն պատասխանի, և նստաւ սուրբն Գրիգոր յաթոռ Կաթուղիկոսութեան Հայոց մեծաց: Նա և Եպիսկոպոսք՝ որ ձեռնադրեցան ի նմանէ՝ աւելի քան զչորեք հարիւր Եպիսկոպոս՝, տեսուչք տեղեաց տեղեաց:

## ԳԼՈՒԽ Հ

### Յաղագս Եպիսկոպոսաց՝ որք ընկալան աթոռ ի տեղիս տեղիս ի սրբոյն Գրիգորէ յԱրարատեան գահն։

Արդ յայսմ վայրի զաթոռակալս շարադրեցից և յայտ արարից զիւրաքանչիւր գահն՝ որպէս Լուսաւորչին մերոյ սրբոյն Գրիգորի է կարգեալ և եդեալ զսեփհական աթոռընկալ Եպիսկոպոսացն զկարգս. առաջին՝ Հարքայ Եպիսկոպոսն, երկրորդն՝ Ոստան Եպիսկոպոսն, երրորդն՝ Տայոց Եպիսկոպոսն, չորրորդն՝ Մարդաղւոյ, հինգերորդն՝ Արշամունեաց, վեցերորդն՝ Արծրունեաց, եւթներորդն՝ Սիւնեաց, ութերորդն՝ Ռշտունեաց, իններորդն՝ Մոկաց, տասներորդն՝ Ամատունեաց, մետասաներորդն՝ Բասենոյ, երկոտասաներորդն՝ Մամիկոնէից, երեքտասաներորդն՝ Բագրևանդայ, չորեքտասաներորդն՝ Խորխոռունեաց, հնգետասաներորդն՝ Վանանդայ, վեշտասաներորդն՝ Ապահունեաց, եւթնևտասներորդն՝ Արշարունեաց, ութնև տասներորդն՝ Գնունեաց, իննևտասներորդն՝ Գողթան, քսաներորդն՝ Գարդմանայ, քսանևմինն՝ Ակէոյ, քսան և երկուսըն՝ Բժնունեաց, քսան և երեքն՝ Երուտակաց, քսան և չորսն՝ Ասորեաց, քսան և հինգն՝ Անձևացեաց, քսան և վեցն՝ Պալունեաց, քսան և եւթն՝ Մեհնունեաց, քսան և ութն՝ Ելոյ, քսան և ինն՝ Զարևհանից, երեսունն՝ Միւսաւորեաց։ Այս երեսուն Եպիսկոպոսք՝ որք աթոռակալութեամբ ընկալան ձեռնադրութիւն ի սրբոյն Գրիգորէ, և այլ ևս երեք հարիւր և եւթանասուն Եպիսկոպոսք. որ և նոքա կարգեցան ի տեղիս տեղիս տեսուչք և Առաջնորդք յիւրաքանչիւր գաւառս ի փառս Աստուծոյ։

## ԳԼՈՒԽ ՀԸ

### Յաղագս Հռովմ-ընթեան Տրդատայ Թագաւորին և նախարարացն և ամենայն զօրացն։

Արդ իբրև եկն սուրբն Գրիգոր յաշխարհս Հայոց, և թագաւորն Տրդատ լուաւ՝ լցաւ խնդութեամբ. և առեալ ընդ իւր զԱշխէն զկինն իւր և զԽոսրովիդուխտ զքոյր իւր համդերձ զօրօքն գայ հանդիպի սրբոյ Հայրապետին առ ստորոտով լերինն Նպատայ՝ որպէս ասացաք վերագոյն. գան հասանեն յափն Եփրատ գետոյն. բազում խնդութեամբ ողջոյն տուեալ միմեանց՝ և մատոյց զպատճէն պատասխանոյն՝ դարձեալ ուրախ լինէին։ Իսկ առեալ սուրբն Գրիգոր զԹագաւորն համդերձ իւրայօքն՝ և զայլ ամենայն բազմութիւն զօրաց մկրտէր ի գետն Եփրատ յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։ Որ ապա նշանք սքանչելի երևեցաւ. զի գետն զտեղի առեալ կայր. և սիւն լուսաւոր ի վերայ նոցա ի նմանութեան աստեղանակեան խաչին. և որք մկրտեցան յայնժամ ընդ այր և ընդ կին և ընդ մանուկ աւելի քան զչորեքհարիւր բիւր մարդիկ. և խորհուրդ ածեալ զամենայն բաշխէր նոցա զկենդանարար սուրբ Մարմին և զԱրիւն Փրկչին մերոյ. և լուսաւոր վարդապետութեամբն իւրով լնոյր և լուսաւորէր զնոսա զամենեսեան։ Իսկ նոքա օրհնէին զԱստուած և փառաւորէին. որ ետ նոցա միտս զգաստութեան, և հան զնոսա ի խաւարէ ի լոյս, և յանգիտութենէ ի գիտութիւն ճշմարտութեան, և յանհաւատութենէ ի հաւատս. և յաղագս այնորիկ օրհնէին զԱստուած զտուիչ այնպիսի պարգևաց։ Այլ մեք ի նոյն դարձցուք բան՝ զոր խոստացաք յաղագս հաւատալոյն Կոստանդիանոսի, թէ որպէս հաւատաց Կոստանդիանոս, կամ որո՞վ օրինակաւ։ Զայս ասացեալ

պատմագրաց Յունաց՝ Թագաւորն Հռովմայ Կոստանդիանոս կռապաշտ էր. և հրապուրեալ ի Մաքսիմիանէ կնոջէ իւրմէ՝ որ Թոռն Դիոկղետիանոսի կայսեր. սա հալածէր զքրիստոնեայսըն. և զբազում հաւատացեալս եսպան, որ ո՛չ զոհեցին կռոցըն: Իսկ երանելին Սեղբեստրոս առեալ զաշակերտսն՝ փախեաւ ի լեառնն, և էր անդ ի թագստի: Եւ եղև բորոտութիւն Կոստանդիանոսի Թագաւորին իբրև տապաստ, և բժիշկք ամենեքին ո՛չ կարացին բժշկել: Ասացին աղանդաւորքն, եթէ անհնարին է քեզ բժշկել՝ բայց միայն եթէ անարատ մանկունք ժողովեսցես և արեամբ նոցա լցցեն զաւազան. և մինչդեռ ջերմ է արիւն, մտցես ի նա մերկ յաւազանն, և լուայցես արեամբն, և ապա ողջասցիս: Հրամայեաց, և փութապէս ժողովեցին տղայս մանկունս բազում և անթիւս յոյժ: Եւ հեծեալ Թագաւորին երթայր ի Կապետոլիոյն տաճար կռոցն. և ընթացան կանայք և տղայք ի դիրկս իւրեանց մեծաւ հառաչանօք, հերարձակք՝ և աղինքն ի բերան տղայոցն անկան առաջի Թագաւորին կսկծալից ողբովք: Եւ նորա տեսեալ զկոծ և զտուայտանս մարցն և զլալիւն տղայոցն, յոյժ ողորմեցաւ և գթացաւ ի նոսա, նա և արտասունք հեղան յաչացն, և լաւ համարեցաւ ըզփրկութիւն նոցա քան զառողջութիւն անձին իւրոյ: Արձակեաց զնոսա ուրախութեամբ (ի) յարկս իւրեանց՝ տուեալ նոցա հաց և ռոճիկ: Եւ ի գիշերին այնմիկ երևեցան Պօղոս և Պետրոս առաքեալքն Քրիստոսի՝ և ասացին. որովհետև ողորմեցար դու տղայոցն առաւել քան անձին քում, եկաք քեզ յօգնականութիւն. առաքեա՛ յայսնիշ լեառն, և բե՛ր առ քեզ զԵպիսկոպոսապետն Սեղբեստրոս. և նա պատրաստեսցէ քեզ աւազան ջրոյ. և դու լուասցիս այնու՝ և բժշկեսցիս ի բորոտութենէդ: Եւ ընդ առաւօտն արձակեաց ի լեառն. և տարան ըզսուրբն Սեղբեստրոս. և նա կարծէր՝ թէ ի մարտիրոսութիւն

տանելին զնա, ուրախութեամբ երթայր։ Եւ մտեալ առաջի թա-
գաւորին՝ ողջոյն ետ։ Եւ ասէ ցնա. են Աստուածք քո, որ ան-
ուանին Պետրոս և Պօղոս։ Պատասխանի ետ Սեղբեստրոս՝ և
ասէ, ո՛չ են նոքա աստուածք, այլ ծառայք են Աստուծոյ և
առաքեալք։ Ասէ թագաւորն, որո՞վ կերպարանաւ են կամ
յո՞ր չափ հասակի։ Եւ հանեալ ի ծոցոյն իւրմէ փոքր մի պատկեր
զսրբոց առաքելոցն՝ եցոյց թագաւորին։ Եւ նա տեսեալ ծա-
նեաւ՝ և ասէ, ճշմարիտ սոքա են՝ զոր տեսի ես յանուրջս։ Եւ
առժամայն լցին զաւազանն ջրով. և երթեալ ի տեղին որհ-
նեաց Սեղբեստրոս զջուրն. և մերկացուցեալ զթագաւորն
իջոյց ի ջուրն. և լոյս փայլեաց ի վերուստ ի մարմինս նորա. և
եղև ճարճատումն որպէս ի տապակաց. և անկան որպէս կե-
ղևանք յանձնէն՝ և ելից զջուրն. և ելեալ թագաւորն մաքուր
մարմնով և պայծառ հոգւով։ Եւ մկրտեցան յաւուր յայն-
միկ ի ձեռաց Սեղբեստրոսի ի գետն ոգիք երկոտասան հազար.
զորս ագոյց թագաւորն հանդերձս սպիտակս, և սաւանս, և
կօշիկս, և ամեն միոյ միոյ մոմեղէն մի։ Եւ գրեաց թագաւորն
հրամանս, եթէ ոք հայհոյեսցէ զՔրիստոս, զկէս ընչից իւրոց
յարքունիս տացէ. և անխափան և անարգել՝ ով և կամեսցի՝
մկրտեսցի, և աներկիւղ կործանեսցէ զբագինս կռոցն։ Եւ շի-
նեաց թագաւորն եկեղեցի յանուն սուրբ Փրկչին. և ինքն փո-
րէր և հանէր զհողն, և դնէր [illegible] զքարինս։ Եւ հրամայէր ի մէջ
հրապարակին աղաղակել զօրացն իւրոց քառասուն անգամ,
եթէ Քրիստոնէից Աստուածն ճշմարիտ Աստուած է. և դար-
ձեալ տասն անգամ, եթէ եկեղեցիք Քրիստոսի բացցին. և որք
զՔրիստոս ո՛չ պաշտեն՝ թշնամիք են թագաւորութեանս մեր։
Զայս աղաղակեցին տասն անգամ. և որ կեցոյց զթագաւորն՝
Աստուած է։ Իսկ Հեղինէ մայրն Կոստանդիանոսի էր ի Բեթա-
նիայ՝ և երկու թոռունքն ընդ նմա՝ Կոստանդիանոս և Կոստ։

Եւ ժողովեցան առ նա Հրէայքն՝ և ասեն, որդին քո՞ Թագաւորն մեր՝ բարիոք արար, որ եթող զհաւատն՝ և ընտրեաց ըզկուռս. բայց ճշմարիտ հաւատ ո՛չ ստացաւ. արդ գրեա՛ առ նա, զի Թլփատեսցի և լինիցի Հրէայ իբրև զմեզ։ Եւ նա անարգեալ զնոսա՝ Թշնամանօք դարձոյց։ Եւ գրեաց առ որդին իւր. որ հաստատ(եաց) զհաւատ Քրիստոնէութեանս, և մեծարեաց զՍեղբեստրոս։ Եւ այնպէս փայլեաց սուրբ Հայրապետն յԵկեղեցին՝ որպէս զլոյս։ Եւ զհիւանդս բժշկէր աղօթիւք իւրովք. և զդևս հալածէր ի մարդկանէ։ Եւ բազում Հրէայս և հեթանոսս դարձոյց յԱստուածգիտութիւն. և եղև գլուխ երեք հարիւր և տասն և ութն Հայրապետացն՝ որ ի Նիկիա առաջին Սիւնհոդոսին։ Եւ հասեալ ի բարիոք ծերութիւն՝ հանգեաւ ի Քրիստոս։

## ԳԼՈՒԽ ՀԲ

### Գիւտն երանելւոյն Հեղինէի յԵրուսաղէմ ի խնդիր սուրբ խաչին։

Յետ այսորիկ առաքէ սուրբն Կոստանդիանոս զմայր իւր Հեղինէ յԵրուսաղէմ ի խնդիր խաչին։ Եւ նորա երթեալ ժողովէ զքահանայս և զծերակոյտս Հրէից, և հարցանէր վասն նշանի խաչին։ Եւ նոքա յուքաստ կացեալ չգիտեմք ասէին։ Եւ ապա ի խոշտանգանս արկեալ զերանելին Կիւրեղ մի, զի նովաւ գտաւ փրկականն մեր նշան։ Եւ առեալ տանէին ի քաղաքն ուրախութեամբ. և եդեալ ի վերայ սպանանի մեռելոյն, զոր բարձեալ տանէին ի թաղումն, նա վաղվաղակի կենդանացաւ. զոր տեսեալ երանելոյն դշխոյի՝ լցաւ խնդութեամբ. և տուեալ փառս Աստուծոյ՝ գոհանայր և օրհնէր զԱստուած։ Նաև ամենայն հաւատացեալքն ուրախ լինէին։ Եւ Հրէայքն

զի եղեն ամօթով։ Իսկ երանելին Ներսէս լցեալ հաւատովքն՝ որ առ Աստուած, և մեծաւ փափագանօք դարձեալ խնդրեաց զնշխարս Փրկչին ի Կիւրեղէ։ Իսկ երանելին Կիւրեղ երթեալ ի Կառափման հանդերձ այլ ևս հաւատացեալ եղբարբքն, և մեծաւ հառաչմամբ աղօթս մատուցեալ՝ յանկարծակի փայլեաց յերկրի. զոր առեալ բերէր մատուցանէր աստուածասէր դշխոյին։ Իսկ նա տարեալ խնդութեամբ կոչեաց առ ինքն այր մի հաւատարիմ և գիտուն, և ասէ ցնա, առ ինձ (դուցէ՝ քեզ) զնշխարս զայսոսիկ, և տար՝ զսոսա կոճակս սանձոց ձիոյ թագաւորին. զի եղիցի զէն անվթար առ ամենայն հակառակորդս յաղթութեան թագաւորին։ Զի կատարեսցի ասացեալն ի մարգարէէն, և եղիցի յաւուրն յայնմիկ, որ ի վերայ սանձոց ձիոյ սուրբ Տեառն կոչեսցի։ Նա այսպէս զարդարեալ առաքինութեամբ երանելի սուրբ տիկինն դշխոյ մեծ(աւ) փափագանօք խնդրեաց և եգիտ զփրկական սուրբ Նշանն, և աւանդեաց ի ձեռն երանելւոյն Կիւրղի։ Նա իբրև առեալ զնշխարն եկն առ թագաւորն Կոստանդիանոս, և պատմեաց նմա զամենայն իրս եղելոցն, և ուրախ լեալ ի միասին՝ ետուն փառս Աստուծոյ։

## ԳԼՈՒԽ ՀԳ

### Գնալն Տրդատայ Թագաւորին Հայոց ի Հռոմ առ Մեծն Կոստանդիանոս յաղագս միաբանութեան հաւատոյ։

Ընդ ժամանակս ընդ այնոսիկ թագաւորեաց Կոստանդիանոս՝ որդի Կոստանդնեայ, և հաճոյացաւ Աստուծոյ ի ձեռն իւրոյ ճշմարիտ խոստովանութեանն։ Նա այնպէս յաղթող երևեալ և հաճոյ Աստուծոյ, մինչզի զամենայն ժամանակս կենաց իւրոց հրեշտակ յերկնից երևեալ՝ սպասաւորէր նմա. ընդ առաւօտս

առաւօտս զՔրիստոսին նշան թագին դնէր ի գլուխ նորա. և ինքն ինքեան տեսանէր զապաստաւորութիւն հրեշտակին։ Ապա իբրև լուաւ զայս մեծ արքայն Տրդատ, խորհուրդ առնոյր՝ զի գնասցէ առ սուրբն Կոստանդիանոս։ Հանդերձէր պատրաստէր մեծ Այր Եպիսկոպոսն Գրիգոր և զնորին որդի զԱրիստակէս Եպիսկոպոսն և զԵպիսկոպոսն Աղբիանոս, և ի Նախարարացն զչորեսին գահերէցսն իւրոյ տաճարին՝ որ բդեշխն կոչէին. և զառաջին սահմանակալն ի Նոշիրական կողմանէն, և զերկրորդն յԱսորեստանեայց կողմանէն, և զերրորդն յԱրուաստական կողմանէն, և զչորրորդն ի Մասքթաց կողմանէն. և՝ զայն իշխանսն՝ որ զկնի սրբոյն Գրիգորի գնացին ի Կեսարիայ, և այլ բազում մեծամեծք եւթանասուն հազարաւ ընտիր ընտիր զօրու, և խաղայր գնայր նոքօք յԱյրարատեան գաւառէ յԱրտաշատ քաղաքէ անցեալ ի կողմանս Յունաց՝ երթեալ անցանէր ի կողմանս յերկիրն Իտալացւոց և Գաղմատացւոց ի թագաւորական քաղաքն Հռոմ։ Եւ իսկոյն զգացուցեալ աստուածասէր թագաւորին Կոստանդիանոսի և մեծ Հայրապետին Եւսեբեայ՝ ուրախ եղեն յոյժ։ Եւ մեծաւ պատուով ընդառաջ ելեալ ընդունէին խնդութեամբ. և հարցեալ զմիմեանս յաղագս յառաջագոյն աղետին՝ որ եհաս նոցա ի Տեառնէ, և ապա աքանչելեացն Աստուծոյ, որ գթացաւ ի նոսա. և թէ որպէս ըմբռնմամբ ձգեաց զնոսա ի խաւարէ ի լոյս. և զհաւատալն երկոցունց կողմանցն պատմէին միմեանց. և զէրսն՝ և զեղեալսն՝ և զնմանութիւնսն՝ և զօրինակսն՝ որ ինչ լեալն էին Տրդատայ և Կոստանդիանոսի՝ պատմէին առաջի բազմութեանըն։ Զոր զարմացեալ ամենեցունց՝ տային փառս Աստուծոյ։ Եւ դարձեալ զերանելոյն սրբոյն Գրիգորի նահատակութիւնս և աքանչելիսն պատմէր թագաւորն Տրդատ։ Ընդ որ զարմացեալ երանելին Կոստանդիանոս և իւրքն ամենայն՝ ընդունէին

զնա իբրև զկենդանի վկայ Քրիստոսի, որ արդ(արև) էր նսկ։ Իսկ ապա այնուհետև հաստատեալ ի միջի իւրեանց Հայրապետքն և Թագաւորքն զհաւատ ուղղափառութեան՝ և ըստ մարմնոյ սէր միաբանութեան առ միմեանս՝ հաստատուն պահել ի միջի իւրեանց. և յանձն առնուին զգիր դաշնաւորութեան հաստատուն և անխախտ պահել ի միմեանց կայսրն Կոստանդիանոս և արքայն Տրդատ. նաև Հայրապետքն դնէին ուխտ և դաշինս ընդ միմեանս, զի զսէր հոգևոր և զմիաբանութիւն հաւատոյ հաստատուն կալցեն ի միջի իւրեանց՝ ինքեանք և որ զկնի իւրեանց յաջորդեն յաթոռ Հայրապետութեանն Հայոց և Հռոմոց։ Եւ այնպէս ընկալեալ եղեն ի նոցանէ մեծաւ սիրով։ Եւ հրաժարեալ ի կայսերէն Կոստանդիանոսէ և ի սուրբ Հայրապետէն Եւսեբեայ բազում ընծայիւք և պայծառ պատարագօք դային հասանէին խաղաղութեամբ յաշխարհն Հայոց ի Թագաւորական քաղաքն Վաղարշապատ. և տուեալ ողջոյն հանգստարանի սրբոց Հռիփսիմեանց՝ փառաւորէին զԱստուած։

## ԳԼՈՒԽ ՀԴ

Դարձեալ է նոյն խորհուրդ. և յաղագս սրբոց առաքելոցն Պետրոսի և Պօղոսի և Անդրէի նշխարացն՝ յայլմէ պատմութենէ։

Զայսու ժամանակաւ լուր եհաս առ արքայն Տրդատ՝ եթէ Կոստանդիանոս արքայն հաւատաց յԱստուած, և դադարեցոյց զհալածումն եկեղեցեաց՝ քաջութեամբ կալեալ զԹագաւորութիւնն։ Ապա խորհուրդ արարեալ Տրդատայ հանդերձ իշխանօք և բազում նախարարօք գնալ ի դուռն կայսեր՝ և զսուրբն Գրիգոր ընդ ինքեան տանել յաղագս գնելոյ դաշինս

խաղաղութեան ի մէջ իւրեանց։ Իսկ բազում օթեւանօք խա-
ղաց գնաց մինչև եհաս ի դուռն ծիրանափառ Օգոստեան. և
ընկալեալ եղև մեծաշուք պատուով. ևս առաւել զխոստովա-
նողն Քրիստոսի զսուրբն Գրիգոր յաղագս խոստովանողական
անուանն և կենդանի վկայութեանն ընկալան փառաւորապէս՝
տեղեկացեալ ի նոցանէ զամենայն սքանչելիսն Աստուծոյ՝ որ
գործեցաւ առ նոսա ի Հայս։ Իսկ ինքն կայսրն՝ զոր ինչ առ
նա ինքն եղև տեսութիւն սքանչելի ի ձեռն խաչանման աստեղն՝
պատմեաց նոցա։ Իսկ կեց (կացին) անդ աւուրս բազումս։ Իսկ
խնդրեալ սրբոյն Գրիգորի մասն ինչ ի նշխարաց սրբոց առա-
քելոցն Պետրոսի և Պօղոսի. և տուեալ նոցա թագաւորական
հրամանաւ սրբոյ Հայրապետին Հռոմայ, զոր առեալ ուրախ
եղեն յոյժ. ետ զահեկ ձեռն սրբոյն Անդրէի առաքելոյն. և
առաւել մեծարելով զնոսա զայնքան աւուրս. զոր ապա առեալ
մեծաւ խնդութեամբ զգանձն աստուածային, և ելեալք ի
քաղաքէն՝ յետ բազում աւուրց եկին յաշխարհն Հայոց։ Իսկ
հասեալ ի գաւառն Եկեղեաց ի Թիլն աւան, և հանգիստ
առեալ անդ աւուրս ինչ, երթեալ գնաց Տրդատ ի գաւառն
Այրարատեան ի բուն աւանն արքունի ի Վաղարշապատ քա-
ղաքն. իսկ սուրբն Գրիգոր մնացեալ սակաւ ինչ ժամանակս
անդէն ի գաւառն Տարօն՝ ընդ իւր ունելով զաստուածային
առաքելական գանձս ոսկերաց առ ի կործանել զկուռսն՝ որ
յԻննակնէն տեղիսն Գիսանեայ. և փոխեալ զանուն տեղւոյն
կոչեաց Գլականս ի կայանս նշխարաց սրբոյն Կարապետին։

## ԳԼՈՒԽ ՃԵ

Յաղագս Թագին երանելոյն Կոստանդիանոսի՝ թէ ուստի՞ կամ ո՞րպէս յանձնեցաւ եղև նմա ի Տեառնէ՝ Շափոյ որէոյ (Շապհոյ՝ որդւոյ) Աշփոյ տեղանի պատերազմն ասացեալ է Պարսմա-Բեան երկրոյ։

Կոստանդիանոս թագաւորէ ամս երեսուն և երեք։ Սա եղեալ ի կողմանս Բիւզանդացւոց՝ շինեաց քաղաք՝ և կոչեաց զանուն նորա Կոստանդնուպօլիս։ Սա եհան ի Հռոմայ ընդ իւր մասն ինչ ի նշխարացն Պետրոսի և Պօղոսի՝ ի հաստատութիւն թագաւորանիստ քաղաքին իւրոյ. որ կան ի մեծ եկեղեցւոջ, որ կոչի Սուրբ Առաքեալք։ Վկայէ այսմիկ Գրիգոր Աստուածաբան. քանզի ասէ ի ճառին՝ որ ի գալ Եպիսկոպոսացն ի հրաժարական բանսն, թէ ուրախ լերո՛ւք ով առաքեալքդ, գեղեցիկ փոխադրութիւն։ Արդ քանզի ասի բան, եթէ ի ժամանակին՝ յորում եբարձ Յովաբ զթագաւորութիւն յորդւոցն Ամոնայ, առաքեալ զթագս զայս ի տանէ զանձուց նոցա՝ առնէ ի գլուխ Դաւթի արքայի, և ի նմանէ Սողոմոնի, և ի Սողոմոնէ Ռոբովամ, և ապա Աբիայ, և Ասափ և Յովսափաթ. և ի նոցանէ նոյնպէս ամենայն թագաւորք Յուդայ, և հուսկ յետոյ Սեդեկիայ, և Յաքոնիայ. զոր գերեալ Նաբուգոդոնոսորայ արքային Բաբելացւոց, և զնոյն թագաւորեալ ի Բաբելոն, և նովիմբ պսակեալ ինքն և իւրքն ամենայն՝ մինչև յաւուրս Կիւրոսի արքային Պարսից. և ի նմանէ հասանէր մինչև ի Դարեհ Պարսից արքայ. զոր սպան Աղեքսանդր Մակեդոնացի։ Եւ ի նմանէ յափշտակեալ թագս այս մնայ մինչև ցԱնտիոքոս։ Զոր վանեալ մեծ քաջին Արշակայ պահուաղի (Պալհաւի) առնու զթագն, և այս լինի մինչև ցՇապուհ՝ որ անուանեցաւ արքայից արքայ. որ հնազանդեցաւ սիրով մեծին Կոստանդիանոսի։ Արդ ցանկայր Կոստանդի-

անուս նախնական և մարգարէական պսակին լինել իւր աստուածահաճոյ թագաւորութեանն։ Զայսու ժամանակաւ առաքէ Շապուհ արքայից արքայ առ մեծն Կոստանդիանոս՝ աղաչել զնա խնդրել զդաշնաւորութիւն և զսէր հաստատութեան ի մէջ երկոցունց։ Իսկ նորա հաւանեալ ըստ օրինի Քրիստոնէութեան՝ կատարել զխնդիրսն. բայց հայցէ և նա ի Շապհոյ զպսակ թագին. զի ըստ նմին օրինակի տայցէ կազմել յանուն իւր. և զնորայն անդրէն ի նա դարձուցանել. և այն լինէր յաղագս փափագման անդրանիկ թագաւորին և մարգարէին Դաւթի։ Իսկ նորա առաքեալ զկնի արանց հաւատարմաց. զոր տեսեալ մեծին Կոստանդիանոսի, ժողովեալ զճարտարապետս արուեստին այնորիկ՝ և հրամայէ ձուլել ըստ նմին օրինակի։ Իսկ ի կատարումըն եկեալ գործոյն՝ հրամայէ դնել ի վերայ ոսկի սեղանոյն, և հայցէր յԱրարչէն՝ զի մնասցէ առ ինքն նախնական պսակն։ Իսկ կոչեցեալ առ ինքն զհաւատարիմսն Շապհոյ՝ հրամայէ առնուլ յինքեանս զբերեալ թագն ի թագաւորէն իւրեանց։ Իսկ նոցա կուրացեալ միտք և աչք յաստուածային իմն զոգցես տեսչութենէ՝ զառ ի Յունաց զձուլեալն առեալ յինքեանսն գնացին թողլով անդրէն զտենչալին մեծի թագաւորին Կոստանդնայ։ Զոր առեալ դնէր ի վերայ պատուական գլխոյ իւրոյ. որում սպասաւորէին հրեշտակք. և այսմ վկայէ գիրք կանոնացն Նիկիայ, թէ այգոյն այգոյն սպասաւորեն հրեշտակք, որ մինչև ցայսօր ժամանակի կայ ի թագաւորական պաղատին։ Զոր և յաւուրս Մեծի Երկշաբաթոջն պսակին այնմ թագաւորք Հռոմոցն՝ յետ մեծի Կիւրակէին Պասեքին՝ յորժամ դառնան ի հրաշալի եկեղեցւոյն, յորում է տապան նորուն սրբոյն Կոստանդիանոսի և այլոց ուղղափառ թագաւորացն։ Նա և (ի) յատակս բեմին կայ հանգիստ մեծի Հայրապետին Յովհաննու Ոսկեբերանին։ Նոյնպէս և յերկրորդ կիւրակէն, որ կոչի Նաւակատեաց, որ նովին

թագուհին պսակին դառնալով ի մեծ եկեղեցւոյն՝ որ կոչի Սուրբ Մոգք։ Արդ ասացաք զորպիսութիւն թագին ի պատմութենէ Շափոյ։

## ԳԼՈՒԽ ՀԶ

### Ստուգաբանութիւն յաղագս Տրդատայ Թագաւորելոյն։

Գրեցաք ի մերումս պատմութեան միանգամ և երկիցս յաղագս Տրդատայ թագաւորելոյն, թէ ե՞րբ և յորո՞ւմ ժամանակս եղև։ Բայց ոչ միաբանէին ընդ միմեանս Զենոբ և Մովսէս վասն նորա. զի Զենոբ ի Պռոպայ ասէ թագաւորեալ Տրդատայ. և թագաւորեալ յորժամ զԳոթացն արար ձերբակալ զթագաւորն. և նա երախտահատոյց լեալ Տրդատայ՝ թագ եդեալ թագաւորեցոյց զնա, և առաքեաց զօրօք իւրովք ի Հայս։ Իսկ Մովսէս ի Դիոկղետիանոսէ՝ ասէ՝ թագաւորեալ. վկայէ և այսմ գիրք Կայսերացն։ Բայց Մովսէս ստուգաբանեալ՝ ասէ այսպէս։ «Քանզի ո՛չ է վկայութիւնն ճշմարիտ՝ ասէ՝ առանց ժամանակագրութեան. վասնորոյ մանրախուզիւ քննեալ գտաք զթագաւորելն Տրդատայ յերրորդ ամի Դիոկղետիանոսի կայսեր՝ և գալ այսր հանդերձ մեծաւ զօրու։ Դարձեալ այլ ստուգաբանեն. նախ քան զայս սկսեալ ի ժամանակէն Պռոբայ մինչև ի թագաւորելն Դիոկղետիանոսի՝ Յունաց թագաւորէ՝ ասէ՝ Պռոբոս, և խաղաղութիւն արարեալ ընդ Արտաշրի՝ բաժանէ զաշխարհս մեր սահմանադրութեամբ փոս գործելով։ Եւ դարձեալ զմահն յայտ առնէ, թէ ի պատերազմելն Պռոբայ ընդ Գոթս՝ յարեան ի վերայ նորա զօրքն իւր, և սպանին զնա։ Եւ թագաւորեաց զկնի նորա Կարոս Կառինաւ հանդերձ և Նումերիանոսիւ. և պատերազմեալ ընդ արքային Պարսից յեզր

Եփրատու՝ մեռաւ Կարոս. և Կառինոս ի Կուռնակայ սպանաւ յանապատին։ Ընդ նոյն աւուրս և Նումերիանոս լինի սպանեալ ի Թրակէ. և փոխանորդեալ զթագաւորութիւնն Դիոկղետիանոս. և այսպէս կարճ ի կարճոյ զկնի միմեանց զմահն նոցա, և ի միջոցի այսմ զրուցաց առաջի և զկնի նոցա պատմէ և զքաջութիւն Տրդատայ։ Սա՝ ասէ՝ զերկուց ցլուց վայրենեաց միով ձեռամբ կալեալ զեղջերուէ թափեաց հանդերձ ընդվըզեալ ջախջախմամբ. և ի ձիընթացս կառացն վարել կամեցեալ՝ ի հմտութենէ հակառակադրին ոստուցեալ յերկիր անկեալ. և բուռն հարեալ Տրդատայ՝ արգել զկառսն. ընդ որ զարմացեալ ամենեքեան։ Նա և դարձեալ ի պատերազմելն Կոռնակայ ընդ Կառինոսի՝ վիրաւորեցաւ երիվարն Տրդատայ. և առեալ զզէնն իւր և զկազմած ձիոյն՝ դէպ ուղեղ ընդ լայնատարած խորապատակն անցանէր ընդ Եփրատ ընդ զօրսն իւր՝ ուր Լիկիանէսն էր։

Փառք փառաց փառաւորելոյն յամենայն յարարածոց, ամէն։



# ՑԱՆԿ

## ԱՌԱՋԻՆ ՀԱՏՈՒԱԾԻ

Երես

Երես

Երես








## ՈՒԽՏԱՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

ՀԱՏՈՒԱԾ ԵՐԿՐՈՐԴ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# Բաժանման Վրաց ի Հայոց

## ՈՒԽՏԱՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ

---

### ՀԱՏՈՒԱԾ ԵՐԿՐՈՐԴ

---

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԲԱԺԱՆՄԱՆ ՎՐԱՑ Ի ՀԱՅՈՑ

---

### ԳԼՈՒԽ Ա

Ի ժամանակս թագաւորութեանն Հոռոմայեցւոց Մուրկայ, և ի բռնակալութեան Պարսից եւթնեւտասներորդ ամի Ապրուեզ—Խոսրովու արքայից արքայի, և ի տէրութեանն Տեառն Սմբատայ Վրկան Մարզպանի Հայոց մեծաց՝ եկաց յաթոռ Հայրապետութեան Հայոց՝ Աբրահամ. որ էր քսաներորդ վեցերորդ ի սրբոյն Գրիգորէ, ի գաւառէ(ն) Ռշտունեաց: Սա կեցեալ ամս քսան և երեք: Ի սորա ժամանակս եղև բաժանումն Վրաց ի միաբանութենէ Հայոց ի ձեռն Կիւրոնի Վրաց Առաջնորդի, և հաճեցան լինել կցորդակից չար (աղ)անդւոյն ՙՔաղկեդոնի, փոխեալ զօրէնս սրբոց հարցն, և մոռացեալ զուխտն աստուածեղէն: Իսկ Կիւրոնի ընկալեալ էր ձեռնադրութիւն ի Մովսիսէ Հայոց Կաթուղիկոսէ. զորոյ զկնի մահուան նորա յաջորդէ զաթոռն Աբրահամ, զոր վերագոյն ասացաք: Իսկ զԿիւրոնէ, թէ ուստի՞ կամ յորմէ՞ գաւառէ և ի գեղջէ է, և կամ որո՞վ օրինակաւ եկեալ ի Հայս՝ ասացից սակաւիկ զպատճառն: Սա էր աշխարհաւ և ազգաւ ի Վրաց՝ ի գաւառէ Ջա-

ւանեաց՝ ի գեղջէ՝ որ կոչի Սկուտրի․ և ունէր զդպրութիւն վարուն Վրաց և Հայոց։ Եւ երթեալ յերկիրն Հոռոմոց բնակեցաւ անդ ամս հնգետասան՝ ի գաւառին՝ որ կոչի Կղարջիաց․ և բընակի անդ ի մեծ քաղաքագեղն Նիկոպօլիս կոչեցեալ՝ յեզր գետոյն՝ որ կոչի Գայլ։ Եւ վարժեալ և ուսեալ զդպրութիւն նոցա, և զայլ ևս չարարուեստ գիտութիւն, որով որոշեցաւ ի մէնջ։ Եւ ելեալ անտի գնաց ի Հայս առ Մովսէս Կաթուղիկոսն Հայոց, և բնակէ առ նա ի սուրբ Կաթուղիկէին որ ի Դուինն քաղաքի։ Քանզի յայնմ ժամանակի անդ էր աթոռ Հայրապետութեանն Հայոց։ Եւ նա կացուցանէ զնա Վանայ Երէց սրբոյ Կաթուղիկէին, այլև Քոր Եպիսկոպոս՝ տալով նմա զփոխանակ զգաւառն Այրարատեան։ Եւ կացեալ ի նմին ամս հինգ․ ապա ընդ այն ժամանակս մեռանի Կաթուղիկոսն Վրաց։ Եւ առաքեն իշխանք աշխարհին և նախարարքն հանդերձ Եպիսկոպոսօքն առ Մովսէս Կաթուղիկոսն Հայոց՝ խնդրել յերեանց Առաջնորդ։ Իսկ նա խորհուրդ արարեալ՝ զի ի տանէ իւրմէ տացէ նոցա Առաջնորդ յաղագս հաւատարմութեանն և միաբանութեան հաւատոյ երկոցունց կողմանցն, միանգամայն և վասըն հաստատելոյ զուխտ առաջնոց հարցն՝ որք նախ քան զնա, ձեռնադրէ զԿիւրոն՝ որպէս յառաջն ասացաք՝ իւր համարելով զնա, եթէ հաւատարիմ զնա վարկանելով և միամիտ ի դրան իւրում, անգիտացեալ զծածուկ նորա սրտին։ Առաքէ զնա ի ձեռն Պետրոսի Եպիսկոպոսի՝ որ էր ի Վրաց աշխարհէն՝ և այլ ևս նախարարաց եկեալ ընդ նմա մեծաւ պատուով։ Իսկ յորժամ եհաս Կիւրոն ի վիճակ իւրոյ իշխանութեանն և ի քաղաքն իւրեանց՝ որ կոչի Մցխեթայ, ժողովէ առ ինքն զԵպիսկոպոսունսն հանդերձ լաւօք աշխարհին և զիշխանս և զնախարարս, և նուաճէ նոքօք հանդերձ առհասարակ զամենայն աշխարհն ընդ իւրով իշխանութեամբ։ Իսկ ապա յոր-

ժամ տեսանէր զամենայն յաջողեալ ըստ կամաց իւրոց, այնուհետեւ խորհուրդ նենգութեան ի միտ արկեալ՝ ձեռնադրէ Եպիսկոպոս մի խուժիկ Նեստորական. որում անուն Կիս կոչիւր, որ է խստութիւն: Քանզի և էր իսկ խիստ, և խստութեամբ վարեցաւ ի տեառնակոչումն կոյս, և ի ցամաքութիւն ցասմամբ բարկացոյց զՏէր: Սա եկեալ առ նա յաշխարհէն Հոռոմոց՝ ի գաւառէն Կողոնեայ՝ բնակութեամբ ի գեղջէն՝ որ կոչի Զուտարիմայ, մերձ ի Նիկոպոլիս, և են երկոքեան յեզր Գայլ գետոյ, որպէս նախասացեալ եղև. որ կարծեմ ոչ միայն գաւառակից միմեանց լեալ կամ գեղակից, այլև աղանդակիցք և ուսումնակիցք չար ուսմանց ի չար վարդապետաց. և ձեռնադրէ զնա Օտարատեսուչ՝ այսինքն աղանդաւոր Եպիսկոպոս. և միաբանեալ ընդ դէմ միմեանց՝ որպէս Արամն ընդ Եփրեմի, և դարձեալ որդին Արամայ և որդին Հոռոմդայ խորհեցան խորհուրդ չար, և զարհուրեցաւ անձն նոցա: Զոր ասէ Տէր զօրութեանց, մի՛ կացցէ խորհուրդն այն: Եւ դարձեալ այլ խորհուրդ չար հանգոյն Կիւրոնի և խուժիկին այնմիկ. զոր Տէր սպառնայ մարգարէին, մի՛ կալ խորհուրդն այն հաստատուն և կամ թէ հաւասար նոցա: Որպէս ասէ, այս Մասակ զայն Մասակն. որ ննջեաց առ ի սպանումն սրբոցն լի նենգութեամբ և դաւաճանութեամբ հակառակ ճշմարտութեան զինքեանս սրեալ: Եւ այնպէս լծակից լեալ Կիւրոնի անհաւատութեան ժողովոյն Քաղկեդոնի՝ ունելով ի ծածուկ յինքն իւքեան հաւանութեամբ զհաւատս նոցա, վաղուրեմն ներկեալ ի գոյն երկաբնակացն, թէպէտ և խուժկէն դարձեալ նորոգումն եղև:

Արդ ձեռնադրէ զխուժիկն զայն Եպիսկոպոս՝ որպէս ասացաք՝ զանխլաբար ունելով ի Մովսիսէ ի Հայոց Կաթուղիկոսէ՝ մինչև յայտնեցաւ խորհուրդ նենգութեան նոցա. զոր ի վաղնջուցն էր ծածկեալ: Իսկ երանելին Հայրապետն Մովսէս՝ նմա-

նեալ մեծին Մովսիսի նախամարգարէին՝ քաղցր և հեզ առ ամենեսեան։ Սա էր ի գաւառէ Արագածոտանէ, ի գեղջէ Եղիվարդայ։ Սա կացեալ յաթոռ իւրոյ Հայրապետութեան ամս երեսուն։ Ի սորա տասներորդի ամի աթոռակալութեանն՝ ի սորին իսկ հրամանէ եղաւ Թուականութիւնս Հայոց Խորգոմեան՝ և պատճէն տոմարի Հայ ամսոց։ Ի սորա քսանևհինգերորդ ամի կալաւ Կիւրոն զաթոռ Կաթուղիկոսութեանն տանն Վրաց. որ և Սաւղաքար երկրորդ ամ եղև նմա հնազանդել ճշմարտութեան։ Ապա այնուհետև սկսաւ ամբարշտել և ստել ճշմարտութեան. ձեռնադրէ զԽուժիկն ի յերրորդ ամի իւրոյ Հայրապետութեան։ Ապա իմացեալ զայն Եպիսկոպոսին Մովսիսի՝ որ ի Ցուրտաւ, որ այժմ կոչի Գաշքէնք. որ և նա ընկալեալ էր ձեռնադրութիւն ի Կիւրոնէ՝ մինչդեռ յուղղափառութեան էր, յառաջի ամի իւրոյ Հայրապետութեան. զոր և յիւր իսկ ի Թուղթսն յիշէ Կիւրոն նոյն բան։ Արդ ծանուցանէ Եպիսկոպոսն Ցուրտաւայ բանիւ և ի ձեռն գրոյ՝ Հայրապետին Մովսիսի՝ զեղեալսն ի Կիւրոնէ՝ որ վասն Խուժկին եպիսկոպոսին՝ և որ այլ ինչ գործք ի նմանէ գործեալ էր։ Զոր տեսութեամբ և իմացութեամբ ի վերայ հասեալ սուրբիւ, և եթէ զՔաղկեդոնին ունի զհաւատ՝ պատրուակեալ զինքն կեղծաւորութեամբ՝ որպէս պատմէ ինքն իսկ յիւր Թուղթսն։ Արդ երանելի Եպիսկոպոսս այս՝ զորմէ ասացաք ճըշմարտասէր և բարեփառ ունել զինքն միջնորդ խաղաղութեան ի մէջ երկոցունց կողմանց Հայոց և Վրաց՝ իբրև թէ միջնորդ խաղաղութեան գոլ և հաստատութեան հաւատոյ ի մէջ երկոցունց՝ որպէս պատմի ի գիրս Թղթոցն։

Քանզի և էր միջնորդ խաղաղութեան, և ունէր դպրութիւն զՀայոց և զՎրաց։ Քանզի երթեալ էր ի տիս տղայութեան իւրոյ ի գեղաքաղաքն Ցուրտաւ. և ի նմա սնեալ և ուսեալ

զդպրութիւն զմերս եւ զԱյրաց՝ աշակերտեալ երանելի Եպիս-կոպոսացն՝ որք զաթոռն զայն ունէին՝ որք նախ քան զնա. որ այս եւ իւրն շնորհեցաւ ի Տեառնէ՝ յաջորդեալ զաթոռն երե-սնամեայ գոլ(ով)։ Արդ իբրեւ լուաւ Կաթուղիկոսն Մովսէս զեղ-եալսն ի Կիւրոնէ, ի տարակուսի լեալ հոգայր. եւ սուգ առեալ որպէս Սամուէլ ի վերայ Սաւուղայ՝ ասելով զբանս զայս, եթէ զղջացեալ, զի թագաւորեցուցի զՍաւուղ թագաւոր ի վերայ Իսրայէլի. եւ այնպէս սուգ առեալ սակս Կիւրոնի կո-րստեան՝ խնդրէր ի միտ իւրում զելս իրացն։ Ապա այնուհետե-ւեւ գրէ թուղթ առ Կիւրոն սիրոյ պատճառաւ, եւ առաքէ ի ձեռն Ստեփաննոսի Եպիսկոպոսին, որ էր ի դրան իւրում, սակաւ ինչ անդրխօսանալով զեղեալսն ի նմանէ. զի թերեւս կա-րասցէ շահել զնա, եւ խնամել զմեղկ միտս նորա։ Արդ գրէ նախ զպաշտեալ ի փառս եւ ի գնացս, եւ կալ հաստատուն ի հաւատս ճշմարիտս՝ եւ հեռանալ ի հայհոյութենէ աղանդոյն Քաղկե-դոնի, միաբանական եւ վասն խուժիկ Նեստորին գրէ, գրելով ի նմանէ ասուցիւ։ Իսկ նա տակաւին եւս ծածկէր խորհրդով զպարզամիտսն, եւ առժամայն շինելով զմիտս Կաթուղիկո-սին Մովսէսի։ Եւ այս լինէր յանիշխանութեան Հայոց. քանզի բարձեալ էր թագաւորութիւնն յազգէ Արշակունեաց. եւ զաշխարհս յերկուս բաժանեալ էին Պարսիկք եւ Հոռոմք։

8

# ԳԼՈՒԽ Բ

## Թուղթ Տեառն Մովսէսի Հայոց Կաթողիկոսի առ Կիւրոն Վրաց Կաթողիկոս։

*Կիւրոնի Վրաց Կաթուղիկոսի և այլ Եպիսկոպոսաց աթոռակցաց քոց՝ ի Մովսիսէ Հայոց Կաթուղիկոսէ և յայլ Եպիսկոպոսաց աթոռակցաց իմոց՝ սիրով ողջոյն։*

*Յառաջագոյն իսկ՝ մինչդեռ առ մեզն էիր՝ խօսեցաք ընդ քեզ բան խրատու և մխիթարութեան. որպէս սիրելի եղբօր և աթոռակից՝ որպէս և եսդ, և եղիցիս արժանապէս գնալ քեզ ի ճանապարհս Տեառն, և պահել զպատուիրանս նորա սուրբ սրտիւ և անկեղծաւոր հաւատով, և զգուշանալ ի վարս և ի գնացս, և բարիոք հովուել և հովուապետել, և զգոյշ լինել հօտիդ՝ որ քեզ հաւատացաւ. և այլ ամենայն պատուիրանք Տեառն՝ որ յայդ բան բովանդակին։ Եւ դարձեալ զնոյն գրեմ գնալ արժանապէս ի ճանապարհս Տեառն, և երանելի լինել ըստ մարգարէին ձայնի, և ոչ գնալ ի խորհուրդս ամբարշտաց, և յիշել զամենայն բանս Աստուածաշունչ հին և նոր Կտակարանաց, որ պատուիրեն մեզ՝ պահել զպատուիրանս Տեառն ուղիղ մտօք և ճշմարիտ խոստովանութեամբ, և ոչ խոտորել ի ճանապարհաց Տեառն յաջ կամ յահեակ. և ես զնոյն խնդրեմ լսել ի քէն։ Բայց արդ լսեմ, թէ հերձուածք գոն ի քեզ. և սակաւ ինչ հաւատացի։ Բայց հաւատացի, վասնզի ի հաւատարիմ վկայից եղև ծանուցեալ։ Եւ լուաք այսպէս. եթէ այր մի Խուժիկ Նեստորական եկն առ քեզ, և ի քէն առեալ ձեռնադրութիւն Եպիսկոպոսութեանն. և զարմացայ յոյժ, զի զայնպիսին ոչ միայն ի պատիւն յայն ածել արժան էր, այլև պատժել, և ի ժողովս հաւատացելոց ոչ ընդունել. զի դայլ ոչ*

երբէք բնակի ի մէջ ոչխարաց, այլ եթէ երբէք բնակել հանդիպի՝ օձոտէ և ցրուէ զնոսա։ Նմանապէս և գողք. զի գող ոչ գայ՝ եթէ ոչ զի գողասցի և սպանցէ և կորուսցէ՝ ասաց մեզ Տէրունական բանն։ Վասնզի այնպիսիքն գողք են և աւազակք և գայլք յափշտակողք. և դարձեալ սուտ առաքեալք և մշակըք նենգաւորք, և կերպարանեին զգեստիւք ոչխարաց, և ի ներքոյ գայլք են յափշտակողք. յայնպիսեացն զգուշանալ մեզ հրամայեաց Տէրն քաջ. որ եդ զանձն իւր ի վերայ ոչխարաց. և ապա յաւուր վրիժուց հատուցման հատուցանէ նոցա որոշելով ի ձախակողմն կոյս՝ ասելով, երթայք անիծեալք յինէն, և որ ի կարգին է բանն։ Նա դարձեալ, եթէ ի բաց կացէք յինէն ամենայն մշակք անիրաւութեան. զի ոչ գիտեմ զձեզ։ Նաև ընդ մէջ կտրեսցէ զնոսա, և զմասն նոցա ընդ անհաւատոն դիցէ. զի և առաքէ ի տեղին, զոր պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա։

Արդ գիտեմք՝ զի անգիտութեամբ արարեր զայդ։ Արդ դարձիր և ապաշաւեա հանդերձ ապաշխարութեամբ. և արտասուօք ասա դու զմարգարէին. Տէր մի՛ յիշեր զմեղս մանկութեան իմոյ և զանգիտութեան. և այլ մի՛ ևս տացես տեղի բնակութեան Խուժկին այնորիկ ի մէջ հաւատացելոց։ Նա պատուիրեա մեծաւ սաստիւ, զի մի՛ ոք իշխեսցէ ընդունել զնա ի յարկս իւր, և մի՛ տալ նմա ողջոյն ամենևին, և մի՛ տեղի բնակելոյ նմա ընդ իշխանութեամբ քոյ։ Նա դարձեալ մի՛ երբէք ողջոյն տալ նմա ի հաւատացելոց քոց. վասնզի հրաման առաք յաստուածային պատուիրանաց՝ այնպիսեացն ողջոյն ոչ տալ. այլ դու ապաշաւեա հանդերձ արտասուօք և ողորմութեամբ աղքատաց, և ապաշխարեա մեծաւ զղջմամբ. զի ապաշաւելն (է) դադարելն ի մեղացն։ Զի եթէ մեղիցես, դարձցիս ասէ. և թէ ուղղեսցես, յերկար ձգեսցիս. և յորժամ դարձցես և յոգւոց

հանիցես և հեծեծիցես։ Արդ դարձցի՛ն առ Աստուած՝ որ խնդրեն զնա, գրեալ է։ Վասնզի զդարձն միայն խնդրէ Աստուած. դարձարո՛ւք առ իս՝ ասէ, և ես դարձայց առ Ձեզ ։ Արդ մի՛ լինիր չարի յիշատակ, և մի՛ դտիչք չարեաց. վասնզի ունիս բազում պատուիրանաց յիշատակ. զչարի գործովք մի՛ զանց առներ։ Արդ այսոքիկ քեզ պատուէր ի գրոց սրբոց. զի սիրեսցես զՏէր Աստուած քո. քանզի այն է պատուիրանն Աստուծոյ՝ զի սիրեմք զնա ի սուրբ սրտէ և յանկեղծաւոր հաւատոյ. զի գրեալ է, սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ և զօրութենէ, և որ այլն ևս։ Այս է առաջին պատուիրանն. և ամենայն գիրք աստուածայինք յայս բան բովանդակին։ Արդ պահեա՛ զհաւատ և զխոստովանութիւն սրբոց հարցն, զոր ինքեանք դաւանեցին, և զնոյն մեզ աւանդեցին երեք հարիւր տասն և ութքն՝ որ ի Նիկիայ, և հարիւր և յիսունքն՝ որ ի Կոստանդնուպօլսին, և երկերիւրքն որ յԵփեսոս, խմա զայն՝ որ ի ժամանակս Կաւատայ արքայից արքայի խնդիր եղև քննութեան հաւատոյ. և Հոռոմք զՔաղկեդոնին ընկալան զհաւատս. և մեր աշխարհս և ձեր հրաժարեցին՝ և հեռացան. և դեռ ևս գրով կայ և պահի մեր և ձեր միաբանութիւն հաւատոյ։ Արդ մի՛ ստեր ուխտի հարցն մերոց՝ որ եդին ի մէջ երկոցունց. և մի՛ մեկներ ի միաբանութենէ մերմէ. և մի՛ թողուր զուսումն մանկութեան. և մի՛ մոռանար զուխտն աստուածեղէնս և մի՛ ձայնակից լինիր Հոռոմոց. և մի՛ դառնար սրտիւք քո յԵգիպտոս. այլ յիշեա՛ ուստի ելեր ի Նոր Եգիպտոսէ, և ի փշողէ քեզ զփարաւոնի դառն տանէն Հոռոմոց, և ի չար վերակացուացն, և ի դառն ծառայութենէ. մի՛ յանդիմանիր ի մարգարէէն, թէ ո՛չ կացին Նոքա յուխտին Տեառն, և ըստ իրանց (իրաւանց) նորա ոչ կամեցան գնալ։ Եւ այլուր թէ՝ դարձան սրտիւք իւրեանց յԵգիպտոս։ Արդ մի՛ յենուր ի ցուպն եղեգնէ

ի ջախջախեալն. զի թէ յենուցուս, վնաս ոչ սակաւ առնիցես անձին քում:

Մի՛ քակեր զցանկ հայրենի, զոր հաստատեցին սուրբ հարքն վիմօք հաւատոյ: Զի որ քակէ զցանկ, հարցէ զնա օձ. և որ գլէ վէմ, կորուստ անձին իւրոյ առնէ: Արդ հաստատուն կայ զխոստովանութիւն երից սուրբ ժողովոցն. զոր հայքն մեր և ձեր միաւորական գրով հաստատեցին ի մէջ իւրեանց, որ դեռ ևս կայ: Նոյն փախիր անչափ հեռաւորութեամբ ի պիղծ ժողովոյն Քաղկեդոնի և յանընդունակ տոմարէն Լևոնի. և նզովեա զամենայն հերձուածողսն զառաջինսն և զմիջինսն և զվերջինսն, զոր սուրբ հարքն նզովեցին, և մեք նզովեմք. և բարձ զամենայն չար ի միջոյ: Վասնզի գրեալ է, բարձէք՝ ասէ՝ զչարն ի միջոյ ձերմէ: Նոյն դարձեալ, ելէք ի միջոյ նոցա և մեկնեցարուք, և ի պիղծս մի՛ մերձենայք. և ես ընկալայց զձեզ՝ ասէ Տէր: Արդ զխուժիկն զայն հալածեա յերկրէ քումմէ և յաշխարհէ, մի՛ դարձեալ արմատ դառնութեան ի վեր երևեալ, և նովաւ բազումք պղծեսցին:

Յիշեա, զի եկիր բնակեցար ընդ հովանեաւ սրբոյ Կաթուղիկէիս, և ծառայեցեր միամտութեամբ սրտի քո ի ձեռն հոգևոր ծառայութեանն՝ որ քեզ հաւատացաւ ի մէնջ. և մեք վստահացեալ ի կեանս քո՝ առ սէր քո՝ արարաք զկամս քո՝ Առաջնորդ զքեզ կացուցանելով աշխարհիդ այդմիկ. զի թէպէտ և էիր ազգաւ և բնակութեամբ յաշխարհէդ, այլ վաղուց ուրեմն հեռացեալ և օտարացեալ ի Հռոմայեցւոցն վարեցար աշխարհ:

Իսկ շնորհք Հոգւոյն՝ որ կոչեաց զքեզ ի կոչումն յայդ հոգեւոր, իբր ըմբ(ռն)մամբ իմն ձգեաց և եհան զքեզ յերկաթի հնոցէն՝ և ի միջոյ հալոցացն Հոռոմոց բռնութենէն. վասն զի փառք Տեառն ի կղզիս ծովու. և անուն նորա փառաւոր եղիցի յամենայն տեղիս հեռաւորս: Արդ մի՛ լինիր պատճառ կորստեան

քեզ և ժողովրդեան քում, զի մի՛ գուցէ հասանիցեն նզովք ի Տեառնէ յաղագս քո ի վերայ ժողովրդեան երկրիդ՝ ըստ ասելոյ մարգարէին, եթէ նզովք կերիցեն զերկիր. զի մեղան բնակիչք նորա, և մնասցեն մարդք սակաւաւորք։ Իսկ դարձեալ, եթէ առաքեսցէ Տէր ի պատիւ քո անարգանս, և զփառս հանցէ ի քէն։ Իսկ դարձեալ, եթէ յորժամ կատարեսցէ Տէր առնել զամենայն ինչ, ածցէ զձեռն իւր ի վերայ մեծամտին, և որք զանձինըս առ իմաստունս ունին, և խորհեցան խորհուրդ այլ ո՛չ Տերամբ։

Արդ զայսոսիկ ի բազում վշտաց և ի նեղութենէ սրտի գրեցի առ քեզ։ Քանզի սէրն Աստուծոյ ստիպէ զմեզ խօսել զբանս ճշմարտութեան՝ որ վասն նորա։ Ողջ լե՛ր ի Տէր։

Իսկ զպատասխանիդ թղթոյդ ըստ կամաց Աստուծոյ եղեցի մեզ լսել։ Ողջ լեր ի Տէր։

## ԳԼՈՒԽ Գ

### Պատասխանի թղթոյն Տեառն Մովսէսի Հայոց Կաթողիկոսի ի Կիրոնէ Վրաց Կաթողիկոսէ։

Սրբասիրի և պատուականի Տեառն իմոյ՝ Մովսէսի Հայոց Կաթողիկոսի՝ և ամենայն Եպիսկոպոսաց Աթոռակցաց քոց՝ ի Կիւրոնէ Վրաց Կաթողիկոսէ խոնարհ երկրպագութեամբ և սիրով ողջոյն, և յամենայն աթոռակցաց իմոց Եպիսկոպոսաց՝ կրկին խոնարհութեամբ և երկրպագութեամբ ողջոյն և օրհնութիւն ձեզ ի սուրբ Խաչէս։

Զթուղթս ձեր՝ զոր գրեալ էիք՝ ընկալաք և հասու եղաք։ Իսկ զպատգամն՝ զոր արարեալ էիք՝ լսեցաք յԵպիսկոպոսէս. և որ գրով և բանիւ հոգացեալ էիք զմեզ խրատական վարդապե-

տակաւ բանիւ, նա և յանդիմանեալ էիք որպէս Տէր և Վարդապետ և Հայր հոգևոր, որպէս և էք իսկ, երկիրպագի և շնորհակալ եղէ ձեր հոգևոր սիրոյդ։ Բայց ես հանդերձ Եպիսկոպոսօք իմովք և լաւօք աշխարհիս խորհուրդ արարի օրէնս համարելով ո՛չ արգելուլ ի գալոյ զամենեսեան զայնոսիկ՝ որք ի զղջումն գան և յապաշխարութիւն։ Իսկ իբրև իմացաք զնորա չարութիւն, դարձեալ մերժեցաք ի մէնջ և արգելաք զմարդիկ ո՛չ տալ ողջոյն նմա։ Եւ որ գրեալ էիք, թէ հերձուածք գոն ի ձեզ՝ և մեք ո՛չ հաւատացաք. և դարձեալ հաւատացաք յաղագս հաւատարիմ վկայից. ահա մեք մեզէն իսկ ասացաք զեղեալսն ի մէնջ։ Եւ որ զԿաւատայ արքայից արքայի ժամանակն էիք գրեալ, գիտեմք՝ զի այնպէս եղև որպէս բազում անգամ լուեալ եմք. և որ վասն հարցն մեր և ձեր միաբանութեան և ուխտի և հաստատութեան հաւատոյ էիք գրեալ, մեք անշարժ ունիմք զնոյն։ Եւ որ վասն մեր և ձեր աշխարհաց էիք գրեալ և ասացեալ յաղագս միաբանութեան՝ զոր ի մերում ժամանակիս է, մեք ի նոյնս ունիմք միաբանութիւն և ո՛չ փոխիմք։ Իսկ վասն Խուժկին էիք հաստատեալ զհրամանս ձեր գրով և բանիւ. որպէս գրեցաք վերագոյն, վաղ մերժեցաք զնա ի մէնջ, և հրամայեցաք մերոց ո՛չ ընդունել զնա։ Այլ մեք յամենայնի հնազանդ եմք ձեզ և ձերոց հրամանացդ։ Ողջ լերո՛ւք ի Տէր. և մեզ աղօթս արարէ՛ք։



## ԳԼՈՒԽ Դ

Պատճառք խնդրոյն Հայոց Կաթողիկոսին և պատասխանոյն Կիւրո-նի՝ եթէ ո՞ր գոյր և ո՞րպէս։

Երբ զայսոսիկ թուղթս Մովսիսի Հայոց Կաթողիկոսի՝ և զպատասխանիսն Կիւրոնի ո՛չ գտաք ի գրել ի գիրս թղթոցն. և ի բազում ջան մտեալ հազիւ հարցաք գտանել։ Քանզի վաղ ուրեմն լուեալ էր իմ յուսումնասիրաց ումանց՝ եթէ սկիզբն Կիւրոնի կորստեան ի Մովսէսի ժամանակին եղև. զոր այսր տակաւ-ինչ զպատճառն այս Կիւրոն յառաջին պատասխանումն իւրոյ թղթին՝ որ առ Աբրահամ Հայոց Կաթողիկոս. և ասէ այսպէս. Մովսէս Հայրապետն Հայոց ասէ, որ նախ քան զքեզ յաթոռ յայդ գրեաց առ մեզ վասն խռովելոյն և ո՛չ վասն հաւատոց ինչ իրաց. զոր այսպէս ընթեռնուք յիւր իսկ ի թղթի անդ։ Երբ մեք ի բանից յայսմանէ ուսեալք յաղագս թղթոյդ, և լուեալ ի հաւատարիմ մարդոց՝ որպէս ասացաք, ի խնդիր ելեալ գտաք ի Տփխիս Քաղաքի, որ է ի Վրաց Նահանգի՝ մերձ առ ստորոտով լերինն Կոմկասու՝ ի վերայ գետոյն որ կոչի Կուր։ Քանզի էր Քահանայի միոյ գտեալ ի գիրս Վրաց, որում անունն Քահանային Կիրակոս կոչէին։ Որ և նա մեծաւ աշխատութեամբ գրեալ և թարգմանեալ ի մերս լեզու՝ ետ մեզ գրով։ Վասն զի ինքն իսկ կարի քաջ գիտէր զգիր և զլեզու Վրաց։ Իսկ մեք առեալ զստուգիւ քննութեամբ գրեցաք առ ձերդ հարցասիրութիւն։

# ԳԼՈՒԽ Ե

## Յաղագս Ահարոնի երկիւղին և կասկածանաց:

Արդ քանզի Ահարոնի ո՛չ իշխեցեալ համարձակապէս ի հակառակս ելանել Մովսէսի Հայոց Կաթուղիկոսի, որպէս Աբրահամայն, թէպէտ և ի ցաւս մտեալ երկանց. վասն զի երկնչէր. մի՛ զի կարի երախտեացն Մովսիսի յաղթահարեսցի և զամօթ կրեսցէ. և միւս՝ զի Յայր այլում ժամանակի. յորում ծնաւ զանօրէնութիւն, որպէս եղև իսկ: Քանզի մեռաւ իսկ Մովսէս Կաթուղիկոսն Հայոց: Եւ Ահարոնի եհաս ժամանակ և իշխանութիւն խաւարին: Քանզի զխուժիկն զայն, զորմէ ասացաքն, որ սկիզբն եղև Ահարոնի կորստեան, թագուցեալ էր իբրև զկորոյն իժի ի ծակս և ի ծերպս վիմաց. և ինքն զայս ինչ և զայս բաղբաղէր և պատճառէր զպատճառս մեղաց: Քանզի զպատասխանի թերի և թեթև բանիւք իբր կասկածանօք էին, և բեկբեկելով առնէր. և ասէր, օրէնս համարեցայ զայն առնել: Ո՛չ արգելոյր զոք գալոյ ի զղջումն. և կամ թէ մեք զուխտն հաստատուն ունիմք զհարցն մերոց, զոր եդին. և որ այլն ևս: Եւ այսոքիւք ասացեալքս լինէին նենգութեամբ. քանզի ծածկեալ էր զինքն նենգութեամբ: Զխուժիկն զայն որոշեալ եմք ասէր, և հրամայեալ եմք մերոց ո՛չ տալ ողջոյն նմա: Իսկ ինքն բնաւ ո՛չ մեկնէր ի նմանէ, թէպէտ և ի ծածուկ զնա ունէր, մինչև ի ժամանակ քաջայայտ լինելոյ նորա յամբարշտութեանն: Բայց նախ քան զյայտնել նորա չարութեան, որ եղև մինչև ի պատասխանիս երրորդ թղթոյն Աբրահամու. զոր արար Ահարոն չարաչար և դառն բանիւք, զի տակաւին ևս ծածկեալ ունէր զինքն պատրուակաւ կեղծաւորութեամբ, և ո՛չ առնոյր ի միտ զբանս գրոց սրբոց, զոր առակօք և օրինակօք յանդիմանեալ զկեղծաւորս,

միանգամայն և զպատիժ պատուհասին իմացուցանելով։ Վասն-
զի ասէ մի ոմն յԱստուածայնոցն, եթէ ճշմարտապէս խաւար
է, և լոյս կեղծաւորի։ Եւ այլ ոմն՝ եթէ կեղծաւորք ի բանս և
ի դէմս իւրեանց երևեցուցանեն զիւրս ինչ հաւատալիս։ Եւ
դարձեալ, եթէ մինն լինի ասել լոկ բանիւ փիլիսոփաս իբրու չի-
ցէ փիլիսոփոս, այլ կերպարանս ունի վասն առ ի պատուել ըղ-
գործ արուեստին. և որ ի ներքոյ փիլիսոփոսն էր՝ արտաքինն
դարբին գտաւ։ Ահա առաւ ի բաց դիմակ նորա՝ որ ծածկեալ
ունէր, և մերկնեցաւ խաբէութիւն նորա. և գտաւ՝ որ ի ներքոյ
աղքատն էր՝ արտաքոյ ծառայ։ Եւ այսպէս յերկուս դէմս զան-
սիլ կեղծաւորութեան ցուցանել կամին։ Եւ այսպիսի սատա-
նայքին գործք. նաև սատանայ կերպարանի ի հրեշտակ լուսոյ՝
ասէ առաքեալն։ Եւ ինքն Տէրն ասէ, տեսանէի
զսատանայ անկեալ յերկնից իբրև զփայլակն։ Եւ այն՝ զի ունէր
կեղծաւորութեամբ զանեղի բնակութեան կերպ՝ ուստի անկաւ.
վասնզի սիրեաց վերագոյն լինել ինքն քան զամենեսին՝ սիրելով
զփառս, այնմ ոչ եհաս՝ զոր խնդրէր, և յայնմանէ զրկեալ գտաւ՝
զոր ունէր միանգամայն։ Եւ լուեալ ի փառաւորութենէն՝ յա-
րում կարգեալն էր և սահմանեալ։ Արդ Կիւրոն այսպիսի մտօք
վարեցաւ ի ծածուկ կեղծաւորեալ զինքն. և ոչ գիտէր զբանս
գրոյն՝ եթէ խաւար յանդիմանեալ ի լուսոյ յայտնի լինի, և
որ ինչ սոցին նման։ Եւ դարձեալ, եթէ մեր ազգ ինչ իցէ
թաքչել ոչ կարէ։ Արդ այսքանեօք և այսպիսի իրօք կացեալ
Կիւրոն ամս հինգ, չերկուս ամս ի ժամանակս Մովսէսի Հայոց
Կաթուղիկոսի, և զերկուս ամս զկնի մահուան նորա՝ մինչև ի
ժամանակս Աբրահամու, որ յաջորդեաց զաթոռ Հայրապետու-
թեան զկնի Մովսէսի։

Իսկ յառաջնումն ամին Աբրահամու սկսաւ ամբարշտել և
յայտնել զչարութիւն իւր։ Վասնզի իբրև յաճախեցան զրեալ-

քըն առ նա յԱբրահամայ Կաթուղիկոսէ, ապա այնուհետև առնէր ընդ դէմ նմա պատասխանի յերրորդում իւրոյ թղթին. եթէ կամիք՝ և ոչ՝ ասէ՝ մեր հաւատ այդ է։ Եւ յլ թէպէտ և յառաջագոյն գրեալ էր առ նա Վրթանէսի Քերթողի՝ որ Տեղապահն էր աթոռոյ սրբոյն Գրիգորի, և ասեալ էր զչափ նորա չարութեանն։

Բայց քանզի Հայրապետ ոչ կայր ի ժամանակին, նա ոչինչ կարաց հնարել, միանգամայն և ընդ երկու եղեալ էր աշխարհս Հայոց. և նա ի տարակուսի լեալ՝ ոչինչ կարէր հնարել՝ ոչ հոգևոր ինչ սատարել և ոչ մարմնաւոր պաշտպանել։ Քանզի հոգևորն դեռ ևս տակաւին չէր հաստատեալ, և մարմնաւորն հեռի էր և օտար։ Իսկ Սմբատն՝ զորմէ ասացաք թէ՝ Մարզպան էր Հայոց, այր քաջ, և բարեպաշտ, և հաւատարիմ, և հաստատուն ի հաւատս ուղղափառութեան, գիտէր զերամ Կիւրոնի՝ եթէ ձայնակից եղև Հոռոմոց, ո՛չ կարաց զգացուցանել կայսեր զերեսս ի Կիւրոնէ, նա և ոչ արքային ծանոյց. քանզի գիտէր՝ եթէ ոչինչ օգուտ. միանգամայն և իմացեալ իսկ էր զկամս կայսեր, եթէ միաբան է ընդ Կիւրոնի՝ և նորա հրամանն՝ ասէ՝ գործն այն. քանզի կարծիս տայ մեզ բանն Կիւրոնի՝ զոր յիւր թուղթսն գրէ առ Աբրահամ և առ Սմբատ. թէ կեցուցէ Աստուած զկայսրն, զի նա զաշխարհս մեր կեցոյց։ Իսկ դարձեալ, թէ Աստուած փառաւորեսցէ զարքայ, քանզի նա փառաւորեաց. որ արդարև այնպէս եղև Կիւրոն. զի սիրեաց զփառս մարդկան առաւել քան զփառս Աստուծոյ. և յուսացեալ եղև ի զօրութիւն բազկի իւրոյ. և ոչ լուաւ ի մարգարէէն՝ մի՛ յուսայք յիշխանս յորդիս մարդկան, զի ոչ գոյ փրկութիւն ի նոսա. և որ յետ այսորիկ ասի բան. և դարձեալ զմիւս մարգարէի՝ թէ անիծեալ է որ դնէ զյոյս իւր ի մարդ և ոչ յԱստուած։

## ԳԼՈՒԽ ԺԸ

Թէ որպէս նենգութեամբ կոչեաց Կիւրոն եպիսկոպոսն Ցուրտաւայ Մովսէս առ ինքն, և նա ոչ գնաց յաղագս երկիւղի և կասկածանաց. իսկ ապա յետոյ գնաց յաղագս յանդիմանելոյ զնա, ընդ-դէմ և խափանումն արար ուխտին նորոյ։

Իսկ իբրև մեռաւ Մովսէս Կաթուղիկոսն Հայոց, Կիւրոնի յանձն կասկած լեալ վասն Եպիսկոպոսին Ցուրտաւայ, թէ նա յայտնեաց զչարիս նորա, առաքէ առ նա և կոչէ առ ինքն։ Քանզի խորհեալ էր չար առնել նմա հանդերձ իշխանօք աշխարհին։ Իսկ նորա իմացեալ զնենգութիւն Կիւրոնի՝ ոչ եառ յանձն երթալ, միանգամայն և վասն բանին՝ զոր հրամայէ Աստուածային առաքեալն, եթէ յառնէ յանիրաւէ յետ միանգամ և երկիցս խրատելոյ՝ հրաժարեսջի՛ր. զի թիւրեալ է այնպիսին և մեղանչէ անձամբ զանձն դատապարտեալ։ Իսկ նա ոչ միանգամ և երկիցս, այլ բազում անգամ զչափ առեալ էր նորա չարութեանն, ոչ կամեցաւ երթալ առ նա. նաև ուխտ իսկ եդեալ էր ի սրտի իւրում՝ բնաւ ոչ տեսանել զնա. քանզի խոցեալ էր ի գաղտաձիգ նետից նորա, զոր ձգէր ընդ խաւար յայնոսիկ՝ որ ուղիղ են սրտիւք։ Այլ միայն զայս եդեալ էր ի մտի իւրում, թէ յորժամ ծանուցանիցէ նմա չարիք իւր, թերևս դարձցի և զղջասցի. վասն զի ցաւ էր նմա վասն նորա՝ յաղագս այնորիկ՝ զի միջնորդ և շաղկապ էր սիրոյ ի մէջ երկուց կողմանց Հայոց և Վրաց։

~~~~~~~~~~
~~~~~~~~~~

# ԳԼՈՒԽ Է

Գնալն Մովսէսի Եպիսկոպոսին Ցուրտաւայ առ Կիւրոն։

Բայց ապա յետոյ գնացեալ, և խափանումն իւրոյ ուխտին արարեալ, սակս այնորիկ՝ զի տեսանելով՝ ասէր՝ զիս, գուցէ արդեօք ամաչեսցէ յուխտէն և ի դաշանցն՝ զոր եդին Հայրապետաքն Հայոց և Վրաց հանդերձ ինև ի մէջ երկուց կողմանցն։ Նա երթեալ հանդիպի Կիւրոնի ի քաղաքին՝ որ կոչի Տփխիս, զոր յառաջագոյն ի չորրորդ ճառի անդ յիշեցաք։ Քանզի էր նա ի գաւթի սրբոյն Սիոնի, որ էր մերձ յապարանս արքունի. զոր տեսեալ զնա սպասաւորացն Կիւրոնի, ազդ առնեն նմա։ Իսկ նա առաքէ ընդ առաջ նորա զմի ոմն ի սպասաւորացն իւրոց, և արգելու զնա յերեսաց իւրոց։ Իսկ նա երթեալ ի տուն քահանայի միոյ՝ որում անունն Յակոբ կոչիւր, որ էր մերձ ի սուրբ Սիոն. և անդ կացեալ աւուրս ինն, յղէ այնուհետև և պատգամ առ Կիւրոն, և խօսի ընդ նմա դատաստանաւ ոչեւն (ոչինչ կամ ոչ ևս) զանդիտացեալ ի նմանէ. ես՝ ասէ՝ գիտեմ զոր ինչ պակասութիւն լինէր ի քէն սակս ուղղափառ և սուրբ հաւատոյն, զոր ուսուցին մեզ սուրբ Հարքն՝ զառաջագոյն քարոզեալն ի սրբոց առաքելոց՝ և զհաստատեալն ի սրբոյն Գրիգորէ, և զնոյն աւանդեալ մեզ յերից սուրբ ժողովոցն՝ յերեք հարիւր տասն և ութիցն ի Նիկիայի, և ի հարիւր և յիսնիցն որ ի Կոստանդնուպօլիս, և յերկերիւրոցն որ յԵփեսոս. և երկոքեան աշխարհս մեր Հայոց և Վրաց զնոյն ունէին և ունիմք։ Արդ զի՞ եղև քեզ, զի խախտիչ եղեր դու անխախտ և անշարժ հաստատուն և սուրբ հաւատոյս մերոյ, զոր ի սրբոց հարցն հաստատեցաւ, և նոյն մեզ տուաւ հաստատուն պահել։ Քանզի նոքա մեծաւ հանդիսիւ և բազում աշխատութեամբ այսա-

հալածեալ կործանեցին զնոսա։ Իսկ նզովեցին զամենայն հերձուածողսն զառաջինսն և զմիջինսն և զվերջինսն, մանաւանդ զանիծեալ ժողովն Քաղկեդոնի և զպիղծ տոմարն Լևոնի, և զայնոսիկ՝ որք նոցայն հաւատացին. որ մինչև ի մեր ժամանակս հաստատուն են նոյն աւանդեալն ի նոցանէ։ Իսկ երանելի Հայրապետն Մովսէս, յորմէ դու ընկալար զձեռնադրութիւն, վասն ո՛յնորիկ ընթերցաց զգիրդ ի տանէ իւրմէ հաւատարիմ համարելով զգիրդ, զի ուխտ և դաւանութիւն հարցն մերոց հաստատուն կացցէ, և մեք ի խաղաղութեան մնասցուք. և քեզ հաւատաց զաթոռ զայդ Հայրապետութեան, զի մի՛ կուտեսցես քարինս ի շուրջս ժողովրդեանս հաւատացելոց, այլ զխոչ և զխութ ի բաց խլեսցես ի ճանապարհաց նոցա։ Իսկ դու արդեւ արկեր ճանապարհաց նոցա զայդ ամենայն՝ ո՛չ գնալ ի ճանապարհս Տեառն ուղիղ՝ ընդ որ գնացին հարքն մեր. և զխուժիկդ զայդ աղաւաղանիչ ընկեցեր ի մէջ, զի էր յինքն խոտոր դաւանութեան ծածկեալ՝ զոր ունէր ի հնմէն և ի քացախուտ չարութենէն Քաղկեդոնի ի Հրէական զանկուածոյն ի նա հասեալ։ Արդ ես անպարտ եղէցիմ և քաւեալ ի միջնորդութենէ քումմէ։

## ԳԼՈՒԽ Ը.

### Որ ինչ չինէ այսորէն պատմի յաղագս Կիւրոնի։

Արդ զայս նորա ասացեալ առ Կիւրոն ի ձեռն պատգամաւորի իբր ի մահ և յապառակ զինքն դնելով ինքնակամ կամօք և յօժարութեամբ, վասն զի թշնամիք էին նմա ամենեքեան՝ իշխանքն և ժողովրդականքն համանգերձ Կիւրոնիւ։ Իսկ նա ո՛չ ետ նմա պատասխանի ո՛յնքան բազում յանդգնանութեան, այլ որպէս

խժի և քարրի խցեալ՝ էր զականջս իւր, զի մի՛ լուիցէ զձայն Թովչի ճարտարի. այլ և ոչինչ կարէր չար ինչ խօսել նմա կամ առնել. զի լուցին բերանք այնոցիկ՝ որ խօսին զանիրաւութիւն։ Բանզի գիտէր ի մտի իւրում, եթէ յորժամ Կաթուղիկոս Ներ-սէս Հայոց, դարձեալ խնդիր լինի խմոց իւրացս. զի Թերևս կարասցէ հնարիւք ինչ այլազգ ինչ խորհել. զի դեռ ևս տակաւին յերկուս ոտս կաղայր։ Իսկ երանելի Եպիսկոպոսն զգաւրուք մարտն մաքառեալ բազում բանիւք յանդիմանեալ զնա, և ոչինչ կարաց օգտել։ Ապա դառնայ ի վիճակ իւր ի մեծի զարմացման եղեալ և ի տրտմութենէ (թեան) տակս Կիւրոնի անդարձութեանըն, միանգամայն վասն գուշակելոյ նմա զնենգութիւն նորա. և յանձն արարեալ զվիճակեալսն իւր՝ շնորհաց Հոգւոյն՝ պահպան Թողլով նոցա զայն՝ որ պահէրն զԻսրայէլ, գնայ մեծատրտմութեամբ ի վանսն՝ որ կոչի Յոհաննու, որ է յԱրագածոտան, և ընկալեալ լինի անդ բազում սիրով և մեծաւ պատուով ի Ներսեղասայ ի Վանաց Երէցէ։ Զոր ապա բազում գոհութիւն գրէ ի Թղթի անդ իւրում՝ որ առ Վրթանէս Քերթող. և զառաջին ուխտ իւր դարձեալ հաստատէ ի սրտի իւրում յաղագս Կիւրոնի՝ միայն եթէ դարձցի առ ճշմարտութիւնն և ուղղեսցի։

Իսկ Կիւրոնի զգնալ Եպիսկոպոսին Յուրտաւայ ի նմանէ համբաւէ այսպէս, թէ գիշերի գաղտ գնաց փախստեայ ի մէնջ յաղագս իւրոյ ինչ չարի և բազում բանից նորա՝ զոր խօսեցաւ ընդ նմա վասն հաւատոց. և դարձեալ յաղագս յանդիմանութեանն և մեղադրանաց ոչինչ պատմեաց յայնցանէ, թէպէտև Եպիսկոպոսն զամենայն էր պատմեալ ամենեցուն. զոր և զնոյն գրէ Կիւրոն յիւրում թղթի անդ՝ որ առ Աբրահամ Կաթուղիկոսն Հայոց. զնա՝ ասէ՝ մեք ոչ եմք հանեալ ի վիճակէ մերմէ, այլ ինքն գնաց ի գիշերի փախստեայ յաղագս իւ-

քոյ ինչ յանցանաց։ Նու այսպէս անիրաւութեամբ և սուտ-թեամբ առնէ պատասխանի իւրոց և օտարաց։ Քանզի ամենայն՝ որ անիրաւ է՝ ի պատասխանիսն է պատրաստ. քանզի անիմաստ մտօք վարէր առ ամենեսեան. զի հոգիք ըմբռնեալք ի մեղս՝ ի մտաց ևս անկանին։ Արդ Կիւրոնի թէպէտև վաղուրեմն առեալ էր զճշմարտութիւն, ինքն ատեցեալ էր ի ճշմարտութենէն։ Քանզի յառաջ թշնամի էր Եպիսկոպոսին Ցուրտաւայ՝ կասկածելով զնմանէ յաղագս յայտնելոյ զչարութիւն նորա. և որսայի(ր) զնա ի մահ. վասնզի գիտէր նա զնորա զամենայն ինչ ստուգիւ, որ ինչ ի ծածուկ և յայտնի, որպէս ասաց ինքն ի ձեռն պատգամին։ Քանզի յառաջ մինչդեռ ոչ էր հրապարակագուժ լեալ, բազում անգամ յանդիմանեալ լինէր ի նմանէ ի ծածուկ։ Իսկ նա ատէր զնա յաղագս յանդիմանական բանից նորա՝ թշնամի իմն համարելով զնա, ատեցին՝ ասէ՝ ի դրունս զյանդիմանիչս իւրեանց, և զբանս սուրբս պիղծ արարին. զի յորժամ խրատու ոչ լսեաց, ապա յանդիմանեցաւ. զի խրատ առանց յանդիմանութեան մոլար շրջի՝ ասաց ոմն ի սրբոցն։ Արդ յետ այսոցիկ եղելոց իրաց գրէ առ Վրթանէս թուղթ Եպիսկոպոսն Մովսէս՝ լի բազում ամբաստանութեամբ, զոր յիւր իսկ թուղթսն պատմէ յաղագս Կիւրոնի, և զՎրաց օրինակաւ ինչ իրաց նմանեցուցեալ նոցա վասն անպտղութեան նոցա օրինակաւ թզենոյն, և հայցէ գրել թուղթ առ Կիւրոն, զի թերևս կարիցէ հնարել ինչ, իւիք ինչ իրօք շահել զնա։ Խնդրէ նախ գրել և առ եկեղեցին Ցուրտաւայ՝. որք Հայալեզուք էին, առ ի մխիթարել զնոսա։ Իսկ նա այր իմաստուն և հանճարեղ և նախանձայոյզ աստուածային պատուիրանին, և զօրավիգ և օգնական ուղղափառ հաւատոյ, ճըշմարտասէր և լի գիտութեամբ. որ սակս իւրոյ հաւատարմութեանն Տեղապահ զնա կացուցեալ աթոռոյ սրբոյն Գրիգորի։

Իսկ նա ապա ցաւակից լեալ Եպիսկոպոսին միանգամայն և գործակից և ջատագով աստուածային պատուիրանին՝ գրէ առ Կիւրոն թուղթ ծանուցանելով նմա զամենայն մի ըստ միոջէ, որպէս ուսուցանէ քեզ գրեալքն առ ի նմանէ յիւրում թղթին։ Գրէ և առ եկեղեցին Ցուրտաւայ շրջաբերական թուղթ լի մխիթարութեամբ, և յորդորէ զնոսա կալ հաստատուն ի հաւատս ճշմարիտս, և զգուշանալ յայնցանէ՝ որք ոչն գնան ճշմարտութեամբ ի ճանապարհս Տեառն։ Եւ այս լինէր մինչև ի ժամանակս Աբրահամու. որ յաջորդեաց զաթոռ Հայրապետութեանն Հայոց զկնի երեք ամաց մահուանն Մովսիսի Հայոց Կաթուղիկոսի։

## ԳԼՈՒԽ Թ

Պատճէն երկրորդ վասն բաժանման Վրաց զկնի մահուան Մովսիսի։

Ի ժամանակն Աբրահամու Հայոց Կաթուղիկոսի եղև բաժանումն Վրաց՝ քաջայայտ գոլով՝ որպէս ուսուցանեն մեզ գիրք Թղթոցն։ Բայց այսուքիկ գրեալքս առ ի մէնջ մինչև ցայս վայր ի ժամանակս Մովսիսի Հայոց Կաթուղիկոսի եղև՝ որպէս պատմեցաք ձեզ ստուգիւ. այլև այնմ վկայեն գիրք Թղթոցն. ահա ցուցաք ձեզ ըստ կարի մերում համառօտ բանիւ սկիզբն և զպատճառ բաժանման Վրաց։ Վասնզի այսուքիկ այսպէս իմացեալ եղև ի մէնջ ստուգիւ քննեալ։ Իսկ ի նոցին Թղթոցն կամէի և այլ յիսկզբան մերոյ գործառնութեանս յաղագս նոցա յարմարել բանս, միանգամայն և յաղագս Կիւրոնի կշտամբութեանն յաւելուլ ի պատմութեանս՝ որ մինչև ցայս վայր. բայց թողաք յայլում տեղւոջ ասել։ Իսկ նախ քան զձեռնարկելն մեր էր ի բանս և ի գործս՝ որ յաղագս Կիւրոնի և բաժանման

նորա ի մէնջ՝ կամիք առնել և այլ իմն պատճառ. զոր ի բազմաց լուեալ մեր բազում անգամ՝ թէպէտև գրով ոչ գտեալ ուրեք ի մատենի, նաև ոչ ի զրուցաց՝ և եթէ ընդվայրաբանութեանն, այլ յաւանդութենէ ծերոց և յընթերցասիրաց ոմանց հաւատարիմ արանց, զոր կամիք առնել յայսմ պատմութեանս ի կարգի ճառիս։ Բայց քանզի ոչ եղև առնել, զի մի՛ խորհուրդս ընդմիջեսցի՝ որ ի կարգիս, զոր պատմի ի գիրս Թղթոցն, առաջից յետոյ յայլում տեղւոջ։

## ԳԼՈՒԽ Ժ

Թէ զի՞նչ օրինակաւ գրեաց Մովսէս Եպիսկոպոսն Յուրթաւայ առ Վրթանէս Քերթողն՝ գրել նորին առ քննաւղեալն էր և առ Աշուրոն և իշխանս աշխարհին։

Որդ գրէ թուղթ Եպիսկոպոսն Մովսէս առ Վրթանէս Քերթողն զգնայն իւր ի վանսն Յովհաննու, և պատմէ նմա զամենայն իրս եղելոցն միանգամայն և զծմեռնային զառանաշնչութեան հողմոցն՝ և զիւր զոհութիւն յԱռաջնորդէն՝ որ ի վանսըն, որում անուն Բարեղաս Ճանաչիւր, և հայցէ գրել առ եկեղեցին Յուրտաւայ զեր շրջաբերական յաղագս հաստատուն կալ(ոյ) ի հաւատս, որպէս յառաջն ասացաք, և յետայսնորիկ առ Աշիւրոն և առ իշխանս աշխարհին։

# ԳԼՈՒԽ ԾԸ

## Թուղթ տեառն Մովսիսի եպիսկոպոսին Ցուրտաւայ առ Վրթանէս Քերթող՝ Տեղապահ աթոռոյ սրբոյն Գրիգորի:

Փափագելի վիճակի Քրիստոնէական հաւատոցն սիրելութիւն ընդունող և ինձ երևելալ հայրաձև և մերձաւոր Տէ՛ր Վրթանէս, ի Մովսիսէ անարժանէ՝ քեզ և քոյոցդ՝ բազում խոնարհութեամբ երկրպագութիւն, ընդ որով և տուեալ ողջունի հարցութիւն:

Ծանուցանեմք փոքր ի շատէ Տեառն մերում զդժնդակութիւնս՝ որ եհաս մեզ: Պէտք եղև ինձ ի տղայութեանն հասանել յԵպիսկոպոսարանն Ցուրտաւայ. որոյ եկեղեցւոյն քառօրինաց աշակերտ իսկ էի: (Յ)որ ուսայ ուսմամբ գպրութեանն Հայերէն և Վրացերէն. որն (ուր) պարգևեցաւ ինձ իսկ անարժանիս ի Տեառնէ հասանել յաթոռ Վարդապետական. և յետ այնորիկ Եպիսկոպոս տան դրան Բզնէշխի, ոչ եթէ ըստ արժանեաց իմոց ինչ առնեմ, այլ կարծեմ, եթէ յանդիմանութիւն ուրացողացն զօրդին Աստուծոյ: Քանզի յետ այսչափ անցելոց ժամանակաց՝ ապա և ես հասի ի վերայ՝ թէ ո՛րպէս Վիրք զկանաչազգեղ տերևն միայն ունէին ըստ առանց պտղոյ ցուցանելով յինքեան ըստ օրինակի սաղարթալիցս. զի նոյն՝ յորում պտուղ ոչ եգիտ Տէրն, այլ տերև միայն: Ըստ որում այսուքիկ ի հաճոյս մարդկան զամենայն պաշտօնն լի և կատարեալ կարծեցուցանէին: Իսկ յորժամ ծանեաք ի Կիւրոնէ զմեծարանսն մատուցանել Հրէական սահմանին ժողովոյն Քաղկեդոնի, և զհայհոյութիւնն՝ որ յՈրդին Աստուծոյ, նաև ոչ տերևս կանաչ գոյր ի նոսա:

Վասնորոյ և իմ կցանն ի վեր առեալ՝ թշնամի եղէ Կաթողիկոս անուանն՝ և ամենայն իշխանացն՝ և նախարարացն՝

և ամենայն աշխարհին, և վախճան այս է, զի հալածեցար և թէպէտ վասն իմ մեղաց՝ ժամուս (այժմուս) յառաջնորդութենէ զրկեալ է աշխարհս Հայոց, հարկ համարեցայ գալ ծանուցանել սրբութեանդ ձերում զկորուստ աշխարհին և զիմ տառապանսն։ Եւ թէ որպէս վասն խստութեան ձմերայնոյս և փքայոյզ լինելոյ արգելեալ եղէ ի սրբոյ Յովհաննու Մկրտչէ ի վանս՝ որ յԱրագածոտան։ Եւ ընկալեալ իմ ի ձեռն երանելոյ Տեառն Բարեղասայ վանաց Երիցու, զայլն ի մանկանէդ լուէք։ Բայց առ ժամս գրեցի ես ի Հայ լեզու իշխանութեանն Յուրտաւայ եկեղեցւոյն. Հրամայեցէ՛ք և դուք գրել, զի նախանձաւոր են ուղղափառ հաւատոյն, թո՛ղ զի յաղանդոցն առաւել զգուշանան։ Գրեցէ՛ք և առ Կիւրոն և առ իշխանս աշխարհին, և ի ձեռն թղթոյ խրատ տո՛ւք բերել. և զողջոյն սրբութեան ձերոյ ծանուցէք մեզ։ Եւ դուք ողջ լերո՛ւք ի Տէր։

## ԳԼՈՒԽ ԺԲ

### Պատասխանի թղթոյն Մովսէսի Եպիսկոպոսի ի Վրթանիսէ Քերթողէ։

Զգիր ողջունի սրբութեան քո ընկալայ, և գոհանալով զԱստուծոյ՝ ուրախացայ, զի նախանձաւոր էք ուղղափառ հաւատոց, և ասպնջական սուրբ Հարցն ճշմարիտ վարդապետութեան՝ որ աւանդեցաւ յաշխարհս մեր ի ձեռն երանելւոյ և քաջ և սուրբ և անզանգիտող նահատակին Տեառն սրբոյն Գրիգորի։ Եւ զի յապստամբ և ի վերջին ժամանակս հասեալ եմք, ոչ են զարմանք տեսանել՝ զոր սրբութիւնդ ձեր գրեաց առ մեզ։ Քանզի տակաւին ևս տեսանեմք զգուշութիւն նուի-

բակաւն առաքելոց, եթէ հերձուածք լինելոց են ի ձեզ. և զայն ևս, թէ՝ որ ընտիրքն են ի ձեզ երևեսցին. զոր ճշմարտիւ սըրբութիւնդ քո կատարեաց՝ հալածանաց և բազմապատիկ նեղութեանց համբերելով: Նոյն ի վերայ դորին միշտ եղեցի արիանալ և անքակելի մնալ շնորհօքն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և ըղջամտութեամբ ստանալ պարգևս ի բաւական Աջոյն Քրիստոսի: Իսկ որ ի բազմացն փութայք շահաւորութիւն, ցանկալի է: Նա որ (յ)ընկերսիրութիւն ընթանայք, օգուտ է և տենչալի ըստ այնմ թէ՝ ոչ խնդրեմ զանձին օգուտ, այլ զբազմաց, զի ապրեսցին: Զթուղթս՝ զոր խնդրեցեր ի Հայալեզուսն, առնեմք շնորհիւն Աստուծոյ: Նոյնպէս և ի Սիւրոն և յիշխանս աշխարհին առնեմք ըստ յառաջերոյն Աստուծոյ: Նա եթէ կամի Աստուած, ի մօտ աւուրս Կաթուղիկոս կամին նստուցանել. զհոգս ձեր շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ նա հոգայ. և մեք սատար եմք մինչև ի կատարումն գործոյն ըստ կարի մերում: Ողջ լեր ի Տէր:

## ԳԼՈՒԽ ԺԳ

### ԶԸՆԻ ԵՂԲՕՐՆ ՄՈՎՍԷՍԻ Ե ՎՐԹԱՆԷՍԻ Ե Ի ՍԱՀՄԱՆԱՑ ՅԱՅՍՓԱՐԱ-ՐՈՆԻՆ:

Գրէ թուղթ շրջաբերական Եպիսկոպոսն Մովսէս առ վիճակեալսն իւր ի քաղաքն Ցուրտաւայ և ի նորին նահանգն, զգուշանալ նոցա յաղանդոյն Քաղկեդոնի և ի նոցին նմանեաց, տալով նոցա գեղեալսն օրինակ, և որ լինելոցն. և վարդապետէ նոցա զգրեալսն ի յօրէնսն և ի մարգարէսն, յանձն առնելով զնոսա շնորհաց Հոգւոյն: Որպէս միանգամ ասացաք, գրէ և զգալն իւր յԵպիսկոպոսութիւն՝ և ամբաստանութիւն զԱբրաց,

և վասն աղետի նեղութեան իւրոյ մինչ յամենայն տեղիս. Նաև յաղագս ուրացողացն զորդին Աստուծոյ գրէ զգուշանալ և կալ մնալ շնորհին Աստուծոյ։

## ԳԼՈՒԽ ԺԴ

### Թուղթ շրջաբերական Մովսէսի Եպիսկոպոսի առ Վիճակեալսն Իւր։

Ի ժառանգութիւն երկնից վիճակեալք՝ և որդութեամբ երկրպագեալք սրբոյ Երրորդութեան՝ Քրիստոսեան հաւատոյն սիրելութեան ընդունողք ի ձեռն երից երանելոյ անդրանգիտող նահապետին Տեառն սրբոյն Գրիգորի՝ Հայալեզու իշխանութեամբ Յուստաւոյ եկեղեցւոյդ, առ որս առաւել հարկ համարեցայ գրել, իսկ յօժարութեամբ լսողաց առհասարակ ամենայն պաշտօնէից եկեղեցւոյդ հանդերձ միաբան ժողովրդեամբդ, ի Մովսիսէ անարժան(է)՝ Տերամբ ողջոյն, ընդ որում և առաւել ի խաղաղութեան պահպանեալք լինիջիք յաստուած սրբոյ Երրորդութեան, սիրել իսկզբանէ։ Իսկ որ հաճեցաւ Աստուած և կոչեաց ի սպասաւորութիւն մեծի տէրութեան իւրոյ, զայժ քաջահաճոյն ընտրեալ իմացեալ տեսանեմք. որոց զվերակացութիւն ժողովրդեան շնորհեաց, և կամ՞ որոց զմարգարէութեան շնորհսն առաջի արկ. ոմանք տեղի ետուն և յօժարութեամբ լուան կոչմանն, և կէսք յապաղեցին զշնորհսն, և բամբասի և ոչ մի ոք ի նոցանէ։

Արդ վասնզի և մեզ դիպուած աստիճանին Թէպէտև կարգէր զհրաժարելն ուսուցանէր, և առաւել ես երկչոտանալ ընդ երկչոտսն, սակայն վերադոյն էր քան զմեր տկարութիւնս, միջնորդ ընդ Աստուած և մարդիկ լինել զհնազանդելն ուսաք Զի որպէս ի Հայրենեաց իմո ի սնունդոյ տեղոյ կոչեցեալք եղաք

հաւատովք Աստուծոյ նախախնամութեանն զշնորհն վարկանելով, յաղագս որոյ տեղի տուեալ յօժարութեամբ լուաք կոչմանն. վասնորոյ յանկարծակի ինձ ի վերայ հասեալ հայհոյութեան ինչ՝ զոր յորդին Աստուծոյ էր, հաստատեալ շնորհակորուսացն. առ որս ծանուցեալ զվէրս անհնարինս և չիշխեցեալ ընկենուլ ընդ լաւութեամբ զախտն, զոր և շարժեցաք իսկ. վասնորոյ և թշնամի եղաք ամենեցուն։ Նա որչափ յանդիմանեցաք, առաւել ևս սպառնացեալ եղաք ի Քահանայապետից և յիշխանաց, մինչև հալածեալ եղէ։ Բայց ինձ այսպէս թուի, թէ զորօրինակ՝ ես ընդ դատապարտութեամբ անկեալ լինէի, եթէ գիտէի զախտն և ծածկէի, նոյնպէս և չարաչար բարկութեան է արժանի՝ որ լսէն և անփոյթ առնէն, որպէս և արարին իսկ անփոյթ։ Արդ ուրեմն յիրաւի լուիցեն զսպառնացեալն Աստուծոյ, զոր Աստուածայնովն Երեմեայիւ. Քահանայք՝ ասէ Տէր, ոչ ասացին՝ ո՞ւր է Տէր. և հովիւք ամբարշտեցան յինէն, և ցրուեցին զոչխարս արօտի իմոյ։ Նա ապա զի՞նչ յաղագս այդորիկ. այսպէս ասէ Տէր, ո՛վ հովիւք՝ որ կորուսէք և ցրուեցէք զոչխարս արօտի իմոյ. արդ ահաւասիկ ես վրէժս առից ի ձէնջ, զի լցան աւուրք ձեր ի խողխողումն։ Արդ զի զսիրելի Միածնի որդւոյն Աստուծոյ զսպանողացն յայտ է թէ՝ ըստ օրինակի նոցա և ոչ ի մարմնաւոր պատուհասէ վրիպելոց իցեն. և նոքա զի՞նչ պատուհաս կրեցին արդեւք։ Սովոյն դեգ արարին. կանայք նոցա զսիրելի որդիս իւրեանց խորովէին և ուտէին ի պաշարելն Տիտոսի զԵրուսաղէմ. զորս վեց բիւրովք սատակեաց, և հարիւր և քսան բիւր սրով կոտորեաց, և յիսուն բիւր ի գերութիւն վարեաց։ Նա պատճառք այսքան բազմութեան ի քաղաքին գտանելոյ՝ Զատկի տօնին էր, յորում ամենայն ազգն ի մի վայր գումարեալ էին. և իբրև ի բանտի արգելան. զի յորում յաւուր ննջեցին

զկեանս իւրեանց ի Քրիստոս Աստուած, ի նմին աւուր և զհա-տուցումն ընկալան. և այժմ որք զնոցայն ախտանան, յայտ է թէ՝ ընդ նոսին պատժելոց են և զատոխս և զանդրէն։ Արդ զի ընդ որս մի՛ և մեզ լիցի լսել զահագին սպառնալիսն Աստուծոյ, և կրել զանողորմ պատուհասն այն։ Այլ ես հարկ համարեցայ ի ձեռն զգուշացուցիչ թղթոյս խօսել յականջս աստուածասիրութեան Ձերոյ, զգոյշ լինել ի հաղորդութենէ Տեառն ուրաց(ող)ացն՝ և Տեառն սպանողացն՝ մեծարողաց ժողովոյն Քաղկեդոնի։ Քանզի Առաջնորդ ժողովոյն աղանդակիցք Նեստորի էին և հալածեալք յԸնկեղեցւոյն, որոց սատար գըտեալ զթագաւորն Մարկիանոս՝ և զկին նորին՝ որում անուն Պողքէր կոչիւր, երկու բնութիւն ասել զՏէր մեր Յիսուս Քրիստոս. զոր մեզ մի՛ լիցի հաղորդել նոցա։ Արդ զայս ամենայն գիտացեալ սիրելի՛ք՝ ճանապարհ զարքունի գնասցուք, մի՛ յաջ խոտորեսցուք և մի՛ յահեակ. և զայս այսչափ հարկ համարեցաք փոքր ի շատէ գրել առ Ձեզ. զի զգուշասցուք այնպիսեացն։ Եւ որ ոք յետ այդր պատուիրանի անփոյթ առնէ, ինքն տացէ պատասխանի Աստուծոյ. և մեք անպարտք եղիցուք։ Ողջ լերուք ի Տէր մեր Յիսուս Քրիստոս։

## ԳԼՈՒԽ ԺԸ

### Պատասխանի Թղթոյն Մովսէսի Եպիսկոպոսին Ցուրտաւայ ի Կի-ծանէլոյն Ե-րոց։

Օգիր ողջունի սրբութեան քո զխրատ(ատու)ութեան և զգուշացուցիչ ընկալեալ ամենայն եղբայրութեամբս, գոհանալով զԱստուծոյ մեծաւ ուրախութեամբ լցաք. որ Տէրդ՝ սրբոյ Եկեղեցւոյ հաղորդութեանն պահպանութեամբ ողջ է, և որք մնացեալ

ի ձէնջ զաշխարհ հոգայք՝ որպէս արժան իսկ է. ամենայն ուղղափառ խոստովանողաց աղօթից լուիցէ Աստուած, և առաքեսցէ զՀոգին սուրբ ի քեզ՝ Տէր և յօգնականս քո՝ զօրացուցանելով զձեզ, լինելով վերակացու և օգնական զարտուղեալ կողմանցս մերոց. և վերստին ի ձեռս ձեր՝ Տէր տէրանց սուրբ Հոգին քարոզեսցէ և հաստատեսցէ զաշխարհիս մերում զընթանուր Բան կենաց. որ յառաջ քան զյաւիտեանս ի Հօրէ և ընդ Հօր. և (ի) վախճան ժամանակաց վասն մերոյ փրկութեան ի սրբոյ կուսէն Մարիամայ մարմնացեալ լինելով ամենայնիւ որպէս զմեզ. բայց ի մեղաց մնալով այնպէս Աստուած, որպէս էրն յառաջ ընդ Հօր իւրում և սուրբ Հոգւոյն. զոր և յառաջավաստակ սուրբ մարգարէիցն զծածկոյթ խորհրդոյն՝ որ յաւիտենից ընդ Հօր մարգարէացեալ, զոր և երանելին Պօղոս մեկնէ, թէ այժմ յայտնեցաւ գրովք սրբովք, և ամենայն ուղղափառաց ընկալեալ հաստատեցան գրով սրբոյն Գրիգորի և Հայաստանեայցս հաւատն, և յոյսն, և սէրն, զոր աստուածայինն Պօղոս աւանդեաց եկեղեցւոյ՝ զհաւատն ի Հայր, զյոյսն յՈրդի, և զսէրն ի Հոգին սուրբ: Զայս երիս պտուղն ի ձեռն քո և երանելի վարդապետացդ՝ լի և զեղուն յեկեղեցիս կողմանցս մերոց պահեսցէ Քրիստոս Աստուած մեր, և ընդունել ընդ միոյն վաթսուն և ընդ միոյն հարիւր: Նորոգեսցէ և Տէր Աստուած և զաթոռ քո Տեառն ի նմին եկեղեցւոջդ, յոր վիճակեցար ի ձեռն ուղղափառ խոստովանողաց Քրիստոսի. ապա թէ ոչ՝ և մեզ այլ ինչ ճար չէ, բայց կամ կեալ յաշխարհիս և ըստ կամաց նորա լինել, կամ թողուլ և գնալ: Ողջ լե՛ր Տէր մեր. և մեզ աղօթս արա:

# ԳԼՈՒԽ ԺԶ.

Թուղթ շրջաբերական Տեառն Վրթանէսի Քերթողի (Ի) Հայաստան աշխարհին Յուրտաւայ՝ ի խնդրոյ Մովսէսի Եպիսկոպոսի՝ առ ի հաստատել զնոսա ի հաւատս

Սրբասէր ուղղափառաց և ճշմարտից՝ ամենայն վանաց Երիցանց և գեղջաց Բաղհամայից, ազատաց և շինականաց, ծերոց և տղայոց, Հայաստանեայց աշխարհաց, և համօրէն ամենայն ժողովրդականաց, որ էք ընդ իշխանութեամբ եկեղեցւոյդ Յուրտաւայ, ի Վրթանիսէ և յայլ պաշտօնէից սրբոյ եկեղեցւոյս՝ Տերամբ ողջոյն:

Վասնզի եհաս առ մեզ լուր չախորժելի՝ թէ զհերձուածն Նեստորի և զնզովեալն Բարծումի, զոր Հայոց՝ և Վրաց՝ և Աղուանից միաբանականաց Եպիսկոպոսաց, և իշխանաց, առակալի նզովիւք անյիշատակութեամբ էր ի բաց բարձեալ: Արդ կաթուղիկոսդ անուանեալ Եպիսկոպոսօք հանդերձ և իշխանօքդ ընդունելութիւն և մեծարանս առնեն հերձուածողաց: Լուաք և վասն սրբութեան ձերոյ՝ ունել նախանձ վասն ուղղափառ հաւատոյ ամենայն բարեպաշտութեամբ, որ անկեալ է իսկզբանէ յաշխարհիդ ձերում, և աղօթեմք միշտ հաստատուն մնալ և արիանալ անգանգիտող համարձակութեամբ: Գիտացէք եղբարք, զի ի վերջին ժամանակս եմք, և չար գազանքն հրապոյրք մերձեալ են ապստամբութիւն առնելով ուղղափառ հաւատոյ, զի մոլորութեանն իւրոյ կազմեսցէ սպնջականս. վասնորոյ արթուն կացէք և հսկեցէք խորշել յանդգամացն, զի պարգևացն Աստուծոյ արժանի լիցուք: Իսկ եթէ աւելի ինչ պէտք լինին հակառակութեան և պատասխանւոյ, գրեսցէ առ մեզ սրբութիւնդ ձեր: Իսկ շնորհիւ ամենասուրբ

Երրորդութեանն համեալ առ ձեզ՝ պապանձեցուսցուք զհերձուածս հայհոյութեան չարախօսացն։ Ողջ լերո՛ւք ի Տէր։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Պատասխանի Եղբօրն Ս. ընծայեալ Հայաստանեայց աշխարհին Տրդատայ։

Տեսաք զթուղթ ուղղափառ հաւատոց ձերոց, և լուաք զողջոյն ձեր և զամենայն պաշտօնէից սրբոյ եկեղեցւոյդ. և մեծ ուրախութեամբ լցեալ գոհացաք զՔրիստոսէ Աստուծոյ մերոյ։ Նա որպէս երկիր ծարաւի ի բազում երաշտութենէ պապաքեալ՝ ընդունելով անձրև շահեկան՝ զուարճացեալ յընքեան ցուցանէ զպտղաբերութիւն, և զանուշահոտ ծաղիկս երևեցուցանելով ստորոգացն։ Օրհնեալ իսկ շնորհքն Քրիստոսի հաւատոյ ըստ զրեցեալումն կենաց ի կեանս, ոչ միայն ի ձերում աշխարհի, այլև ամենայն հիւսիսային կողմանցս. զոր մեր ընկալեալ զգրեալս ի ձէնջ, և ցուցեալ ամենայն եղբայրութեանս մերոյ. զոր ախորժելով լուեալ՝ ետուն գոհութիւն Աստուծոյ։ Նա վարդապետութեանն ձերում հոգալով զաշխարհս մեր՝ յիշեցուցանելով սուրբ և զօրեղ հաւատոյն՝ զոր մեծին Գրիգորի սահմանեալ էր յայս Կաւկասային կողմանս։ Արդ համարձակիմք և օրհնեմք զՏէր Վրթանէս, և եկեղեցիս օրհնեալ ամենայն ուխտիւդ հանդերձ. և պահպանեալ լերջիք Հոգւովն սրբով յայս ծովածուփ կենցաղոյս, աղօթիւք միշտ նորոգել և սրբոց աթոռոյդ սրբոյն Գրիգորի, զի արասցէ խնդիր մոլորեալ ոչխարիս մերում, ըստ օրինակի առաջին վարդապետացն, զի մեզ առանց այսր օգնականութեան և թիկանց աստ չմարթի

կալ. զի այնպիսի բռնաւոր զօռօղի՝ որ Հայրապետս անուանի՝ դիպեալ չէ ոք, և մեզ բաց թողուլ զաշխարհս և գնալ։ Ողջ լե՛ր ի Տէրն մեր։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Յաղագս Յուրտաւայ՝ և որ ինչ վասն Բդեշխին՝ որ է Նմա փեսայ։ Եւ վասն Վրաց։

Ունիմ ի մտի և զայս ես կարգել դոյզն յիշատակօք բանից՝ որ ինչ յաղագս Յուրտաւայ՝ և որ զինչ այնորիկ։ Զի Յուրտաւն այն անուն՝ որ միշտ և յար յիշատակեցաք ի պատմութեան, ասա յիշատակեմք. յայնմ ժամանակի այն կոչէր անուն, իսկ այժմ յորջորջեալ կոչի Գաջենք։ Յայնժամ էր և ընդարձակ մայրաքաղաք մեծ և հռչակաւոր. իսկ այժմ փոքրկեալ և չափաւորեալ քաղաքագեղ յեզր գետոյն՝ որ կոչի յիւր անուն՝ Գաջենագետ, ի նահանգին՝ որ կոչի Վրաց-դաշտ, որ է միջասահման երկուց աշխարհացն Հայոց և Վրաց, հայի հանդէպ լերինն Կաւկասու, որ է սահմանակից հրաշաշէն. և հրաշալի հռչակաւոր և ականաւոր մեծի մայրաքաղաքին Տփխեաց. և եղեալ Յուրտաւն այն բնակարան Բդեշխի մեծի Գուգարացւոց՝ կողմանակալ հիւսիսոյ կարգեալ ի Վաղարշակայ Արշակունւոյ մերոյ արքայէ։ Եւ էր լեալ Բդեշխն այն ի զաւակէ Միհրդատայ Պարսկի նախարարի, որպէս պատմէ մեզ Ճըշմարտապատումն Մովսէս. զոր ածեալ ասէ՝ Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, և թողեալ իշխան ի վերայ գերութեանն ի Վերիացւոցն ազգաց. զորս էած Նաբուգոդոնոսոր զօրութեամբ զօրուն Լիբէացւոց, և վանեալ վկանդեալ ընդ ձեռամբ նուաճէր, և զմասն մի ի նոցանէ յաջակողմն Պոնտոս ծովու տար-

եալ բնակեցուցանէր՝ առէ պատմագիրն. և է Վերիայն այն յեզր յերկրի յարևմուտս։ Արդ ի բնակեցուցանել զնոսա յեզր Պոնտոսի, անուանն առնու ազգն այն, և բազմացեալ սփռի յեզր ծովուն ստորի և անտի, և շրջի յայն կողմն և ձգի մինչև ի սահմանս Հայոց և Աղուանից, և լինի ազգ և բազում յոյժ, և կոչի անուն աշխարհին Ափխազք, և իւրաքանչիւր անուանք գաւառացն՝ որ շուրջ զիւրև անթիւք, և այլ ևս գաւառք շուրջ զՏփխիս քաղաքաւ, որ կոչին Ծանարք՝ և Ջավախք՝ և Թըռեխք։ Արդ սերեցան և բազմացան, և եղեն ազգ. և զոր յառաջին իւրեանց յաշխարհին անուանէին Վերիայ, աստ Վրացիք անուանեցան ազգաւ, և լեզուաւ, և գրով, և հայրապետութեամբ, և թագաւորութեամբ հաստատեցան. զոր մերժեալ և հերձեալ հեռացոյց ի մէնջ Կիւրոն Ակուրացի՝ հանդոյն և հաւասար լեալ Յուդայի Սկարովտացւոյ, և կորուսեալ, կործանեաց զայնքան բազմութեան ազգ՝ պատճառ (լ)եալ կորստեան նոցա։ Բայց դու մի՛ ստանօր բամբասեսցես զմեզ իբրև զաւելորդ ինչ գրել զայս՝ ով ուսումնասէր. զի կամեցաք սակաւ բանիւք զբազում յիշողութիւն Յուբաաւայ ծանուցանել քեզ. զի պարտ և արժան էր ոչ առնել զանց սեփականութեան նորա, զի բնաւ բնակարան եղեալ արքունի և հանգստեան սրբոյն Շուշանայ, որ դեռ ևս կան տեղիք չարչարանաց նահատակութեան նորա, և հանգստարան ոսկերք և պատուական նշխարաց նորա. զոր մեր բազում անգամ երթեալ և համբուրեալ զսրբութեան տեղին, զոր ապա զորպիսութիւն նահատակութեան նորա յետոյ ասացից յայլում տեղւոջ։

## ԳԼՈՒԽ ԺԹ

Յաղագս Մովսէսի Եպիսկոպոսին Ցուրտաւայ՝ թէ ուստի՞ կամ զիարդ եկեալ է պատուի Եպիսկոպոսութեանն. և գործոցն նմա, և կշտամբանաց և անհնազանդութեանն Կիւրոնի և իշխանաց աշխարհին և այլոց։

Եւ յառաջ քան զձեռնարկելն մեր ի բանն՝ որ յաղագս Մովսիսի՝ մատուցումն եղև մեզ յառաջագոյն յիշատակել վասըն նորա՝ զգաւառ, և զգեղ, և զտեղ նորա ի պատիւ Եպիսկոպոսութեանն։ Բայց մինչչիւք այսուհետև առաւել բանիւք յիշատակել բառ կարի մերում։ Սա էր ի գաւառէն Տաշրաց ի գեղջէն Մեհենկերտոյ։ Նա եղեալ է ի տիս տղայութեան իւրոյ ի գեղաքաղաքն Ցուրտաւու, զորմէ յառաջագոյն ճառեցաք, և ի նմա սնեալ և ուսեալ՝ որպէս ինքն պատմեաց ի թղթի անդ իւրում։ Նա ուսեալ զուսումն զերկուց ազգաց զՀայոց և զՎրաց, և հասեալ յարքունս՝ հանդիպի նմա աստիճան վարդապետութեան, և յետ այնորիկ աթոռ Եպիսկոպոսութեան տան Բդեշխի։ Որ և զայն վկայէ ինքն ի թղթին՝ որ առ Վրթանէս. և կացեալ միջնորդ հաւատոյ հաստատութեան ի մէջ երկուց ազգաց՝ Հայոց ասեմ և Վրաց՝ մինչև ի ժամանակս Կիւրոնի կորստեանն. վասնզի ի նմանէ էր ընկալեալ ձեռնադրութիւն՝ մինչդեռ յուղղափառութեանն էր։ Բայց զայն ամենայն կրէր ի Կիւրոնէ՝ զվիշտ և զնեղութիւն՝ և զհալածանս՝ ինքն և իւրքն ամենայն, նաև վիճակեալքն առ հասարակ Հայկազուն իշխանութեանն. որ և թողեալ զաշխարհն և գնալ գրեն առ Վրթանէս ի պատասխանումն անդ նորա թղթին։ Եւ արդ ճշմարտիմաց լեալ Եպիսկոպոսն Մովսէս և աստուածապաշտօն առ ի խրատել և ուսուցանել զեկեղեցին Ցուրտաւայ, նախ քան Եպիսկոպոսութիւնն վարդապետ կե-

ցեալ և ուսուցեալ՝ որպէս ասաց մեզ ի Թղթի անդ իւրում, և յետ այնորիկ ապա Եպիսկոպոսութիւն նմա հանդերձեալ ի վերին Տեսչութենէն. կրկին ևս կեցեալ Վարդապետ և Տեսուչ և Առաջնորդ առ ի հաստատել և յուսուցանել զտակաւին և տղայաբարոյն մասն, և իբրև զհովիւ քաջ զանձն իւր դնելով ի վերայ ոչխարաց իւրոց գայլահալած լեալ, և ճանաչող զիւրսն և ծանուցեալ յիւրոցն, և որ ոչն լինէին յայսմ գաւթի, ածէր և մուծանէր անդէն, ուսեալ ի քաջ հովուէն՝ որ ասէր, Ես եմ հովիւ քաջ, և դնեմ զանձն իմ ի վերայ ոչխարաց իմոց. և սա զնոյն առնէր. և որ ոչ մտանէին ընդ դուռն գաւթի նորա, այլ այլուստ շրջէին քան զգաւիթ աւազակաբար և դաւաճանութեամբ, ի նոցանէ զգուշանայր և զգուշացուցանէր զբանցեալսն իւրոյ ձայնին՝ և զհետ երթեալսն կոչողին հովուաբար և ողջամտաբար յաղագս սուղալոյն։ Նա պատուիրէր մի՛ օտար ձայնի լսել, որ գողանայ և օձտէ ի ճշմարիտ և յառաջին Հովուէն և կեցուցանողէն զկորուսեալս. որ ասացն, եկն որդի մարդոյ խնդրել և կեցուցանել զկորուսեալս. և դարձեալ, Հայր՝ զոր ետուր ինձ, ոչ կորուսից ի նոցանէն և ոչ մի. և դարձեալ, եթէ որ զայս առ իս՝ ոչ քաղցիցէ. և որ հաւատայ յիս՝ ոչ երբէք ծարաւեսցի, զի ես եմ կեանք, և ճշմարտութիւն և լոյս։ Իսկ սա աշակերտ գոլով քաջ Հովուին Քրիստոսի, զնոյն առնէր և ուսուցանէր իւրոյ միանձնակելոցն, և զայնոսիկ յանդիմանէր՝ որք խորհէին յառողջ հաւատոցն ի բաց տանել որ ի Հայր և յՈրդի և ի սուրբ Հոգին. նաև զայնոսիկ՝ որ ի մարմնացեալ Բանին Աստուծոյ միաւորութեան բաժանումն բերէին։ Սա-սնորդ ամենիմաց լեալ սատանայի և Արիոսի՝ ատեցին զնա, և ի բաց ընկեցին յեկեղեցւոյ իւրեանց, Թշնամի անձին վարկանելով զնա, զի զատոյգն խօսեցաւ. նա և մահու սպառնային նմա իշխանք աշխարհին՝ և նախարարարք՝ և խաժամուժ

տմբոլեն այն, որք ոչ գիտէին զօրէնս և զպատուիրան Տեառն, և նզովեալք էին. վասնզի զ՟րէից ունէին զկատաղութիւնս յինքեանս։ Նոյն այսպէս բազում նեղութեամբ և չարչարանօք հալածէին զնա, և որպէս ասացաք՝ մահու սպառնային, և ասէին, եկա՛յք սպանցո՛ւք զնա, զի դժպհի եղև մեզ։ Նոյն չեն ինչ զարմանք, զի որդիք են սատանայի և համաձայնք այնոցիկ՝ որ սպանին զմարգարէսն և զՏէր մարգարէիցն։ Արդ այս ամենայնի պատճառ և ևս քան զայն չար ի Միւրոն գտաւ. զի առաջնորդ եղև չարի և բաշխիչ գտաւ գայթակղութեան աշխարհին Մ՟րաց՝ հանդերձ Խուժիկ Նեստորիւն, զի որոգայթ եղև նա նոցա։ Աւէ երանելին Ովսէէ, և իբրև զվարմ ձգեալ ի գլուխ գահաւանդի, զոր որսորդք յորս հաստատեցին։ Վասնզի նա զլի և. զանթերի հաւատ ուղղափառութեան մերոյ, զոր ուղիղ դաւանութեամբ աւանդեցին մեզ սուրբ Հ՟արքն մեր, նա յայլացեղս վարդապետեաց նոցա, և այլազգ իմն ուսոյց տար խորհրդով, զհայհոյութիւն՝ որ յՈրդին Աստուծոյ՝ ի մարմնացեալ Բանն Աստուած անբաժանելի միաւորութեամբ՝ նա բաժանելով ի ներքս բերէր զհայհոյութիւն, մինչզի ամենեքեան առհասարակ ներկեցան ի գոյն նորա երկաբնակութեանըն, Եպիսկոպոսք, և Քահանայք, Իշխանք, զօրավարք և զօրականք, միանգամայն իսկ և ամենայն չափ հասակի իմի և ի նոյն խորհուրդ վառեցան, զորօրինակ հուր յանտառի վառեալ թորթոջի, և զամենայն անտառն առհասարակ վառեալ թորթոջմամբ տոչորէ. նոյնպէս և անկարգ նորա բանքն եղև նոցա հուր միախառն այրելով զնոսա իբրև զխոտ ինչ։ Արդ զայս ամենայն տեսեալ երանելի Եպիսկոպոսն Մովսէս, վառեցաւ հրով Հոգւոյն սրբոյ, և յանդիմանէր զՄիւրոն միանգամ և երկիցս, և երիցս առանձին և առաջի վկայից։ Նոյն եկեղեցւոյն՝ ըստ Աւետարանական բանին, այլ և բազում անգամ խրատական

բանիւք ողոքէր, բանալով նմա զգիրս, և առաջի արկանելով զխը-
րատ հոգևոր։ Իսկ նա ոչ ընկալեալ զխրատ նորա երբէք, վասն
զի անձն անխրատ առանց բժշկութեան է. խրատեցաւ Բաբելոն
և ոչ բժշկեցաւ՝ գրեալ է։ Արդ իբրև ոչ կարաց ժուժել և
ծածկել զչարութիւն նորա, ապա այնուհետև յայտնեաց. զի
ոչ իմացան և ոչ ի միտ առին ըստ մարգարէին բանին. քանզի
ընդ խաւար էր ճանապարհ նոցա. և յայնմհետէ և առ յապա
թշնամի եղև ամենեցուն. բայց Կիւրոն կարի իսկ առաւել. զի
նա եղև սկիզբն չարի. և ոչ գիտէր եղկելին՝ թէ լաւ է թշնամի
իմաստուն քան սիրելի անմիտ։ Նա դարձեալ, եթէ արդարն
հարկանէ զքեզ, երթ զհետ նորա. զի նա է որ սիրէ զքեզ։
Արդ այսքանեաց և այսպիսեաց հալածանաց և տառապանաց
տուեալ և տարեալ լինէր երանելիս այս Եպիսկոպոս ի Կիւրոնէ
և ի նորայոցն, մինչզի թողեալ զաշխարհն և զվիճակ իւր՝ և ի
բաց հեռանալ ի տար աշխարհ։ Իսկ ապա յորժամ գրեաց ինքն
առ վիճակ իւրոյ եկեղեցւոյն, խնդրէ և գրել Մրթանէսի. զոր
և գրեալ նա մեծաւ զգուշութեամբ՝ որպէս ընթեռնուք ի մա-
տենի անդրնամակի։ Զոր ապա գրէ դարձեալ երկրորդ թուղթ,
և յիշատակէ այսպէս. գոհութիւն և շնորհակալիս նմա մատու-
ցանէ յաղագս շրջագայական գրոյն, զոր գրեաց առ Հայալեզուսն՝
որ ի Յուրատաւ. տեսի՝ ասէ, զգիր ողջունաբեր սրբութեան քո,
և որ այլ զկնի այնոցիկ։ Դարձեալ հայցէ զկնի այսոցիկ. և դար-
ձեալ հայցէ գրել առ Կիւրոն. այս անգամ, ասէր, հրամայեցէ՛ք
գրել թուղթ մի առ Կիւրոն Կաթուղիկոս անուն, և առ իշ-
խանս աշխարհին, և առ Պետրոս Եպիսկոպոս, յանդիմանելով
զժողովն Քաղկեդոնին։ Զոր ապա յանձն առնու, գրէ մեծաւ
հոգաբարձութեամբ սաստ նմա լինելով իսպառ։ Ահա ցու-
ցաք քեզ զտեղի ծննդեան և զսննդեան Եպիսկոպոսին Մովսի-
սի՝ ստուգիւ քննեալ և զայլ ևս աղէտ և զնեղութիւն նորա։

# ԳԼՈՒԽ Ի

## ԹՈՒՂԹ ԵՐԿՐՈՐԴ ՄՈՎՍԷՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ ԱՌ ՄԽԻԹԱՐ ՎԱՐԴԱ-ՊԵՏ ՍԿԵՒՌԱՑԻՆ:

Տեառն զգիր ողջունաբեր սրբութեան քո. և լուեալ զբանս մխիթարութեան՝ որ ի սմա, գոհանալով զՔրիստոսէ Աստուածոյ՝ անհոգացոյ, զի ձեռն ի ձեռն տանելով, զի ահա կրկին կենաց ղեկեցայ հողալով զիս և զաշխարհն՝ որպէս արժան իսկ էր: Եւ իմ վստահութիւն էր, որպէս զսկիզբն յօժարութեամբ արարէք. աղաչեմ բարեխօսութեամբ սրբոցն ջանացուք և ի գլուխ տանել. այս անգամ հրամայեցէ՛ք գրել թուղթ մի առ Կաթուղիկոս անունն, և առ Ներսէհ և Վահան և Բզրմեհ, յանդիմանելով զժողովն Քաղկեդոնի. և թուղթ մի առ Պետրոս յանձնառութեան. և ամենայն օրինակ ի ձեռն ձերոյ աշակերտի առաքեցէք, և զայ խաղաղութեամբ շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ: Եւ յորժամ զպատասխանիսն ընդունիք, ապա եթէ ոչ, և ձեզ պիտի երթալ, թող զի լինիք աշխատ յիշելով զյորդորականն Տեառն բարբառով մարգարէին, թէ երթա՛յք ի դրունս իմ դուք՝ որ կարողք էք, և զքարինս ի ճանապարհէն ի բաց ընկեցէք. զի մի՛ իւիք սայթաքեսցեն ժողովուրդք իմ. զի և մեք թէպէտև կամք, վասն տգիտութեան և միայնութեան Առաջնորդին մերոյ զանգիտացաք ինչ և յոյս ի ձեզ եդաք. զի նա և իսկ այդր սրբոյ Աթոռոյդ աշակերտ է մեւք հանդերձ, թէպէտ և ժամուս ի սնոտի մեծութենէն իբրև զգետ ինչ ի բազում ուխտից է յարուցեալ, իբրև զգազան ինչ դժնդակ ճիրանօք և մագլօքն է սաստկացեալ. զոր ամաչեցուսցէ Տէր Աստուած աղօթիւք սրբոյն Գրիգորի, և ըստ օրինակի առաջնոց Վարդապետաց ի ձեռն ձեր խզել զայդ

վարիլ խորամանկ օձին. և երգակցեալ ընդ երանելոյն Պօղոսի. Եթէ յԱզգաւանից մինչև յաշխարհն Վրաց մեզ եհաս լի առնել զԱւետարանն Քրիստոսի, և լսել զուրախարար բարբառն հրաւիրականն, եթէ բարի մշա՛կ և հաւատարիմ հանդերձ ընդ քեզ փրկեալ գնդաւդ եկ մուտ յուրախութիւն Տեառն քո։ Որոց լիցի ձեզ հասանել Տէր Վրթանէ՛ս հանդերձ ամենայն ուխտիւդ, ի ձեռն ձեր և մեզ շնորհիւն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։ Ողջ լեր ի Տէր. և մեզ աղօթս արա։

## ԳԼՈՒԽ ԻԸ

Պատասխանի Թղթոյն Մովսէսի Եպիսկոպոսի ի Վրթանէսէ Վարդապետէ։

Զգիր ողջոյնի սրբութեան քո ընկալեալ՝ զԱստուծոյ գոհացաք, և ուրախ եղաք, որ Տէրդ պահպանութեամբ ամենասուրբ Երրորդութեանն ողջ էր պահեալ, և պահեսցէ։ Այլ զոր գրեալս էր առ նուաստութիւնս մեր, բազմապատիկ շնորհակալութեամբք և արդիւնաւոր օրհնութեամբ երկիրպագաք։

Զթուղթն՝ զոր խնդրեցէք առ կաթուղիկոսն անուանեալ և առ այլ իշխանս աշխարհին՝ տարաք որպէս արժանն էր։ Բայց որ վասն մանկանն էր գրեալ, յաղագս ժամանակիս դըժուարութեան չեղև հնար արձակել. Տէր՝ անմեղադիր լեր։ Թո՛ղ՝ զի քո մանուկ տանի և զպատասխանիս բերէ, որ մեք ըստ նմին իմանալ գիտեմք։ Եւ եթէ զթութիւն ամենասուրբ Երրորդութեանն և ի ձեռն գրոյ խաղաղութիւն լինի՝ որպէս ունիմք իսկ յոյս, բարի է. որ դուք ի ձեր սուրբ յեկեղեցին հասանէք բարգաւաճեալ անուամբ։ Ապա թէ յերկարի ինչ յամառութիւն ուրացողացն, պատուէր տուք ծանօթից ձերոց

և սիրելեաց իշխանաց՝ որ զրեն առ փառաւորեալ իշխանն աշխարհի մերոյ. որ մեզէն իսկ երթամք հրամանաւ սորա։ Եւ օգնութեամբ Քրիստոսի Աստուծոյ մերոյ յանդիմաննեմք զնոսա, զի գան յուղղութիւն։ Ապա եթէ վասն բազում մեղաց մերոց զհակառակն և զընդդէմն հաստատէ լսել, զփոշի ոտից մերոց ի նոսա թօթափեմք. և մեք անմեղադիր լիցուք յԱստուծոյ և ի մարդկանէ։ Ողջ լե՛ր ի Տէր։

## ԳԼՈՒԽ ԻԲ

Թուղթ Վրթանէսի Քերթողի առ Կիւրոն Վրաց Կաթողիկոս և առ իշխանս աշխարհին՝ ի խնդրոյ Մովսէսի Եպիսկոպոսի ցուրտաւենին։

Արքասիրի Տեառն Կիւրոնի Վրաց Կաթուղիկոսի, առ Ներսեհի՝ և Վահանայ՝ և Բզրմհի իշխանաց, ի Վրթանիսէ և ի միաբան պաշտօնէից սրբոյ եկեղեցւոյս՝ Տէրամբ ողջոյն։

Յառաջագոյն առ պատուականութիւն ձեր (գրեաց) երանելի Հայրապետն մեր Մովսէս յաղագս խուժիկ եպիսկոպոսին խաբէութեան, զի մի՛ եղիցի նորոգաձեւութիւն հաւատոյ ի մէջ երկուց աշխարհացս. որ սքանչելի հիմնադրութեամբ կանգնեցաւ յանզանգիտող և ի քաջ նահատակէն Տեառն ի սրբոյն Գրիգորէ։ Արդ ո՛չ միայն ի Նեստորի խմորոյն ունիմք պատուէր ի Հարցն և յուղղափառ Վարդապետացն մերոց հեռանալ և նզովել, այլև զԵւտիքէս. և զԵւնոմոս, և զԱրիոս, և զՄարկիոն, և զՄարկելոս, և զայլ նմանիս նոցա, և առաւելագոյն ևս զտիեզերականործան և զանյիշելի ժողովն Քաղկեդոնի. որ յետ ճշմարիտ միաւորութեանն բաժանեալ և անջատեալս ի միմեանց սահմանեցին ի վերայ միոյն Քրիստոսի։ Այժմ լուաք թէ դուք զանօրէն ժողովն Քաղկեդոնի և զանիծեալ տոմարն

Լեւոնի ուղղափառ համայիք և մեծարանաց արժանի. վասնզի չունիք կրթութիւն քննել զհերձուածոց չարութիւն. զի չարագոյն քան զՀրէական ուրացութիւնն հեռացուցանէին ի միամիտ հաւատոցն՝ որ ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր է։

Արդ ոչ է պարտ աստուածաբանութեանդ ձերում աւելի ինչ վարդապետութիւն զուրուք ընդունել։ Քանզի երից սուրբ և անարատ ժողովոցն՝ որք ի պատիւ ամենասուրբ Երրորդութեանն գումարեցան երեք հարիւր տասն և ութքն ի Նիկիա, և հարիւր յիսունքն ի Կոստանդնուպօլիս, և երկերիւրքն որ յԵփեսոս, և աւելի քան զայն սահման հաւատոյ մեր և ձեր Հարցն և Վարդապետացն ոչ կալեալ և ոչ ընդունիմք. և որ ընդունի ոք, և կամ ի խառնել յականակիտ և յամբիծ սահման հաւատոյ վարդապետութեան նոցա հրապոյրս ինչ պղտորըս՝ գիտասցէ, զի օտար է և տարագիր յուղղափառ հաւատոյ. զի հաւատովք ուսանիմք հաճոյ լինել Աստուծոյ. զի ի վերջին ժամանակս եմք, չգոյ ումեք լինել յերկբայս։ Զի նախ ապըստամբութիւն է գալոց՝ երանելւոյ առաքելոյն ուսուցանէ։ Եւ յաղագս նորին նոյն ինքն հանդիպողական պատասխանին՝ եթէ ոք աւելի ինչ աւետարանեսցէ քան զոր աւետարանեցաքն, նզովեալ լիցի։ Զի ընդ ամենայն տիեզերս յեկեղեցիս ուղղափառաց յետ ընթեռնլոյ զԱւետարանն՝ որ ի Նիկիա սահմանեցաւ, հաւատոն ասեմք, այլ ոչ եթէ զՔաղկեդոնի ժողովոյն զհայհոյութիւնսն. ապա թէ այդպէս է, ոչ պարտիմք զամուր ցանկ հաւատոյս մերոյ խրամատել. զի որ քակէ զցանկ հայրենի, հարցէ զնա օձ՝ գիրն բողոքէ. և որ գլէ զվէմ, այսինքն զճշմարտութիւն ճշմարիտ հաւատոյ, զանձն իւր կորուսանէ։ Արդ պարտ է պատուականութեանդ ձերում՝ նախանձաւոր լինել ճշմարիտ հաւատոյ Հարցն, որ սքանչելեօք և Աստուածաշնորհ պարգևօք առատացուց յաշխարհիս

մերում. եթէ(է) ինչ երկբայութիւն ի միտս ձեր, և կամիք զփորձ առնուլ յաղագս այդորիկ, գրեցէք առ միաբան փառաւորեալ իշխանս աշխարհիս մեր. որ գամք այդր. և որպէս ի հեռաստանէ թղթոյս պատգամաւ, նոյնպէս յանդիմանական վկայութեամբ գրոց սրբոց յայտնի առնեմ զճշմարտութիւն բանիցս: Ողջ լերո՛ւք:

## ԳԼՈՒԽ ԻԳ

### Թուղթ Վրթանիսի Քերթողի առ Պետրոս Առաքեալ ի խնդրոյ Մովսէսի Առաքելոյն:

Փառաւորեալ Տեառն Պետրոսի Եռամեծափառ պատուոյ պայծառացելոյ, ի Վրթանիսէ և ի միաբան սուրբ եկեղեցւոյ պաշտօնէիցս՝ Տերամբ ողջոյն:

Գրէ երանելի առաքեալն Պօղոս, որ հանդերձեալն էր լինելոց, թէ հերձուածք լինելոց են ի ձեզ. և որ ընտիրքն են՝ երևեսցին: Լուաք յաղագս պատուականութեան քո, եթէ նախանձաւոր ես և սիրող ճշմարիտ հաւատոյ. զի որպէս յառաջագոյն երանելի Հայրապետն մեր Մովսէս գրեաց յաշխարհդ՝ հեռանալ ի խուժիկ Եպիսկոպոսիդ խաբէութեանց, և այժմ առաւելագոյն ևս պարտիմք փախչել յանօրէն ժողովոյն Քաղկեդոնի հայհոյութեանց. զի հաւասար Հրէութեանցն է. զոր համբաւ չախորժելի այժմ եհաս մեզ լսել, եթէ յաշխարհիդ ձերում մեծարանս մատուցանեն անարժան ժողովոյն այնմիկ: Վասնորոյ Եպիսկոպոս մի յաշխարհիդ գնացեալ է փախստական զդառն և զանյիշելի վիրութիւն *)

---

(*) Գուցէ՝ վերաւորութիւն կամ վեհաւորութիւն:

ժողովոյն այնորիկ ճանաչելով ։ Արդ Թուղթ արարաք վասն դուրին իրաց առ Կաթողիկոսդ և առ իշխանսդ. զի Նորոգաձևութիւն հաւատոյ մի՛ եղիցի ի մէջ երկուց աշխարհացս, այլ կացցէ միացեալ՝ զոր ի ձեռն սրբոյն Գրիգորի հաստատեաց բազում սքանչելագործութեամբ Տէր Աստուած։ Եւ դու առաւելագոյն խաղաղութեան պատճառ լեր. զի ատութիւն կորիցէ, և ճշմարտութիւնն հաստատեսցի. և Եպիսկոպոսն ի տեղի իւր դարձցի։ Զի եթէ այդ այդպէս ոչ լինի, յաւիտենական թշնամիք մնամք ի վերայ աշխարհիդ։ Եւ եթէ ի ձեռն գրելեացս հակառակութիւն բառնայ, գրեսջիք առ իշխանս աշխարհիս մերոյ, որ զմեզ այդր առաքեն. և այն լինի՝ որպէս Աստուած կամի։ Ողջ լեր։

## ԳԼՈՒԽ ԻԴ

Թէ էր վասն ո՞չ գտաւ գրեալ ի գիր Թղթոյն պատասխանի Թղթոյն Վրթանիսի որ առ Կիւրոն՝ և առ իշխանս աշխարհին՝ և առ Պետրոս Եպիսկոպոսն, զոր է խնդրոյ Եպիսկոպոսին Մովսիսի գրեալ։

Թղթոցս այսոցիկ՝ որ գրեցան ի Վրթանիսէ առ Կիւրոն և առ իշխանս աշխարհին՝ և առ Պետրոս՝ ի խնդրոյ Եպիսկոպոսին Մովսիսի՝ պատասխանի ո՛չ գտաք գրեալ ի գիրս Թղթոցն, ոչ ի կարգի, և ոչ յայլում տեղւոջ, նաև ոչ այլ ուրեք կարացաք գտանել, բայց սակաւուց այլ ընդ այլոյ իմն և արհամարհանօք գրեալ, զոր գրէ Մովսէս յերկրորդ թղթի իւրում առ Վրթանէս՝ որ զկնի այսոցիկ. զոր ապա ընթեռնուս յիւրում տեղւոջ։ Զթուղթն՝ ասէ, զոր գրեցէքն առ Կաթուղիկոսն անուն՝ և առ իշխանս աշխարհին՝ և առ Պետրոս՝ զոր խնդրեցի ի ձէնջ, տարեալ մանկանս իմոյ, եկն և պատմեաց թէ՝ ոչ ոք իշխեաց յանդիման տանել զթուղթն։ Բայց ապա

յորժամ տարան, և նզովէր և թշնամանէր զՀայաստանեայսն: Իսկ դարձեալ, թէ ետու բերել զսակաւուց արարեալ պատասխանիսն. Հրամայեցէք ընթեռնուլ: Իսկ դարձեալ, Վրթանէս սակաւ բանիւ յիշէ յիւրում թղթին՝ որ առ Մովսէս. ծանեայ՝ ասէ՝ զպատճառ թղթին՝ պատասխանի ինձ տանելով, և զայն ապա ոմանց. և զայն նշան առեն օրինակ ցաւածոյ և հիւանդի ի թուղթս իւրեանց Մովսէս և Վրթանէս: Արդ թուի ինձ ոչ արժանի և պատշաճ համարեալ զանարժան և զանընդունակ նոցա պատասխանիսն գրել ի գիրս թղթոցն. և վասն այնորիկ անգիւտ և անգիր եղև ի մէնջ. նաև անյիշատակ և անյիշելի նոցա և մեզ. Բայց կարծեմ՝ ի Կիւրոնէ լեալ այն աղենայն՝ որպէս եղևն իսկ. զի ոչ միայն զիւրն և զիշխանացն խափանեալ պատասխանի, այլև զՊետրոսին. զի նա նախանձախնդիր էր Աստուածային պատուիրանին, և ջատագով ուղղափառ հաւատոյ, և հաւատարիմ մերոյ կողմանս. թէպէտև ինքն ի նոցանէ էր ազգաւ և աշխարհաւ. զոր և գովութիւն գրէ նմա Վրթանէս ի թղթի անդ իւրում առ նա. եթէ նախանձաւոր ես՝ ասէ, և սիրող ճշմարիտ հաւատոյ: Իսկ դարձեալ ամբաստանութիւն գրէ զաշխարհէն. եթէ լուր եհաս մեզ, եթէ յաշխարհիդ ձերում մեծարանս մատուցանեն ժողովոյն Քաղկեդոնի. զոր մի՛ եղիցի նորոգաձևութիւն ի մէջ երկուց աշխարհաց մեր և ձեր: Բայց զպատճառն ստուգիւ ոչ գիտեմք, եթէ զի՞նչ և կամ էր վասն ոչ գրեաց Պետրոս պատասխանի թղթոյն Վրթանիսի՝ որ առ նա. թէպէտ և կարծեսք զԿիւրոնէ սաստեաք, բայց կարծեմ թէ ոչ բնաւ գտաւ գրեալ պիտանի ինչ մեզ. քանզի արգելան գրել սակս ստահակութեան իւրեանց և ապստամբութեան, բայց այնմ անպիտան և անմիտ պատասխանւոյն՝ որ ի սակաւուց ինչ յիշատակէ Վրթանէս և Մովսէս սակաւ բանիւք ի թուղթսն իւրեանց՝ որ առ միմեանս:

Արդ իբրև տալեալ եղև ի մանկանէն Մովսիսի Թուղթքն Վրթանիսի՝ որ առ Կիւրոն՝ և առ իշխանս աշխարհին՝ և առ Պետրոս, ի կասկածի եղեալ Կիւրոն սակս Մովսիսի՝ թէ գուցէ բարեխօսութիւն իցէ վասն նորա, միանգամայն և յաղագս հաւատոյ ինչ խրատ և մեղադրանք իցեն, որպէս և էր իսկ, ի բարկութենէ բնութեանն և ի սաստկութենէ սրտին՝ իբր արբեալ իմն ժայթքեալ ի յայլախելս, կամ թէ շռայլեալ իմն և մռե-լեալ մտօք մռմռեալ և մռզզայլեալ մռնչիւս սպառնայր՝ ասէ, և մրմռեալ և մրջմռեալ էր երեսօք. և անդուռն բերանով և լեզուաւ նենգաւոր խօսէր և ասէր, զայս թուղթ յԵրուսաղէմ առ Հայրապետ քաղաքին տամ տանել, պատասխանի նա առնէ. և այնպէս յառեալ և ընդ խոր գնայր և ընդ խաւար խօսէր։ Վասնզի խաւարեալ էր ակն հոգւոյն, մթացեալ միտք մարմնոյն, թողեալ զԱստուած՝ ի մարդիկ՝ ապաւինիւր ի թագաւորն Յունաց և ի Հայրապետն Երուսաղէմի. անդ ասաց, թէ փառաւորեսցէ Աստուած զարքայ, զի նա փառաւորեաց. և ասէ՝ եթէ՝ զայս յԵրուսաղէմ առ Հայրապետ քաղաքին տամ տանել, պատասխանի նա առնէ։ Եւ զայս ոչ Կիւրոն միայն սպառնայր և ասէր, այլ և ամենայն մերձակայքն և Եպիսկոպոսք, և Քահանայք, և իշխանք, և շինականք, նախարարք, և խորհրդականք ի մի և ի նոյն միտս վառեալ բորբոքեցան բարկութեամբ. և առհասարակ ամենեքեան խռովեցան սասանեցան որպէս արբեալք, և ամենայն իմաստութիւն նոցա ընկլաւ. զոր մարգարէն եղկելով ասէր, վա՜յ ձեզ՝ որ արբեալդ էք և ոչ ի գինւոյ։

---

# ԳԼՈՒԽ ԻԸ

## Թուղթ երրորդ Մովսէսի Խորենացւոյ առ Վրթանէս Քերթողն։

Սրբասիրի Տեառն Վրթանիսի՝ ի Մովսիսէ անարժանէ՝ Տերամբ ողջոյն։

Զթուղթս զոր գրեցէք առ Կաթուղիկոսն անուանեալ, և առ այլ իշխանս աշխարհին՝ և առ Պետրոս. զոր խնդրեցի ի ձերմէ սրբութենէդ, ետու տանել մանկան իմոյ. և այժմ եկն. բայց յաշխատութենէն առ ձեզ չկարաց գալ և զդոյց տալ, թէ որպէս յանդիման ոք չ՚իշխեաց տանել զթուղթն (առ) Կաթուղիկոս անուան(եալն)։ Ապա թէպէտ ի վերջոյ տարան. յընթեռնուլ թղթոյն՝ ասէ ի սաստիկ բարկութիւն շարժեալ՝ զայրացեալ սրտիւ՝ և եղծեալ գունով՝ զօրէն ցաւածոյ նզովէր և թշնամանէր ասէ զՀայաստանեայս. և թղթոյն պատասխանի ոչ ինքն արար և ոչ այլում ետ առնել։ Զայս յԵրուսաղէմ առ Հայրապետն քաղաքին տամ տանել, ասէ, պատասխանի նա առնէ։ Բայց սակաւուց՝ որոց արարեալ է պատասխանի, ետու բերել առ տէրդ. հրամայեցէք ընթեռնուլ, և մեզ ծանուցէք զինչ գրեալ է։ Զձեզ յարաժամ յաշխատութիւն պահեցի. Աստուած եղիցի վարձահատոյց։ Բայց ձանձրանայք մի՛. աղաչեմ որով և օրինակաւ յանձին լիցի ձեզ մոլորեալ աշխարհն և անձն իմ տառապեալ. և ի ձեռն գրոյ վերստին հաստատեա՛ց զմեզ։ Ողջ լե՛ր ի Տէր։

## ԳԼՈՒԽ Ի.Զ

### Պատասխանի Երրորդ Նորին Մովսիսի Եպիսկոպոսի ի Վրթանայ Քերթողէ։

Զողջոյն սրբութեան ձերոյ լուաք, և ուրախ եղէ։ Ընթերցայ և զպատճառ թղթոյն՝ պատասխանի ինձ առնելով. և զոր աբարեալ իսկ են առ իս յաղագս ոմանց արանց, այնպէս է՝ որք ի հիւանդութեան ինչ անկեալ՝ ոչ գիտեն զինչ խօսին. սակս, մեք և զայս ունիմք հաւատ և զայդ օրինաց, և աստ հաղորդեմք և անդր. Մովսիսի թէ կամք են՝ եկեսցէ, Կաթուղիկոսիս հնազանդ լիցի. զի քան զայդ հաճոյ այս է, և զիւր տեղի կալցէ։ Երդ աւելորդ համարիմ ես ասել ինչ. այս ամենայն Աստուծոյ զօրութեանն պահեսցի։ Բայց յաղագս զաշխարհս մեր նզովելոյ և թշնամանելոյ՝ որպէս և այլ կորստեան և աստուաառաք բարկութեանն ասպնջական եղեն, նմանապէս և զայն յանդգնութիւն արարին, անբժշկելի վէրս անձանց իւրեանց առնելով, և զինքեանս ինքեանք խոցոտելով. մեք հեռի եմք յայնմ անիծից։ Այլ դու Տէր աղօթեաց ի ժամս. պնդեալ են Առաջնորդ կարգել, եթէ զայս գործ օգնէ ի կատարումն տանել Տէր Աստուած մեր. ապա գիտեմք, եթէ ձեր կամք այսպէս կատարին՝ որպէս Աստուծոյ ողորմութեանն թուի։ Ողջ լեր Տէր իմ։



## ԳԼՈՒԽ ԻԸ

Որ ինչ գնէ Երորդ Ոգին Մովսէսի, և հասն Տեառն Աբրահամու, որ հանդերձեալ էր գալ յազգս Հայրապետութեան: Եւ հայցուած Մովսէսի է Վրթանէսէ՝ վերոյին հաստատելոյ է հաւատս, և որ ինչ պատճառն էր:

Եւ զայս այսպէս կարգեալ՝ կատարեցից կարճ ի կարճոյ՝ գլխաւորելով՝ որ ինչ Վրթանիսի առ Մովսէս: Զի գրէ առ նա զպատասխանի երորդ Թղթի նորա, և որ ինչ յանընդունակ Թուղթն ազատորերոյն. և եթէ խմօտոյ յաւուրս Կաթուղիկոս նստի: Եւ դարձեալ, եթէ զկնի պատասխանւոյն և այլ ևս Թուղթ հաւատոյ հաստատութեան գրէ՝ որ ինչ ի ժամանակս Զենոնի և Անաստասայ ուղղափառ Թագաւորացն:

## ԳԼՈՒԽ ԻԹ

Թուղթ Վրթանէսի Քերթողի առ Մովսէս Եպիսկոպոսն Ցուրտաւայ, որ է այժմ Գաջէն+, յաղագս հաւատոյ և վերոյին հաստատելոյ:

Զգիր քո ընկալայ Տէր իմ, և զպատճառ խնդրոյն ընթերցամէք ուղղափառ պատուականութեանդ յաղագս վերստին հաստատելոյ օտարացուցանող և կորստական անօրէն ժողովոյն Քաղկեդոնի, զոր եբարձ ի միջոյ բարեպաշտն Զենոն՝ միաւորիչ Թղթովն, և յետ նորա ի նորին սահմանի նախանձաւոր եղեալ ցանկալին հրեշտակաց և մարդկան Անաստաս: Արդ այսպէս ունի պատմութիւնս այսորիկ պատճառ: Քանզի յետ փոխելոյ յանարատ և յաստուածահաճոյ կենաց պանդխտութեանս այ-

սորիկ երանելոյ քաջանունն Անաստասայ, Յուստին անունն կալաւ զյաջորդութիւն իշխանութեանն, այր ժանտ և անօրէն, որ վարժեալ էր աղանդոյն Նեստորի, և զանգեալ և հաստատեալ ի նմին։ Սորա թագաւորեցեալ ըստ յանդգնութեան անձին և կանխապատրաստ եղելոյ մահացան խորհրդոյն՝ սկիզբն արար թշնամանել Հերետիկոս կոչելով զբարեպաշտ և զխաղաղասէր թագաւորս զԶենոն և զԱնաստաս, և զեղծեալ ի նացանէ զտոմարն Լևոնի և զժողովն Քաղկեդոնի, հրաման տայր շրջաբերական թղթօք գոռոզասաստ և անխիղճ իշխանաց անդէն հաստատել. և եթէ ոք համարձակեսցի ընդ դէմ կալ թագաւորքին հրամանաց, սրով սպառել և պէս պէս տանջանօք։ Յայնժամ եկեղեցիք ամենայն արեամբ լինէին շաղախեալք, և մեռեալք և բանտք և զանազան հնարիւք տանջանք։ Նա կղզիք կապանաւորօք լցեալք, զի քաջ Հովիւք զմեռանելն լաւ համարէին՝ և անարատութեամբ առ Քրիստոս ժամանել, քան թէ կալ անօրէն վարդապետութեամբ ամբարիշտ ժողովոյն Քաղկեդոնի։ Իսկ անօրէն միրագին զաղանդին մետաղս և աշակերտս՝ և որք զանցաւոր պատուոյս քան զմշտնջենաւորին կամեցեալք ընտրել զփառս Եպիսկոպոսք կարգեալ քաղաքաց քաղաքաց՝ հաստատեաց զժողովոյն խորհուրդ։ Ատանօր էր ինչ յիշատակի արժանի, բայց յայլում ժամու պահեսցի։ Քանզի բազում խռովութիւնք եղեալ ի ժողովրդականաց յաղագս չընդունելոյ զհերձուածող Եպիսկոպոսունս. արդ սուղ ինչ ժամանակ կալեալ զթագաւորութիւն Յուստինի՝ վախճանի ի ծանր ախտից հարուածովք։ Նա թագաւորէ Յուստինիանոս յետ նորա. և աղմուկ հակառակութեան ժողովոյն Քաղկեդոնի տակաւին ևս հնչէր և ի նորա ժամանակս։ Իսկ յաւուր միում խորհուրդ արարեալ ընդ ումանս ի մեծամեծացն յաղագս սպանման ուղղափառ Եպիսկոպոսացն և հա-

ընծանաց, եթէ զոր արար Թագաւորն զխռովութիւնս զայս ամենայն քաղաքաց, և այժմ ոչ է պարտ մեզ անտես առնել. և ոմանք յանդիմանակաց եղելոց՝ որք աղանդոյն այնր էին աշակերտք՝ ասեն ցԹագաւորն, եթէ անհնարին է ումեք ի մարդկանէ ասել զայդ. զի Սիմէոնի ձեռնարկեալ է և հանեալ սահմանադրութիւն ժողովոյն Քաղկեդոնի, և ցարդ ևս պահի զգուշութեամբ ի ներքս ի տապանին սրբոյն Եւփիմեայ. ուր ժողովն իսկ եղև։ Քանզի Սիմէոնս այս եղեալ միայնակեաց յԱնտիոք քաղաքի, հրաշալի, և հռչակաւոր, և ընտանի սրբոյ Հոգւոյն շնորհաց. որպէս և զմի ոք ի տեսանողաց և ոմն ի մօտաւորաց նախանձաւոր եղեալ ուղղափառ հաւատոյ, ասէ ցԹագաւորն, թէ երանելին Սիմէոնի ձեռնարկեալ և հաւանեալ է սահմանադրութեան հաւատոյ ժողովոյն Քաղկեդոնի, և կայ ի տապանի սրբոյն Եւփիմեայ, ես դառն չարչարանօք ընկալայց զզրաւումն կենաց իմոց։ Քանզի այսպէս ունի պատմութիւն. լուռ լինելով հրամայէ ի միում աւուրց մակուկաշու ուղեգնացութեամբ ի Քաղկեդոն ելանել սակաւուք արամբք. և մտեալ ի վկայարանս սրբոյն Եւփիմեայ, ստիպէ զպաշտաւորսն բանալ զտապան ոսկերացն պահարանի։ Իսկ նա ասէ, ով դուք՝ որ զայդ համարձակիք գործել. զոր չէ ուրուք արարեալ ի մարդկանէ։ Եւ իմացեալ զմիտս ինքնակալ Թագաւորին՝ վաղվաղակի բանայ. և սփռեալ զքղամիդն հրամայէ զնշխարս սրբոյն անդր հանել. և ասէ ցպաշտաւորսն, այլ կայ ինչ ի ներքըս։ Եւ նա ասէ, այլ ոչ գոյ ամենևին։ Եւ հայեցեալ Թագաւորին՝ տեսանէր ինքն իսկ, զի ինչ ոչ գոյր. յոգոց հանեալ ծեծէր զճակատն ապաշաւելով և ողբալով զսուրբ և զերանելին Հոփիւսն՝ որք յաղագս ուղղափառութեան և ճշմարիտ հաւատոյն հալածեցան և սպանան. և խորհուրդ արարեալ ընդ մեծամեծս իւր բառնալով ի միջոյ զնորոգաձևութիւն հաւատոյ,

զոր սահմանեալ ունէին թղթովն Քաղկեդոնի, և վաղնջուց յառաջելոցն և ի սուրբ Հարցն զքարոզեալն հաստատել։ Եւ իսկոյն հասեալ նմա մահ դաւողական, որ բազմաց բան է, ի նմին միոյ յառաջագոյն գործեցեալն։ Ողջ լեր ի Տէր մեր։

## ԳԼՈՒԽ ԻԹ

### Որ ինչ զկնի Եղիոյն Վրթանիսի՝ զոր խնդրէաց Մովսէս ի խորհուրդ հաւատոյ, և որ այլն ևս։

Արդ զայսոսիկ պատմեալ նմա Վրթանիսի սակս խնդրոյն՝ զոր յերորդում իւրոյ թղթին՝ յաղագս հաւատոյ և վերստին հաստատելոյ զխախտեալն յանօրէն ժողովոյն Քաղկեդոնի, զոր ի ձեռն բարեպաշտ թագաւորացն Զենոնի և Անաստասայ վերստին հաստատեցաւ, և որ զկնի այնորիկ և այլ որ վասն Կիւրոնի և Վրաց, որ նախ քան զայսոսիկ և որ ի սոյնս կարգիպատմութեան յարմարեցան բանք։ Եւ այլ ևս բազում բանիւք վարդապետութեան զօրացուցանէր զնա։ Դու ասէ, մի՛ զարմանար ով Տէր իմ, զի ի յետին ժամանակս հասեալ եմք. և պարտ է կատարիլ գրելոցն՝ որ ի Պօղոսէ. զոր աստուածազգոչ ձայնիւ աղաղակէ ամենայն ուրեք յամենայն տեղիս. եթէ ի ժամանակս յետին քակտեսցին ոմանք ի հաւատոց։ Եւ դարձեալ, եթէ յայտնելոց է մարդն անօրէն՝ որդին կորստեան՝ հակառակորդն հպարտացեալ։ Եւ դարձեալ, եթէ արդէն իսկ նեռինք բազումք եկեալ են. և յայլում տեղւոջ, թէ հերձուածք լինելոց են ի ձեզ, և որ այլն ևս. և որ այլ ինչ սոցին նման բանք՝ յուշ առնէր նմա։ Եւ այլ բազում բանիւք մխիթարէր զնա և զօրացուցանէր, և թելադիր լինելով նմա. խոստանայր սատար լինելով նմա՝ մինչև ի վախճան գործոյն, և որ այլ ինչ բանք։

## ԳԼՈՒԽ Լ.

Յաղագս Աբրահամու՝ որ հանդերձեալ էր գալ յաթոռ Հայրապետութեան Հայոց՝ հրամանաւ Սմբատայ Վրկան Մարզպանի և այլոց նախարարացն Հայոց։

Սկիզբն արասցուք պատմել քեզ համառօտ բանիւ՝ որ ինչ մեզ անդ է՝ և քեզ տեղեկութիւն տալոյ բաւական, և զայլն այլում թողցուք ժամու։ Նախանօր ապա յայսմ վայրի խորհուրդ արարեալ Սմբատայ Վրկան մարզպանի հանդերձ նախարարօք և լաւօք աշխարհիս Հայոց ժողով առնել Եպիսկոպոսաց, զի Հայրապետ հաստատեսցեն Հայոց։ Որ ապա ժողովեցան ի նորին իսկ հրամանէ յՈստանն Հայոց՝ որ կոչի Դուին։ Վասնզի անդ էին հանդերձեալ նստուցանել. զի անդ էր աթոռ Հայրապետութեան Հայոց յայնմ ժամանակի. որոյ Տեղապահ Աթոռոյն Վրթանէս Քերթող՝ որպէս վկայեն գիրք թղթոցն. և այն լինէր զկնի մահուանն Մովսիսի Հայոց Կաթուղիկոսի։ Իսկ իբրև ժողովեցան Եպիսկոպոսունքն, ապա այնուհետև խնդրէ ձեռնարկ ի նոցանէ Սմբատ, զի մի՛ թիւրեսցեն յուղիղ և ի ճշմարիտ հաւատոց և ի խոստովանութենէ սրբոց Հարցն, զոր հաստատեցին (ի) մեզ։ Եւ զիւր ձեռնարկն տայ նոցա՝ նմանապէս ուղիղ և ճշմարիտ խոստովանութեամբ և մեծաւ զգուշութեամբ կնքեալ և պահեալ ի տան Տեառն։ Եւ այս լինէր ի թագաւորութեան Հռոմոց Մօրկայ, և յութնուտասներորդ ամի Ապրուէզ-Խոսրովու Պարսից արքայից արքայի՝ յամսեանն Մարերի։ Եւ էին անուանքն Եպիսկոպոսացն այսոքիկ, Մանասէ Բասենոյ Եպիսկոպոս, Քրիստափոր Սիւնեաց Եպիսկոպոս, Աբրահամ Ռշտունեաց Եպիսկոպոս, Յովհաննէս Ամատունեաց Եպիսկոպոս,

Ահարոն Մեհեննունեաց Եպիսկոպոս, Ներսէս Բզնունեաց Եպիսկոպոս, Սիոն Գողթան Եպիսկոպոս, Թէոդոս Մարդպետական Եպիսկոպոս, Թադէոս Առնոյ Եպիսկոպոս, Գրիգոր Անձեւացեաց Եպիսկոպոս. այս տասն Եպիսկոպոսք եւ այլ եւս այսչափ Հարք եւ Քահանայք եւ Վանաց երիցունք, որք ժողովեցան հրամանաւ Սմբատայ եւ ի սատարելոյ այլոց նախարարացն ի Դուին քաղաք՝ յաղագս ձեռնադրելոյ Կաթուղիկոս զԱբրահամ Ռշտունեաց, զոր ի կարգիս Թուեցաք. եւ խափանեցաւ այն անգամ: Բայց գոգցես թէ՝ իբրեւ ի Տեսչութենէ Աստուծոյ եղեւ այն. որ զի թէպէտեւ կային ոմանք ի նոցանէ՝ որ անկեալ էին ի կամաց իւրեանց ընդ հարկաւ, եւ թիւրեալ ի հաւատոյն, եւ այլք ի բռնութենէ Հոռոմոց զկնի նոցա խոստոբեալ, յայնմ ժամու զեռեւս տակաւին չեւ էին սպառ հաւատս հաստատեալ, թէպէտեւ կարծիս տային թէ հաստատեալ են: Այլ իբրեւ հաստատեցան, վերստին ի ձեռն գրոյ եւ խոստովանութեան՝ զոր էառն եւ ետ բարեպաշտ եւ ամենազով մարզպանն Սմբատ. որ զի թէպէտ եւ թագաւոր չէր աշխարհիս Հայոց, այլ նա ինքն զպակասութիւն թերութեան թագաւորի Հոգաբարձութեամբն իւրով յամենայնի՝ յամենայնում ըստ նմանութեանն Դաւթի առաջնորդելով ժողովրդեանն Իսրայէլի: Իսկ իբրեւ գնացին Եպիսկոպոսունքն, յայնժամ ի խորհուրդ եկեալ միաբան՝ եթէ վասնզի ոչ եղեւ առժամն՝ յորպէտս իրացն ժողովեալ էաք, օրէնս համարեցան ի միջի իւրեանց կանոնս կարգել. որ եւ կարգեցին իսկ եւ հաստատեցին զուխտ իւրեանց միաբանութեան առ ի խրատ եւ ի խոստովանութիւն, եւ ի շահ եւ յօգուտ ազգաց: Այս դարձան իւրաքանչիւր յաթոռ խաղաղութեամբ:

# ԳԼՈՒԽ ԼԸ

## Յաղագս Սմբատայ Վրկան Մարզպանին՝ Ով է յորմէ ազգէ և յորում ժամանակի եղև Մարզպան։

Գրեմ քեզ այժմ՝ որ յաղագս մերոյս Սմբատայ պատմի յիշատակն։ Վասնզի յառաջ քան զայս յսկզբան առաջին ճառին՝ որ յաղագս բաժանման Վրաց՝ զանուն միայն յիշեցաք, և որ այլ ինչ էր՝ ոչ ժամանեցաք։

Երդ էր սա այր քաջ ի պատերազմունս, արի և առաքինի, հզօր և զօրաւոր յամենայնի յամենայն ուրեք։ Նա է ի մերազնէ ի մերոց թագաւորացս, և ազգաւ Բագրատունի, և սիրելի մեր՝ որպէս բնիկ և մերոց թագաւորաց արեանառու, և հաւատոյ հարազատ. որ լեալ Մարզպան Վրկան իշխանութեանն ի հրամանէ Եպրուեզ-Խոսրովու արքայից արքային Պարսից, յաւուրս խարհակալութեանն Մօրկայ Յունաց թագաւորի. որ բազում պատերազմունս վանեալ և վանեալ ի Հայս, ի Յոյնս, և ի Պարսիկս՝ որպէս ուսուցանէ քեզ պատմութիւնն Հերակղէ։ Իսկ այժմ և յայժմու ժամանակս հեզ և հնազանդ Հարցն հաւատոյ, և հաւան և հպատակ ուղղափառ հաւատոյ սուրբ Հարցն և Վարդապետացն, և կարի պէտ և կարեկից ամենայն կարօտելոց, և զօրավիգ և օգնական Հայաստանեայցս՝ զօրացեալ յԱստուած և զօրացեալ Աստուծով. որ և յայնմ ևս նուազի և յանիշխանութեանն Հայոց ելից զԹերութիւն թագաւորի և զպակասութիւն Հայրապետի. զի խոհեմ և խորհրդական մտօք լուրովք խորհուրդ արարեալ՝ խափանեաց զխարդախութիւն խորհրդոցն Թիւրեալ Եպիսկոպոսացն, և ուղղեալ հաստատեաց զմեղկ միտս նոցա։ Նա վերստին կանգնեաց ի զկորմանէ ի ձեռնարկէ գրոյն. զոր առ ի նոցանէ և ետ նոցա. և

զդարձումն նոցա յահեակ կողմն ճանապարհին արքունի յաջակողմն դարձոյց: Իսկ ապա յետ առնլոյ զձեռնարկն ի դարձեալ Եպիսկոպոսացն, ժողովէ դարձեալ միւսանգամ ի նոյն խորհուրդ՝ Հայրապետ նստուցանել:

## ԳԼՈՒԽ ԼԲ

Ձեռնարկն՝ զոր խնդրեաց Սմբատ Վրկան Մարզպան յայն Եպիսկոպոսացն, որք դարձեալ էին, և նորին հրամանաւ ի Դվին կարգեալ Աթոռակալն Հայոց յետ մահուանն Մովսէսի, և ընդ ձեռնարկն էր նոյն:

Ամենազովելոյ և փառաւորելոյ և աստուածաշնորհ պատուօք պայծառացելոյ Տեառն Սմբատայ Վրկան Մարզպանի, և տիրանց զինուորի. և գեղյայ դաշտականի, և վարդապետի Հայոց շարսաղարի, ի Մանասէէ Բասենոյ Եպիսկոպոսէ, ի Քրիստափորէ Ափւնեաց Եպիսկոպոսէ, յԱբրահամէ Ռշտունեաց Եպիսկոպոսէ, ի Յովհաննիսէ Ամատունեաց Եպիսկոպոսէ, ի Գրիգորէ Ընձաւացեաց Եպիսկոպոսէ, ի Սիոնէ Գողթան Եպիսկոպոսէ, յԱհարոնէ Մեհնունեաց Եպիսկոպոսէ, ի Ներսիսէ Բզնունեաց Եպիսկոպոսէ, ի Յովհաննէ Կայենոյ Եպիսկոպոսէ, ի Թադէոսէ Առնոյ Եպիսկոպոսէ, ի Թէոդոսէ Մարդպետական Եպիսկոպոսէ՝ Տերամբ ողջոյն:

Յեւթն և տասներորդ ամի Ապրուէզ-Խոսրովու արքայից արքայի՝ յամսեանն Մարերի, որպէս փառաւորութիւնդ ձեր յայսէ (յայսոցիկ) Եպիսկոպոսաց, զոր վերագոյնդ գրեալ է, որ ի ժամուս ի Դվին ի սուրբ եկեղեցւոջս դիպաք, ձեռնարկ խնդրեցաք վասն ուղղափառ հաւատոյ. զոր մեր Հայրցն և երանելի Վարդապետացն կալեալ է, և այժմ մեք ունիմք կամօքն Ա-

տուծոյ։ Արդ որպէս յառաջագոյն Հայրապետացն Հայաստանի աշխարհիս և Եպիսկոպոսաց՝ և Իշխանաց՝ և աշխարհականաց՝ ռամկալի նզովիւք մերժեալ և ի բաց ընկեցեալ էր զամենայն հերձուածողս զԱրիոսի, և զՄակեդոնի, և զանիծեալն Նեստորի, և զԵւտիքոսի, և զժողովն Քաղկեդոնի, և զտոմարն Լևոնի, նոյնպէս և մեք նզովեմք զամենայն հերձուածողս. ևս առաւել զանիծեալ ժողովն Քաղկեդոնի և զպիղծ տոմարն Լևոնի, դարձեալ կրկին նզովեմք և հեռանամք ի հաղորդութենէ նոցա. Ճշմարտութեամբ է բանս։ Ապա եթէ խաբէութեամբ ինչ իցեն բանք մեր, նզովեալ եղիցուք յամենասուրբ Երրորդութենէն։

## ԳԼՈՒԽ ԼԳ

Ձեռնագիր Սմբատայ՝ զոր ետ Եպիսկոպոսացն, զորոց անուանքն վերագոյն գրեցաք՝ հանդերձ Վարդանաւ և այլովք մեծամեծօք։

Ըստ բանից ձեռուս նոյնպէս և ես Սմբատ Վրկան Մարզպան և Տէրանց զինուոր, և գեղդաշտկարին*), և Վարդապետ Հայոց Ռազմաղար՝ նզովեմք զնզովեալսն ի ձէնջ, որպէս և երանելի Հարքն մեր նզովեցին զնզովեալս ի ձերոց Հարցն։ Եւ օրհնեմք զօրհնեալսն ի ձէնջ՝ որպէս և Հարքն մեր օրհնեցին զօրհնեալսն ի ձերոց Հարցն երանելեաց և վարդապետացն աշխարհիս։ Եւ յայս ուղղափառ հաւատոյս վերայ հաստատուն և անշարժ կացցուք ի կեալ և ի մեռանել ընդ ձեզ։ Ապա եթէ խաբէութեամբ ինչ իցեն բանքս մեր, նզովեալք եղիցուք յամենասուրբ Երրորդութենէն։

---

(*) Դժուարանամք իմանալ զբառս զայս և զնշանակութիւն սորին, զոր գըտանեմք և յայլ Թուղթսն մերս գեղդաշտկանի, երբեմն գեղդաշտկարին են գրեալ

Եւ կնքեցաք զձեռնարկս զայս և եդաք ի սուրբ եկեղեցւոջն Գառնայ։

Եւս մնացաք Եպիսկոպոս Բասենոյ իմ աթոռակցօքս հանդերձ, որոց անուանքն վերագոյն յիշատակեալ են, և Սմբատ Վրկան Մարզպան և Տէրանց զինուոր՝ իւր եղբարբք հանդերձ առաջի ամենասուրբ Նորոգութեանն՝ նախ սրտիւք մեռովք և ապա մարմնօք մեռովք։

## ԳԼՈՒԽ ԼԴ

### Յաղագս Վրթանիսի Քերթողի։

Վրթանէս այս Վարդապետ եղեալ Հայոց՝ սնեալ և ուսեալ ի տան Կաթուղիկոսարանին, այր հեզ և իմաստուն, հոգևոր և հանճարեղ, երկիւղած և ուղղափառ հաւատոյ հիմն, լի գիտութեամբ և ամենայն շնորհօք զարդարեալ, սնեալ սրբութեամբ առ սուրբ Աթոռոյն սրբոյն Գրիգորի, անկեալ ի տան Տեառն, և ծաղկեալ ի գաւիթս Աստուծոյ, և պտղաբերեալ ի պատիւ և ի պէտս մանկանց եկեղեցւոյ, վարժեալ ամենայն հոգևոր և մարմնաւոր իմաստութեամբ, և զարդարեալ ամենայն առաքինու(թեամբ), հլու և հպատակ ի վարդապետութեանն իւրում, հաճոյ Աստուծոյ և ընտիր մարդկան, և հաւատարիմ երկնահաճոյ և առաքելական սուրբ Աթոռոյն սրբոյն Գրիգորի, որ և Տեղապահ կացուցեալ զնա յաղագս այսր ամենայնի գովութեան զկնի մահուանն Մովսիսի, մինչև ի ժամանակս Աբրահամու. որ յառաջնորդեաց զաթոռ նորին։ Որ ապա ի բաժանման Վրաց բազում ջանիւ և աշխատութեամբ և հոգևոր հոգեբարձութեամբ վշտակից լեալ իբրև զբարիոք զինուոր Քրիստոսի Յիսուսի, համաղոյգ առաքելա-

կան քաղաքութեանն և հաւատոյ սրբոց Վարդապետացն, կարեկից Մովսիսի Եպիսկոպոսին Յուրտաւայ լեալ՝ հանապազ և ի ձեռն գրոյ մխիթարէր զնա, և թելադիր լինէր բանիւք բազմօք, և որ ինչ հալածելոց և համբերողաց երանի էր՝ զայն տայր նմա ի նամակի անդ պատասխանում թղթոյն. զոր արար երրորդ անգամ, և առ Կիւրոն գրեաց և առ իշխանս աշխարհին վասն նորա։ Սա եկեալ ի ժողով Եպիսկոպոսացն, որ զձեռնարկն տային Սմբատայ և առնուին, եկեալ Վրթանէս այս Վարդապետ Հայոց Շարապար այլոք հանդերձ, և միաւորեալ գրովն ձեռնարկին հաստատեաց զերկոսեան կողմանսն ուղղափառ և բարի խոստովանութեամբ սրբոց Հարցն և Վարդապետացն՝ միջնորդ և վկայ ունելով զսուրբ Երրորդութիւնն, և կապեալ և կնքեալ սրտիւ և մտաւանեաւ իւրեանց երկոքեան կողմանք ի փառս սուրբ Երրորդութեանն, ամէն։

## ԳԼՈՒԽ ԼԵ

Յաղագս Եպիսկոպոսացն այնոցիկ հրամանաւ ժողովելոյ ի ժամադրեալ տեղւոջն՝ հաստատել իւրեանց Նախնեացն։

Յետ կարգելոյ զկանոնսն միաղոյգ հաւանութեամբ՝ եւթն սահմանեալ գլխով և բարեձև կարգօք, զոր հաստատեցին ի շնորհաց սուրբ Հոգւոյն, ապա դարձեալ միւսանգամ ժողովին հրաւիրեալք ի Հոգւոյն սրբոյ։ Քանզի գրէ Սմբատ Վրկան Մարզպան հրովարտակ հանդերձ իշխանօք աշխարհին և նախարարօք Հայոց՝ գալ ժողովել ի ժամադրեալ տեղին՝ ի հոյակապ և յականաւոր և հռչակաւոր մեծ մայրաքաղաքն Հայոց մեծաց Դվին կոչեցեալ։ Ուր իբրև գնաց հրովարտակն, եկն ժողովեցան ըստ գաւառաց գաւառաց եկեղեց առ նա Ե-

պիսկոպոսունք. որ յառաջն էին եկեալ և արարեալ ձեռնարկ, և որք ոչն էին եկեալ և արարեալ՝ և նոքա՝ յերկուց կողմանցն՝ որք ի Յունական կողմանէն և որք ի Պարսից. զի կային ի կողմանէ Յունաց, որ Թիւրեալ էին ի հաւատոց. զոր առաջ եկեալ ի ձեռն խոստովանութեան և գրոյ հաստատեցան յԱբրահամէ՝ տալով ձեռնարկ: Երդ ի գալ ժողովել Եպիսկոպոսացն և վանաց երիցանց՝ իսկ և իսկ ըստ անկարգութեան ի բարձանց վեհմական կամաց Աստուածածին (Աստուծոյ) հրամանաւ հրաւիրեալք և հաւաքեալք ի հոգևոր հարսանիսն, զոր հանդերձեալ էին հաստատել Հայրապետ իւրեանց զայն՝ զոր ընտրեր Հոգին սուրբ: Իսկ իբրև եկին ժողովեցան առհասարակ ամենեքեան՝ Եպիսկոպոսք և վանաց Երիցունք և գեղջ Քահանայք և Իշխանք և շինականք, և լցան հարսանիքն բազմականօք արժանաւորացն: Իսկ Կիւրոն ոչ եղև կոչեցեալ ի հարսանիսն. քանզի խոտան զնա սակս երկուցն կորստեան, որ հասեալ էին նմա ի ցաւոցն՝ զոր յառաջագոյն յղացեալ էր, որով և ծնաւ զանօրէնութիւն: Իսկ Կաթուղիկոսն Եղուանից, որ յայնժամ Երբ Եպիսկոպոս էր Կաթուղիկոսին Հայոց, հակառակութեամբ լինէ, իբրև ոչ եկն ի ժողովն, զոր առաջ ասացից զպատճառն յետոյ: Իսկ այնոքիկ՝ որք ժողովեալ էին՝ ընտրեցին զԱբրահամ, որ էր ի գաւառէ Ռշտունեաց՝ ի գեղջէ Աղբաթանից՝ յազգմանէ սուրբ Հոգւոյն, և ձեռնադրեն զնա սրբոյ Ղևոնդին յաւուր կիրակէի՝ յետ ամսոյն Նաւասարդի: Եւ էին նոյն Եպիսկոպոսունք, զորոց անուանսն յիշատակեցաք ի ճառի անդ իւրեանց. և այլ ևս Եպիսկոպոսունք, և Վանականք, և Քահանայք, Իշխանք և նախարարք հրամանաւ բարեպաշտ և ուղղափառ Սմբատայ Վրկան Մարզպանի ի Դուին քաղաք ի սուրբ Կաթուղիկէն: Որոց գլխաւորք են այսոքիկ, Վրթանէս Վարդապետ, որ էր Տեղապահ Աթոռոյ

սրբոյն Գրիգորի, այլ և աւանդապահ ի մահուանէ Մովսիսի մինչև յԱբրահամ, որ յաջորդեաց զԱթոռն։ Իսկ Մանասէ Ռաժենոյ եպիսկոպոս. և Քրիստափոր Սիւնեաց եպիսկոպոս, այլ եպիսկոպոսս այլովք հանդերձ ձեռնադրեն զԱբրահամ մեծաւ թախանձանօք և բազում աղաչանօք հազիւ ուրեմն հաւանեցուցեալ, թէպէտև ոչ կամէր և յօժարութեամբ նորին. մինչդեռ արկեալ վիճակ ըստ սովորութեան իւրեանց. և էր վիճակ Աւետարանին այս։ Իջի ես յերկնից ոչ զի կամս իմ արարից, այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս։ Արդ հաւանեալ և հաստատեալ ի միտս իւր, ձեռնադրի ի շնորհաց սուրբ Հոգւոյն։ Սա էր այր հեզ, և խոնարհ, և երկիւղած, և բարի և հաւատարիմ, և հաստատուն ի հաւատս ճշմարիտս, և նախանձախնդիր ուղղափառ հաւատոյ, և լի գիտութեամբ Տեառն։ Ձեռնադրեցաւ սա ի ժամանակս թագաւորութեանն Հոռոմայեցւոց Մօրկայ, և յեւթն և տասներորդի ամի Ապրուէզ Խոսրովու արքայից արքայի, և ի տէրութեանն Սմբատայ Վրկան Մարզպանի Հայոց մեծաց, որպէս ի սկզբանց առաջի ճառին մերոյ գործառնութեան՝ որ վասն բաժանման Վրաց գրեցաք. և յետ այսորիկ գրեցեալ կանոնան իւրեանց դարձեալ վերստին հաստատեցին ուղղափառ խոստովանութեամբ ի փառս Աստուծոյ։ Իսկ ի սորա ժամանակս եղև բաժանումն Վրաց ի միաբանութենէ Հայոց. և նզովեցին զաղանդն Քաղկեդոնի, զոր նզովէ ամենայն ուղղափառ եկեղեցիք։



## ԳԼՈՒԽ ԼԶ

Որ ինչ գնէ ձեռնադրութեան Աբրահամու խօսք և խոստովանութեանք ժողովոյն ձեռնարկի [illegible]. զոր եդուն Աբրահամու։

Թողլով զոչ կարևորագոյնսն ի բանից՝ ասասցուք որ ինչ հարկաւորն է և առ ժամս մեզ պիտանի։ Որ ի բառնալ թագաւորութեանն Հայոց բաժանեալ եղև աշխարհս մեր ի մէջ Հոռոմոց և Պարսից. և նստուցին կողմն Հոռոմոց հակառակաթոռ Մովսիսի զՕհան ոմն երկաբնակ, որ ոչ համարեցաւ ի թիւ Հայրապետացն Հայոց։ Որ ապա և յետոյ Աբրահամու եղև հակառակ. և այն Եպիսկոպոսունքն՝ զորմէ ասացաքն յառաջագոյն ի ճառի անդ, եթէ ի Յունաց կողմանէ են ներկեալ, ի նմանէ սակաւիկ մի ի կասկածի եղեալ, զի մի՝ գուցէ զԿիւրոնին ժառանգեսցեն անուն չար և յիշատակ անյիշելի, խորհեցան տալ ձեռնարկ Աբրահամու Հայոց Կաթուղիկոսի, և այն լինէր ի միաբանութենէ Հայոց։ Զի յայնժամ անդէն ժողովեալ ամենեքեան յիւրաքանչիւր գաւառաց և ի գիւղից՝ որոց անուանքն յիշատակին ի ձեռնարկի անդ իւրեանց, զոր և յաջորդն յայտ առնէ։

## ԳԼՈՒԽ ԼԷ

Ձեռնարկն՝ զոր եդուն Աբրահամու Հայոց Կաթողիկոսի՝ ի միաբանութենէ աշխարհին Հայոց՝ այնոցիկ՝ որք էին ընդ իշխանութեամբ Հոռոմոց ի Թագաւորութեանն Մօրկայ և յաշխարհակալութեանն Խոսրովու Պարսից արքայից արքայի։

Իմ Աբրահամու Հայոց Կաթուղիկոսի՝ և աթոռակցաց իմոց Մանասէի Ռասենոյ Եպիսկոպոսի, Քրիստափորի Սիւնեաց Եպիսկոպոսի, Յովհաննիսի Ամատունեաց Եպիսկոպոսի,

Գրիգորի Ընձևացեաց Եպիսկոպոսի, Աբոնի Գողթան Եպիսկոպոսի, Ահարոնի Վեհնունեաց Եպիսկոպոսի, Ներսիսի Բզժնունեաց Եպիսկոպոսի, Յեհան (Յօհան) Կայղոյ (Կայենոյ) Եպիսկոպոսի, Թադէոսի Առնոյ Եպիսկոպոսի, և իշխանաց մերոց Տեառն Ամբատայ Վրկան Մարզպանի՝ և Տէրանց զինուորի՝ և գիգադաշտակարանի, և Վրթանիսի Վարդապետի Հայոց Շարաաղարի, և այլ Իշխանաց և աշխարհականաց ուղղափառաց առաջին կացեալ Թէոդորոս Էփական գ·դին Եպիսկոպոս, Ստեփաննոս Բագրևանդայ Եպիսկոպոս, Մովսէս Խորխոռունեանց Եպիսկոպոս, Քրիստափոր Ապահունեանց Եպիսկոպոս, Ներսէս Վանանդոյ Եպիսկոպոս հանդերձ վանաց երիցամբք՝ որք են այսոքիկ, Աբրահամ սրբոյ Կաթուղիկէի Վանաց Երէց, Սամուէլ սրբոյ Հռիփսիմէի, Բարեղաս սրբոյ Յովհաննու վանաց, Խոսրով Օշականու, Յաւիտեան Եղեվարդայ, Դաւիթ Երևանու, Իսմայէլ Գառնոյ, Ջոջիկ Արամունից, Յոհանիկ Արտաւազդայ Ապարանից, Աբաս, և Որդեակ, և Աբրահամ Փարբոյ, Միքայէլ Աղցից, Գրիգորիս Արճոյ, Կոզմ Ուրդայ, Մայէն միւս Արճոյ, Յոհանիկ Արծափաց, Սիմոն Գառունից, Սամաս Բագրանի, Յուսանէս Աւանի, Իւղ Պտղունից, և այլ վանից իրիցունք Երիցամբք հանդերձ եկեալ յանդիման մեր՝ զքարեպաշտութիւն խոստովանեցին նզովելով նոյնաձև ըստ երանելի Հարցն մերոց զամենայն հերձուածողսն՝ և զԱրիոս, և զՄակեդոն, և զՆեստոր, և զԵւտիքոս, և զչար ժողովն Քաղկեդոնի, և զպիղծ տոմարն Լևոնի։ Եւ աղաչանս մատուցանելով առաջի մեր խառնել զինքեանս ի միաբանութիւն եկեղեցւոյ ճշմարիտ հօտին Քրիստոսի. և ասացին միաբանութեամբ ամենեքեան, եթէ զխոստովանութիւն և զսահմանն հաւատոյ՝ զոր հաստատեցին հարքն մեր՝ անշարժ պահեսցուք առաջի Աստուծոյ և հոգևոր հարանց մերոց։ Եւ զա-

պաշխարութիւն՝ զոր տայք մեզ, յօժարութեամբ ընդու՞նիմք, և կամօք կատարեմք. և ի հաղորդութենէ նզովելոցն ամենեքին հեռանամք։ Իսկ եթէ խաբէութիւն ինչ իցէ ի կամս ուրուք, նզովեսցի հոգւով և մարմնով յամենասուրբ Երրորդութենէն։ Իսկ ընկալեալ զնոսա ապաշխարութեամբ բեռն ինչ, և մեր բառնալով զնոսա ըստ գրեցելումն։ Ընթերցաւ ձեռնարկս այս ի նոցանէն յանդիման մեր ամենեցուն վկայութեամբ Երրորդութեանն. որում փառք յաւիտեանս, ամէն։

## ԳԼՈՒԽ ԼԲ

### Դարձեալ վասն Մրթանիսի վարդապետին։

Կամիմ դարձեալ երկրորդել յաղագս Մրթանիսի վարդապետի. որ տեսեալ զայսքան հոգևոր հանդէս սրբոց Հարցն ի միասին ժողովելոց ի քակտումն ամենայն հերձուածողաց և ի նորոգումն խոստովանութեան և դաւանութեան հաւատոյ սըրբոց Հարցն՝ որ ի Նիկիայ, և ի Կոստանդնուպօլիս, և յԵփեսոս, և զնոցին աւանդեալսն մեզ դարձեալ վերստին աւանդեցին և հաստատեցին ի ձեռն միաբանական գրոյ ձեռնարկին, զոր եդուն յիմեանց կապ և կնիք դնելով զսիրտ և զմատանի, և վկայ և դատախազ զսուրբ զԵրրորդութիւնն ունելով, միանգամայն և զնորոգումն Աթոռոյ սրբոյն Գրիգորի, որում ինքըն էր Տեղապահ և աւանդապահ, ուրախ եղև յոյժ, և գոհացաւ զԱստուծոյ, իբր արդար և երախտաւոր գոլ, որպէս էրն իսկ, յոտն կացեալ օրհնէր զԱստուած զտուիչն այնպիսի բարեաց, ընդ նմին զՀայրապետն Աբրահամ. որ նորոգիչ եղև սուրբ Աթոռոյն սրբոյն Գրիգորի. նոյնպէս և զսուրբ ժողովն սրբոց Հարցն. վասնզի համազօր և ձայնակիցք եղեն նոցա՝

մանաւանդ թէ հանգոյն և հաւասար նոցին. զի զնոյա աւանդեալն դարձեալ վերստին աւանդեցին Հայաստանեայցս, և հաստատեցին ի փառս Աստուծոյ։ Արդ օրհնեաց նա զնոսա՝ և օրհնեցաւ ի նոցանէ՝ որպէս և բարեկամ և սիրելի հասարակաց։ Ապա այնուհետև բերեալ զաւանդն՝ որ ինչ նմայն էր հաւատացեալ ի Մովսիսէ Հայոց Կաթուղիկոսէ ի ժամ մահուան իւրոյ, նախ զփրկական և զկենսակիր Աստուծոյ նշանն, և ապա զնշխարս սուրբ առաքելոցն՝ զոր բերեալ էր սրբոյն Գրիգորի ի Հռոմայ՝ զտուեալն նմա ի բարեպաշտէն Կոստանդիանոսէ. և յետ այնորիկ զԱթոռն և զգաւազանն, որ պատուով պահեալ էր և պաշտեալ, և զայլ ամենայն զսպաս սրբութեան զսկիհս և զզգեստս սրբոյն սեղանոյն, և զվարագոյրս, և զխնկանոցս, և զբուրվառս, և զքշոցս, և զվակաս Կաթուղիկոսին մետաքսեայ կազմեալ յականց՝ և յոսկոյ՝ և ի մարգարտէ, և զայլ զգենլիսն և զարկանելիս Քահանայից և սարկաւագաց, զբեհեզս և զծիրանիս, որպէս մարգարէն ի Թիւ արկեալ կարգէ, զեղրածիրանին, և զմիջնածիրանին, և որ առաջին և զկնի այսոցիկ ասի, և զայլ ևս պայծառ պատմուճանս պէսպէս զարդուց, դիպակաց, և կերպասուց, և ծիրանեաց՝ գունակ գունակ՝ և երփն երփն՝ և երանգ երանգ՝ ծաղկազարդ գունոց գործեալ գեղեցկապէս, նաև զբարեպաշտին մերոյ Թագաւորին Տրդատայ պատուական զգեստն, զոր տուեալ ի տուն Տեառն ի սպաս սրբութեան, զոր մեր տեսեալ աչօք մերովք։ Նա ապա յետ այնորիկ բերեալ բազում գրեան զանազան և ազգի ազգի եկեղեցական և վարդապետական, և այլ և մարմնաւոր իրք գոյից չափ բերեալ գրով առաջի կացուցանէր, և օրհնեալ լինէր ի Հայրապետէն։ Նա բազում երախտիս և շնորհակալութիւն ընկալ յամենեցունց. զի զայնքան անցելոց ամացն առանց Առաջնորդի ոչինչ թեթև և թերի թողեալ

զՏեղապահութիւն իւր, այլ լի և կատարեալ դատիւ և դատաստանաւ առնել իրաւունս և գործել զարդարութիւն յամենայն ժամ. և դարձեալ խնդրել իրաւունս և փրկել զզրկեալսն, դատ առնել որբոյն և տալ իրաւունս այրոյն ըստ մարգարէին. և դարձեալ զորբս և զայրիս ընդունել, և զճանապարհս ամբարշտաց կորուսանել ըստ մարգարէին. և աղքատսիրութեամբ և եղբայրսիրութեամբ և օտարսիրութեամբ զարդարեալ զինքն, և աստուածային շնորհիւ պայծառացեալ և պատուեալ ի պատիւ և ի փառս անուանն իւրոյ։

## ԳԼՈՒԽ ԼԹ

Յաղագս օրհնութեան սուրբ իւղոյն՝ զոր օրհնեաց Աբրահամ Հայրապետն է խնդրոյ Եպիսկոպոսացն, որ ժողովեալ էին առ նա։

Իսկ ապա զկնի կատարման իրացն այնմիկ արդարութեան և իրաւանցն ուղղութեան, որ գործեցաւ ի նոցանէ, զայս ևս իրաւունս համարեցան՝ հայցեալ ի Հայրապետէն իւրեանց՝ օրհնեալ իւղ օծութեան, և տալ նոցա, այսինքն զՄիւռոնն. որով օծանեն և լուսաւորեն ամենայն ուղղափառ հաւատացեալք ի ձեռն սուրբ աւազանին՝ գործակցութեամբ Ջրոյ և Հոգւոյ։ Զի զկնի մահուանն Մովսիսի ոչ էր այլ օրհնեալ իւղ օծութեան, և զօրհնեալն ի նմանէ բաշխեալ էր Արթանէս Տեղապահ Աթոռոյն, և զայս ևս գործեալ և կազմեալ ի պատրաստի ունէին. զի զայնքան աւուրս ամսոցն ընդ մէջ անցելոցն յառաջին ժողովոյն Եպիսկոպոսացն մինչև ցերրորդ ժողովն՝ գործեալ էր Արթանէս հանդերձ պաշտօնէիւք եկեղեցւոյն զիւղն օծութեան, որպէս սովորութիւն է արուեստիւ գործել իւղագործաց։ Խնդրեն այնուհետև սուրբ Հարքն ի Հայրա-

պետէն և զայն ևս գործ հոգևոր ի գլուխ հանել, և գլխաւորել ի միասին՝ մինչդեռ չև ևս էին ցրուեալ։ Ապա այնուհետև մտեալ ի պաշտօն գիշերոյն՝ սաղմոսիւք՝ և օրհնութեամբ՝ և երգօք հոգևորօք ըստ խորհրդոյ աւուրն, և կարդացմամբք ըստ պատշաճի խորհրդոյն հանէին զգիշերն ի գլուխ յաղօթս Աստուծոյ, և զտիւն ողջոյն տքնեալ՝ մինչև կատարեցաւ խորհուրդն ամենայն ի փառս Աստուծոյ։ Ապա ի միւսում աւուրն բաշխէ Հայրապետն ամենեցուն զիւղն օրհնութեան։ Նա օրհնեալ զնոսա և օրհնեալ ի նոցանէ՝ ետուն ողջոյն միմեանց, և խընդութեամբ և խաղաղութեամբ ցրուեցին յիւրաքանչիւր վիճակ։

## ԳԼՈՒԽ Խ

### Յաղագս որ ինչ զկնի այսորիկ դարձի։

Արդ զայս այսպէս կարգեալ կատարեցաք գլխաւորելով զհոգևոր հանդէս, որ յաղագս Տեառն Աբրահամու մերոյ Հայրապետի և հոգևոր Հովուապետի՝ և հաստատութեան ուղղափառ մերոյ հաւատոյս՝ և միաբանութեան երկուցն կողմանցն Յունականաց և Պարսկականաց, այսուհետև դարձցուք անդրէն ի կարգ բանին, որ յաղագս Մովսիսի և Կիւրոնի։ Զի Մովսէսն այն Եպիսկոպոս Գաջենաց ո՛չ յիշատակի ի գիրս թղթոցն գալ նմա ի ժողովն, որ վասն Աբրահամու եղև ձեռնադրութեան։ Թէպէտ և զտեղին ծանուցաք բազում անգամ, զի հիւանդութիւն հանդիպեալ նմա ասեն։ Բայց ապա գրէ առ Աբրահամ ծանուցանելով նմա զաղէտ նեղութեան իւրոյ և զհալածանս՝ որ ի Կիւրոնէ, միանգամայն և վասն աշխարհին Ցուրտաւայ, և աղաչանք յաղագս Կիւրոնի, և զայլ տեղեկութիւնն ի Վրթանիսէ՝ ասէ՝ լսել։

## ԳԼՈՒԽ ԽԸ

### Թուղթ Մովսէսի Եպիսկոպոսի Ցուրտաւայ առ Աբրահամ Հայոց Կաթողիկոսն։

Սրբասիրի Տեառն Աբրահամու Հայոց Կաթուղիկոսի՝ ի Մովսիսէ անարժանէ՝ բազում խոնարհութեամբ երկրպագութիւն, ընդ որում և առաւել սրբութենէդ ձերմէ ողջոյնահարցութիւն։

Լուայ զՀայրապետական պայծառութեամբ զնորոգութիւն սուրբ Աթոռոյդ Տեառն Գրիգորի, և բազում խնդութեամբ լցաւ անձն իմ տառապեալ։ Զի ի վաղուց հետէ փափագեալ սպասէի լսել զայդ, մանաւանդ զաստուածասէր առաքինութենէ ձերմէ յորժամ լուաք որ ի մանկութենէ, վասնորոյ ընտրեաց իսկ Աստուած և պարգևեաց Առաջնորդ և Վարդապետ աշխարհիս ի նեղութեան ժամանակի, յոյժ խնդացաք և ուրախ եղաք։ Քանզի ահա արդէն իսկ օրհնեաց Աստուած զաղագս քո զաշխարհս Հայոց, և ամենայն բարեաց հիմնադրութիւն աշխարհիս պայծառացեալ պատուովք և գոհութեամբ թագաւորաց՝ այսրէն դարձ, և սրբոյ եկեղեցւոյ սկիզբն շինութեան և նորոգութեան աշխարհիս երկոցունց կողմանց, հոգևոր և մարմնաւոր պատառման անդրէն միաւորութիւն, և որպէս հիմն բարւոք եղաւ ի ձեռն սրբութեանդ, յուսամք յաջորդութիւնն Քրիստոսի Աստուծոյ զկատարումն ևս լաւագոյն լինել։

# ԳԼՈՒԽ ԽԲ

## Պատասխանի Ընդդէմ Մովսէսի Եպիսկոպոսին Ցուրտաւայ՝ յԱբրահամայ Հայոց Կաթողիկոսէ։

Սրբասիրիդ Տեառն Մովսիսի Եպիսկոպոսի՝ յԱբրահամայ թէպէտև ոչ կամաւ Կաթուղիկոսէ՝ Տերամբ ողջոյն։

Տեսի զսրբութեան ձերոյ զգիր ողջոյնի, որ լի էր բազում գոհութեամբ զողորմութեանցն Աստուծոյ. զի արդիւնաւոր օրհնութեամբ զմեր տկարութենէ նաև արժանաւոր առնել զանբաւականութիւնս իմ. որ և յանձնեցաք իսկ պարգևաբաշխին բոլորեցունց շնորհահատոյց լինել ձեր սրբութեանդ։ Իսկ սոսկալի և զծանր բեռանց բառնալոյ՝ որում ոչ ունէի ակն՝ անգիտելի է ինձ, որպէս ըմբռնեցայ, և կամ թէ զբազմութեան կամ միաբանութեան գալ, և այս ոչ ուստեք է ինձ՝ բայց յԱստուծոյ ողորմութեանցն և ձեր սրբասէր աղօթիցդ։

Արդ աղաչեմ զձեր սրբութիւնդ՝ ոչ դադարել աղաչանս մատուցանել առ ամենազօրն Աստուած, զի տացէ ինձ ոյժ կարողութեան ըստ իւրն հաճոյից կատարելագոյնս ցուցանել զնորայն տնտեսութիւն առ մերս երկիր, նմանապէս առ աշխարհն Վրաց և Աղուանից պայծառանալ ի Քրիստոս Յիսուս ճշմարիտ հաւատով ի ձեռն մերոյ նուաստութեանս. և կամիմ օրհնիլ ի ձերմէ սրբութենէդ, մի՛ դանդաղեսցես ի սուրբ Զատկին գալ այսր. զի բազմաց լինի խնդութիւն, և գործ հոգևոր առաջի կայ Կիւրոնի և Վրաց՝ մինչդեռ Տէր Սմբատ աստ է, փութամք՝ որով օրինակաւ նախ զայդ ի գլուխ տանել մերով հրամանաւ և գրով՝ շնորհօքն Քրիստոսի Աստուծոյ մերոյ։ Ողջ լեր։

Արդ փութացաք ծանուցանել և զ ցաւս մեր սրբութեանդ ձերում, որպէս հիւանդք որ ցուցանեն զվէրս իւրեանց ճար-

տար բժշկաց, և խնդրեն զառողջութիւն ի նոցանէ. աղաչեմք և մեք ձեռնատու լինել ձեզ եկեղեցւոյ Քրիստոսի, որք հաւատովք և աշակերտ ձեր էր Ալբիոն, և այժմ հիւանդացեալ է ի նեղութենէ, նախ աղօթիւք խնդրելով յԱստուծոյ, և ապա աշխատասէր վարդապետութեամբ ձերոյ և սատարութեամբ փառաւորեալ Իշխանացդ ջանացարուք դարձուցանել զժողովուրդն ժխտող և զապստամբեալն յուղղութիւն, և ածել ի նոյն զաւիթ միոյ Հովուի. և փութացարուք այսուհետև՝ որ ի հասարակացն է շահաւորութիւն՝ ի բազմաց կարի բարձրութիւն քան զօգնականի երանելոյն Մովսիսի և սրբոյն Պօղոսի. յորոց միոյն առանց երկուցն թողութեան հասանեն և զենքերն տարադրել ի գրքութենէ կենաց աղաչէր. և միւսն ասէր, թէ ես ինքնին ուխտիւք խնդրէի նզով լինել ի Քրիստոսէ վասն եղբարցն իմոց և ազգականաց ըստ մարմնոյ: Որոց առաքինութիւնն ընդ ամենայն բոլոր ազինս աշխարհաց քարոզ բանիւ ընթանայ պայծառացեալ: Ձեզ ունելով նոցա զգործն օգնական և հետևող նոցա՝ եղիցի և ձեզ պարծիլ ի Քրիստոս, և ասել թէ՝ ինձ տուեալ շնորհքս այս ի Տեառնէ՝ ի Վրաց մինչև յաշխարհն Եղուանից քարոզել զանքննին մեծութիւն փառացն Քրիստոսի, և զայսչափ օգուտ շահել, ձեզ և Քրիստոսի պատարագել. քան որոց եղիցի լսել զերանելի հրաւիրականն, թէ բարի մշակ և հաւատարիմ՝ հանգերձ ընդ քեզ տառապիչ բարեկամօքս և փոխեալ՝ մտցուք նկ մեծ յուրախութիւն Տեառն քո ընդ նախնիս քո և ընդ սիրելիս անուան իմոյ: Իսկ եթէ զանարժանութենէս մերմէ հարցանէք, ի Վ. ըրթանիսէ Ներսէսէ հասկանայք մեղկութեամբ. և անձն իմ տառապեալ և աշխարհս մոլորեալ սրբութեանդ ձերում յանձն եղիցուք: Իսկ դուք ողջ լերուք Տէր մեր:

## ԳԼՈՒԽ ԽԳ

### Թուղթ ընդդէմ եկն Մովսէս Եպիսկոպոսն Ցուրտաւայ է ժողով անդր Եպիսկոպոսացն որ է յԵռանդարբոնեան Աբրահամու:

Թուղթս այս առաջին՝ որ գրեցաւ ի Մովսէսէ ի Ցուրտաւայ Եպիսկոպոսէ առ Աբրահամ Հայոց Կաթուղիկոսն, յետ ութից ամսից անցելոց գրեցաւ. վասնզի հիւանդութիւն հանդիպեալ նմա սաստն յայնժամ մերձ ի մահ, և վասն այնորիկ ոչ կարաց գալ ի ժողովն, նաև ոչ ծանուցանել, իսկ կարաց ի ձեռն գրոյ զցաւս իւր և զհալածանսն ի Կիւրոնէ, միանգամայն վստահացեալ էր ի Վրթանիսի յառաջագոյն յուսադրութիւն և ի սատարն լինելոյ, զոր ի ձեռն իւրոյ պատասխանոյն արարեալ էր նմա, թէ ի մօտոյ աւուրս Կաթողիկոս կամին նստուցանել, զհոգս քո նա հոգասցէ, և մեք սատարեմք մինչև ի գլուխ գործոյն: Իսկ իբրև ընթերցաւ զթուղթն Մովսիսի Աբրահամ, և հասու եղեալ ի սակաւուց՝ որ ինչ գրեալն վասն Կիւրոնի և Վրաց, յայնժամ սկիզբն արարեալ Վրթանիսի պատմէր զամենայն որ ինչ ի Կիւրոնէ եղեալն էր գրով և անգիր, հասու առնելով զԿաթուղիկոսն, նախ զթուղթն Մովսիսի Կաթուղիկոսին որ առ Կիւրոն վասն խուժկին, և ապա զնեղութիւնսն և զհալածանսն Մովսիսի Եպիսկոպոսի ի Կիւրոնէ, և յետ այնորիկ զիւր թուղթսն զոր գրեցաւ առ Կիւրոն՝ և առ Իշխանս աշխարհին՝ և առ Պետրոս Եպիսկոպոսն, և զոչ ընդունելն պատասխանի, այլև ընդդէմ պատասխանիսն Կիւրոնի՝ զոր ոչ գրով՝ այլ բազում բանիւք և սպառնալեօք արարեալ էր, և զսակաւ պատասխանիսն Աշոտայ՝ որ պակաս գրով գրեալ էին առ Վրթանէս, և դարձեալ զմեծարանս Կիւրոնի առ արքայն, և զպարծումն, և զսպառնալիսն՝ որ Հայ-

բապետին Երուսաղէմի, և զայն ամենայն մի ըստ միոջէ։ Զայս ամենայն լսելով Աբրահամու Կաթուղիկոսին ի Վրթանիսէ Քերթողէ՝ զարմացաւ յոյժ. և զմտաւ ածէր և խորհէր ի սրտի իւրում՝ թէ որո՞վ օրինակաւ շահիցէ զԿիւրոն և զաշխարհն, կամ ի՞ւ տարազու յաղթիցէ գոռոզ միրազին։ Գրէ ապա ի պատասխանում անդր որ առ Մովսէս Եպիսկոպոսն, զի անդանդաղ և անյապաղ եկեսցէ այսր ի սուրբ Զատկին, զի բազմաց ասէ լինի խնդութիւն, և գործդ հոգևոր առաջի կայ. և դարձեալ՝ եթէ Տէր Ամբատ աստ է, և փութամբ օրինակաւ ինչ զգործս ի գլուխ հանել. և որ գրեաց ի սուրբ Զատկին գալ, այլ երկրորդ Զատիկ լինէր Աբրահամու գալ նորա յաթոռ Հայրապետութեան։ Եւ որ վասն Ամբատայ գրէ, թէ աստ է, թուի թէ՝ հանդերձեալ էր գնալ յաշխարհն Վրկան, որ զիշխանութիւնն ունէր Մարզպանութեան։ Արդ զայս առաջին թուղթ գրեաց Մովսէս առ Աբրահամ Հայոց Կաթուղիկոս մեծաւ նախանձանօք օգնական լինել նմա յամենայնի՝ որպէս ասացաւ, և բազում ամբաստանութիւն զԿիւրոնէ, և ակնկալութիւն իւր ըստ յառաջիկայ յուսոյն՝ զոր ունէր, և վասն առաջիկայ արկեալ գործոյն հոգայր, զի թերևս հնար ինչ իւրացն կարիցէ գտանել. զի ի բազում վշտաց և ի նեղութենէ սրտին ի տարակոյս մտեալ մտախոհ լինէր, մի՝ վասն իւրոյ հալածանացն՝ թէպէտ և վասն Աստուծոյ, և միւս՝ վասն իւրոյ վիճակին անտէրունջն լինելոյ, զի մի՛ գուցէ այլազգ ինչ լինիցի նոցա, որպէս Կիւրոնին եղև, որ արտաքոյ գտանի կամացն Աստուծոյ. իսկ երրորդ՝ վասն Կիւրոնի կորստեանն և անդարձութեան. և հայցէ մեծաւ աղաչանօք գրով սատարել նմա և օգնական լինել աղօթիւք, և զգրեալսն առ Կիւրոն ի ձեռն արի մարդոյ առաքել. ի մինչ ո՛չ է խապառ գըլորեալ՝ կանգնել կարասցէ։ Այլև վասն իւր և վասն աշխարհին

խորոյ հոգւոյ զմտադրութիւն երկոցունց առաջի արկեալ: Ապա սկիզբն առնէ այնուհետև Ներսէսեան գրել առ Սիւրոն, և յի-շեցուցանէ նմա զամենայն ինչ գրով ի ձեռն պատգամի խրա-ւապետ՝ օրինակ զայս:

## ԳԼՈՒԽ ԽԳ

Թուղթ տեառն Հայոց Կաթողիկոսին առ Սիւրոն Վրաց Կաթողի-կոսն ի ձեռն Պետրոսի Եպիսկոպոսի և այլ Եղբարց ի Խնդրոյ Եպիսկոպոսին:

Սրբասիրի Տեառն Սիւրոնի Վրաց կաթողիկոսի՝ և այլ Եպիսկոպոսաց աթոռակցաց քոց, յՆերսէսէ Հայոց կա-թողիկոսէ և յայլ Եպիսկոպոսաց Տէրամբ ողջոյն:

Յառաջագոյն երանելի Հայրապետն մեր Մովսէս գրեաց առ ձեզ մեղադրութիւն յաղագս հաղորդելոյն ձեր ընդ այնոսիկ՝ որ ոչ էր պարտ: Իսկ ձեր գրով և պատասխանւոյ յանձն էր առ-եալ ոչ հեռանալ ի միաբանական հաւատոց հաղորդութենէ աշ-խարհիս մերոյ: Արդ այժմ զշարագոյնն և զծանրականն ևս հաս մեզ լսել. զի զմիաւորութիւն հաւատոյ և զասպնջակա-նութիւն երկոցունց աշխարհացս Յունաց եկեղեցին ան-շարժ մերձաւորութեամբ պահէր. ուստի և մեր խնդութիւն մարմնաւորականք և հաղորդութիւն հոգևորականք կատարեին ցնծալից ուրախութեամբք, առաւել ի Մծխիթայի խաչդ զօրէլ, և այլոց ի սուրբ կաթուղիկէ, այժմ զջնորաւոյ եկեղեցւոյն Եպիսկոպոսն հալածեալ է, թէ ընդէ՞ր խոստովանել հրաման յես զհաւատս ուղղափառութեան և զպաշտօն հայրենի զարդոյն Լուսաւորչականն զկարգեալն, որպէս լսեմ թէ՝ ի բաց խափանեալ էք, մեզ մահու չափ ևս առաւել զժուարագոյն ցուցաւ գործդ

այդ։ Զի թէպէտ և յամս Կաւատայ արքայից արքայի եղև խնդիր քննութեան մեր աշխարհիս և Հոռոմոց՝ որք զժողովն Քաղկեդոնի ընկալան և ուսմանն Լևոնի, մեր և ձեր աշխարհի Վարդապետք և Իշխանք հեռացան ի հաղորդութենէ նոցա, և միաբանութեամբ երկոցունց և զբոլոր պահէր ի միջի մերում մինչև ցայժմ։ Եւրդ այժմ ոչ է պարտ ձեզ օտարութիւն ի մէջ արկանել երկոցունց աշխարհացս, և հեռացուցանել զսէր և զմիաբանութիւն մարմնաւորական և զհաղորդութիւն հոգևորական, զի մի՛ որ եկեսցէ աղօթել առաջի ի սուրբ խաչդ՝ և այսր ի սուրբ Կաթուղիկէ։ Զի եթէ ի զննութեան ոչ լինէր պատճառ այդպիսի պատառման և չար խռովութեան, ձեզ պարտ էր խնամ տանել և լինել պատճառք խաղաղութեան. իսկ եթէ դու լինիս պատճառ օտարանալ մեզ ի միմեանց՝ մեզ կարիցէ համբերել այդպիսի աղետի։ Կամեցաք Եպիսկոպոսունս առաքել առ ձեզ և Վարդապետս, և ծանուցանել ձեզ զխոտա աղանդոյն Քաղկեդոնի և ուսմանն Լևոնի, և զպիղծ կրօնս և զանհաւատութիւն վարս նոցա՝ որ եմուտ յաշխարհս։ Վասնորոյ սրբասէր Եպիսկոպոսս Մովսէս հալածեալ է. բայց առ ժամս պատշաճ և հաճոյ համարեցաք՝ նախ՝ ի ձեռն Գէորգայ Եպիսկոպոսի և պատուական Եղբարցդ թղթովք ընդունել ի քէն պատասխանի. զի է ինչ՝ որ ոչ հաւատարիմ ցուցաւ մեզ, վասնզի զի՞նչ ընդ օտար Թագաւորութեամբ արքայից արքայի ծառայից սիրոյ միաբանութիւն առնել, և զնաւակիցս ուրջել. այդ կարի դժուարին է։ Ողջ լեր ի Տէր։

Եւ զպատասխանի թղթոյդ և զողջոյն ձեր ըստ հաճոյից Աստուծոյ եղեւ մեզ լսել, որ առիթն է միաբանութեան։

## ԳԼՈՒԽ ԽԵ

### Պատասխանի առաջին թղթոյն Տեառն Աբրահամու Հայոց Կաթողիկոսի՝ ի Կիւրոնէ Վրաց Կաթողիկոսէ։

Սրբասիրի Տեառն իմոյ Աբրահամու Հայոց Կաթողիկոսի՝ եւ ամենայն Եպիսկոպոսաց աթոռակցաց քոց՝ ի Կիւրոնէ Վրաց Կաթողիկոսէ՝ խոնարհ երկրպագութիւն եւ սիրով ողջոյն, եւ յամենայն Եպիսկոպոսաց աթոռակցաց իմոց կրկին խոնարհութեամբ ողջոյն եւ օրհնութիւն ձեզ ի սուրբ Խաչէս։

Թղթոյն ձերոյ՝ որ գրեալ էիք՝ հասու եղէ. եւ վասն արժանի լինելոյ Տեառն իմոյ սուրբ Աթոռ երանելոյ սրբոյն Գրիգորի ժառանգելոյ, եւ վասն ողջութեան ձերոյ մեծապէս ուրախ եղեալ եւ զԱստուծոյ գոհացայ։ Իսկ որ գրեալ էր, թէ յառաջագոյն Հայրապետն մեր Մովսէս գրեաց առ ձեզ մեղադրութիւն յաղագս հաղորդելոյն ձեր ընդ այնոսիկ, ընդ որս ո՛չ էր օրէն, գրեաց առ մեզ վասն Խուժկին եւ ոչ վասն հաւատոյ ինչ իրաց. ես հանդերձ Եպիսկոպոսօք իմովք եւ լաւօք աշխարհիս խորհուրդ արարի՝ օրէնս համարելով ոչ ի բաց ընկենուլ որք դառնան ի զղջումն եւ յապաշխարութիւն եւ ի հերձուածոյ ի հաւատս։ Այլ յորժամ գիտացաք զդառնալ նոցա յիւրեանց տիղմն չարութեանն, նզովեցաք եւ ի բաց ընկեցաք յեկեղեցւոյ. եւ այժմ նոցա ողջոյն ոչ ոք իշխէ տալ։ Իսկ որ գրեալ էիք եթէ վասն հոգեւոր խաղաղութեան եւ մարմնաւոր սիրոյ եկեղեցին Ցուրտաւայ հաստատեալ է ի մէջ երկուց աշխարհաց, եւ այժմ Եպիսկոպոսն վասն ուղղափառութեան հալածեալ է, եւ զպաշտօն հայրենի բաց փոխեալ մեր՝ զպաշտօնն չէ փոխեալ. բայց որ Եպիսկոպոսն եղեւ Վրացի եւ հաւասար գիտէ եւ երկոքումբք դպրութեամբք պաշտօն կատարէ։ Այլ վասն

Յուրատեալ Եպիսկոպոսքն հալածման՝ գործք իւր ծանուցանեն, թէ վասն ուղղափառ հաւատոյ գնացեալ՝ եթէ վասն այլ իրիք, ես զնա ոչ հալածեցի, այլ կոչեցի առ իս խրատ տալ. նա զեկեղեցին եթող և ի գիշերի գաղտ գնաց։ Իսկ այն՝ որ վասն հաւատոյն և ժողովոյն և տոմարին գրեալ էր, և դարձեալ՝ թէ ընդ օտար ծառայից արքայից արքայի միաբանեալ, և զընտանիս ի բաց ընկենուլ, մեր և ձեր Հայրքն ընդ արքայից արքայի իշխանութեամբ էին, և հաւատ զԵրուսաղէմին ունէին, և դուք և մեք նոյնպէս. և արքայից արքայ տիրէ Հոռոմոց և Արեաց աշխարհին։ Եւ չէ այսպէս՝ որպէս դուք գրեալ էիք, թէ որիշ թագաւորութիւնք են. զի Աստուած փառաւորեաց զարքայ, զի նա զիս փառաւորեաց։ Եւ որ գրեալս էիք, եթէ կարէաք Եպիսկոպոսունս արձակել և վարդապետս, որ գային ուսուցանէին. եթէ կամիք արձակեցէք դուք, թող գան. պարտ էր ինձ գալ, և աղօթել ի սուրբ եկեղեցիսդ, և ի ձէնջ օրհնիլ, կամ արձակել զիմ աշակերտս, որ զողջոյն սրբութեան ձերոյ առ մեզ բերէին։ Բայց վասն չար ժամանակիս և աշխարհիս կարեաց՝ խափանեցայք։ Ողջ լերջիք Տէր իմ՝ Քրիստոսիւ Աստուծով։

## ԳԼՈՒԽ Խ.Զ.

### Յաղագս որ ինչ գնին Տեառնն Աբրահամու և Կիւրոնի։

Տեսեալ զպատասխանի թղթոյն Տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի ի Կիւրոնէ, և ի նմա իմացեալ զնենգութիւն Կիւրոնի, որ դեռ ևս ունէր զխմոր չարութեան իւրոյ ծածկեալ յինքեան, այսինքն զհրէական նենգութիւն, զոր յամբարիշտ ժողովոյն ունէր Քաղկեդոնի. զոր առ սակաւ սակաւ յայտա-

պատրաստ, և հեռի առ ի բարիսն, և պատրաստ առ ի չարիսն, զոր ունէր. և ոչինչ զօգուտ ուրուք խորհէր, ոչ զիւր և ոչ զընկերի. զի օտար էր Աստուծոյ արդարութեանն, և զիւրն խնդրէր կացուցանել։ Քանզի ոչ գիտէր զգիրս և ոչ զզօրութիւնն Աստուծոյ. վասնզի յարաժամ պատմեն մեզ գիրք Աստուածաշունչք և օգտակարք զօգուտն մեր խորհել և զընկերին, և զհետ խաղաղութեան ընթանալ և հեռի լինել առ ի չարութիւն։ Վասնզի զոյգ է չար պատրաստութիւն առ վասթարս և պղերգանալ առ լաւագոյնսն։ Արդ այսպիսի խրատք և յանդիմանութիւնք և ևս քան զսոյնս գրեցան առ նա ի Մովսիսէ Հայոց Կաթուղիկոսէ և ի Վրթանիսէ Քերթողէ. և ոչ կարաց ոք յայնցանէ գործել նմա փրկութիւն. վասնզի ոչինչ օգտեաց լուր բանին չամոքելոցն ի հնազանդութիւն. այլ յամենայն ժամ ընդ հակառակսն ձգէր։ Արդ գրել դարձեալ երկրորդ թուղթ Աբրահամ առ Կիւրոն՝ զթածաբար՝ և ոչ այլազգ ինչ, զի մի՛ լիցի ինչ աղմուկ խռովութեան յաւուրս նորա. այլ գրել, մի՛ ասէ առներ զայդ, այլ հայեաց ի քեզ. և մի՛ լինիր պատճառ աղմկի և խռովութեան երկոցունց կողմանց։

## ԳԼՈՒԽ ԽԸ

### Թուղթ երկրորդ Տեառն Աբրահամու Հայոց Կաթողիկոսի առ Կիւրոն Վրաց Կաթողիկոսն։

Զգիր ողջունաբեր ձերոյ ընկալաք. և որ գրեալ էիք՝ թէ ընդ նորոգութիւն սրբոյ Աթոռոյդ սրբոյն Գրիգորի յոյժ խնդացաք, ընդ նմին և զանարժանութիւնս մեր օրհնեալ էիք գոհացեալ զԱստուծոյ։ Արդ յաղագս այդոր(իկ) շնորհահատոյց Տէր եղիցի ձեզ։ Իսկ զոր ընդդէմ և հակառակս գրեցէք,

ծանեաք և զայս։ Արդ մեք զհակառակութեան պատասխանիս և զվիճաբանութեան թողցուք, և ի բաց ընկեսցուք, և փութասցուք ի սէր և ի հաւատ հայրենի միաւորութեան. և ոչ խնդրեմք միայն զանձին օգուտ, այլ զբազմաց, զի ապրեսցին։ Եւ մի՛ պարծեսցուք ի միայն բարգաւաճեալ նազելի անուն սրբոյ քաղաքին Երուսաղէմի, յորմէ զաստուածային փառսն կողոպտեալ մերկացուցին, և զհաւատն առաքելական ի բաց բարձին ի նմանէ, և հոլովս և զանազան հերձուածս և աղանդս սերմանեցին։ Այլ որով դուք այժմ պարծելով գրէք առ մեզ՝ եթէ հայրցն մերոց և ձեր սուրբն Գրիգոր զԵրուսաղէմի հաւատն ետ, և մեք զնոյն ունիմք. և քաջ քննեցէք և տեսէք՝ զի դուք և այլք հանդերձ բնակչօք սուրբ քաղաքին փոխեցայք յայնմանէ, և ոչ ունիք զնոյն։ Իսկ մեք և այժմ ունիմք զհաւատն Երուսաղէմի՝ զայն՝ զոր ի Սիոնէ ասացին ելանել օրէնք և բան Տեառն յԵրուսաղէմէ, ուստի և Փրկիչն մեր ծագեաց Քրիստոս Բանն Աստուած. այլ ոչ եթէ զհայհոյութիւն ունիմք զանիծեալ ժողովոյն Քաղկեդոնի և զպիղծ տոմարն Լևոնի. զոր երբեմն բերեալ սերմանեաց Յոբնաղ անն չԵպիսկոպոս անուանեալ յաստուածակերտ քաղաքն Երուսաղէմի։

Եւ զամենայն աստուածային առաքելական կարգս ապականեաց և վեր ի վայր տապալեաց. եկն մոլորութիւնս այս՝ որպէս յառաջագոյն գրեցաք՝ և ի մեր աշխարհս առ Բաբգենաւ Հայոց Կաթուղիկոս(իւ) և առ Գաբրիէլիւ Վրաց Կաթուղիկոսիւ. և միաբանութեամբ Եպիսկոպոսաց և Ազատաց նզովեցին և ի բաց հեռացան ի միաբանութենէ մեծարելեացն զժողովն և զտոմարն Հրեական. և այժմ գրով պահի առ մեզ։

Արդ աղաչեմ զքեզ մի՛ ախտանալ զախտ ուրացողաց, զի մի՛ ընդ նոսա պատժիցիս, և մի՛ ընդ նզովիւք Հարցն եղիցիս,

և մի՛ զգեհենն ժառանգեսցես: Արդ բան միաւորութեան գրէ առ իս. և ընդ նմին ցոյց տեղի մի ի սահմանս քոյ կամ ի մեր, որ յետ սրբոյ Զատկին զմիմեանս տեսանեմք. և զայն յԵպիսկոպոսէդ լսել ի Պետրոսէ:

## ԳԼՈՒԽ ԽԲ.

### Պատասխանի երկրորդ Նոյնոյ Տեառն Աբրահամու Հայոց Կաթողիկոսի է Կիւրոնէ Վրաց Կաթողիկոսէ:

Զինչ գրեալ էիք իմացայ: Բայց թէև Տէրդ իմ քաջ գիտես, սակայն և մեզ յիշեցուցանել պարտ է. զի որ յառաջ քան զքեզ յայդ սուրբ եկեղեցւոջդ Վարդապետք լինէին, ընդ միմեանս խաղաղութիւն և սէր ունէին, և մի հաւատ, և մի կարգաւորութիւն: Եւ մինչ Մովսէս կենդանի էր, գրեաց առ իս, թէ չէր պարտ հաղորդել ձեզ ընդ խուժիկս, որպէս դուք յիշեալ էիք ի ձերում առաջին թղթին. և ես գիտացի, թէ արդար է, ըստ նորա հրամանին հեռացուցի զնոսա ի մէնջ: Եւ զայդ Մովսէսդ մինչ Ցուրտաւայ Եպիսկոպոս կամեցաք առնել, դմա պարտ էր ասել, թէ ես ի ձէնջ չօրհնիմ, զի դուք չէք ուղղահաւատ: Մինչ յայնժամ օրհնեցաւ ի մէնջ, արդ զի՞ պարտի զմեզ քննել, մի՞թէ յետ այնր ինչ փոխեցաք զհաւատս: Եւ յառաջ քան զդա՝ Եպիսկոպոսք որ ի Ցուրտաւ լեալ էին, ի սրբոյ Շուշանկանէն և այսր, Եփոց, Գառնիկ, Սահակ, Եզիայ, Յակոբ, Ստեփաննոս, Եսայի, Սամուէլ, միւս Ստեփաննոս, Յովհաննէս, և այլ Եպիսկոպոսունք ոմանք, և չէր ինչ հակառակութիւն լեալ ի մէջ երկոցունց կողմանցս. այժմ զի՞ եղև, և մեք ոչ գիտեմք:

## ԳԼՈՒԽ ԽԹ

### Որ ինչ զինի երկրորդ թղթին Աբրահամու եւ պատասխանոյն Կիւրոնի։

Իսկ արդ յայտնի է թուղթս՝ զոր գրեաց Աբրահամ առ Կիւրոն՝ յուշ առնելով նմա զառաջին ժամանակն՝ որ վասն ուղղափառութեանն, եւ դարձեալ՝ սակս հակառակութեան չարափառացն, եւ յաղագս ընդդիմաբանութեան՝ մանաւանդ զայն՝ զոր վաղուրեմն յԵրուսաղէմ եղեւ առ Յոբնաղաւ չարիմաց Եպիսկոպոսի. որ երբեմն ուղղափառ զոլ ասէր զնա, եւ ապա չարափառ նման Կիւրոնի իւրով չարիմաց մտածութեամբն։ Զի չար սերմն հայհոյութեան Քրէական հերձուածոյն, որ յառնիծեալ ժողովն եհաս Քաղկեդոնի, նմանապէս եւ ի պիղծ տոմարն Լեւոնի նա սերմանեաց, եւ այլ որ ի ժամանակս Բաբգենի Հայոց Կաթուղիկոսի եւ Գաբրիէլի Մրաց Առաջնորդի եղեւ. եւ դարձեալ զմիաբանական ժողովոյն խորհուրդ՝ որ յաղագս այնորիկ Եպիսկոպոսաց եւ Աղուանից՝ որպէս վերագոյնդ ասացաւ, եւ զայլ եւս եղեալ իրս՝ որ ի ժամանակս լեալ՝ յուշ առնէ նմա։ Ապա յաղաչանս դառնայ դարձեալ խրատական բանիւք՝ գնալ արժանապէս ըստ գնացից առաջնոց հարցն. եւ դարձեալ ժամադիր եւ տեղի խնդրէ դիպելոյ միմեանց. զի՝ թերեւս կարիցէ բերան ի բերան բանիւ ինչ բժշկել զնա, եւ դեղ. դնել բուժական վիրացն՝ զոր վիրաւորեաց ինքն ինքեան։ Իսկ ապա նա խոշտանգեալ ի հրեշտակէ, խոստովանի զյառաջագոյն միաւորութիւնն երկուց կողմանցն՝ եւ դաշնաւորութիւն՝ զոր ի ձեռն գրոյ հարքն առաջինք հաստատեցին որ ի Հայք եւ ի Վիրք. եւ ապա զերանելոյ զԵպիսկոպոսին Ցուրտաւայ, թէ զի՞ եղեւ քինիչ, ի թիւ արկեալ զԵպիսկոպոսունս՝ զոր ի սրբոյն

Ուշանկանէ մինչև առ նա. և որ ինչ զկնի այսոցիկ բանք, զոր յաջորդն յայտ առնէ. և նոր ի ժամանակս Մովսիսի Հայոց Կաթողիկոսի սկսաւ ծածկել և կեղծաւորութեամբ առնել պատասխանի, զնոյն և սա. զի թէպէտ և ի տեղիս տեղիս կարծիս տայ ի մօտ գալ, և դարձեալ փախչի անչափ հեռաւորութեամբ: Բայց զպատասխանոյն ոչ արարից զանց՝ որ առ Վրթանէս լի քաղցրայայտ չարութեամբ՝ որպէս պատմի յիւրում թղթի անդ՝ որ առ Մովսէս Եպիսկոպոսն Ցուրտաւայ: Այլ թէպէտ և առ մեզ ոչ գտաւ պատասխանին այն թղթոյն՝ որ առ Կիւրոն՝ և առ Իշխանս աշխարհին՝ և առ Պետրոս. սակայն ի բանից տեղեկացեալ եղև ի Մովսիսէ և ի Վրթանիսէ՝ որ առ միմեանս գրով. զոր լուեալ ի մանկանէն Մովսիսի, և սակաւ ինչ գիր, զոր գրեալն էին Աղուանցն, զոր չէր արժան ըստ մերում գրոյն այնպէս պատասխանիլ, զի զարժանն ոչ ինքն արար ասէ պատասխանի, և ոչ այլում ետ առնել: Վասնզի լի բարկութեամբ էր, զոր օրինակ հիւանդ ոք ի չար ցաւս գունատեալ, և ոչ ակն ունել ուստէք բժշկել. նոյնպէս և նա: Արդ գրէ դարձեալ և այլ ևս թուղթ առ Կիւրոն, և ասէ զթածարար և ողոքական բանիւք այսպէս: Թէպէտ և նա ոչ էր լսելոց ի հնչմանէ բանիցն:

## ԳԼՈՒԽ Ծ

### Թուղթ Երրորդ Տեառն Աբրահամու Հայոց Կաթողիկոսի առ Կիւրոն Վրաց Կաթողիկոս:

Ո՛չ ինչ առնեմք մեզ պատուական եղբայր՝ զԱստուածային պատուիրանացն զձայն՝ որ միշտ բողոքէ մեզ, եթէ զգոյշ կացէք հօտիդ, որում եդ զձեզ Հոգին սուրբ հովուել զժողո-

վուրդս Տեառն, զոր փրկեաց պատուական արեամբն իւրով, և ասել, թէ համարս տալոց էք ընդ նոսա. և մեք ի ծուլութենէ հարեալ եմք՝ և մեղկք և ծոյլք:

Արդ այս երիցս անգամ գրեցաւ առ քեզ, զի ի բերանոյ երկուց և երից վկայից հաստատեսցի ամենայն բան: Արդ՝ գրեալ է, փորձեցէք զամենայն ինչ, և զբարին ընկալարուք, և յամենայն չարէ ի բաց կացէք. և դարձեալ, թէ հաստատեցէք զմիմեանս. և զննեցէք զիրեարս, և միոյն առաւելութիւն զմիւսոյն պակասութիւնն լցցէ: Իսկ արդ մի՛ հեղգասցուք զսէր Հոգւոյ (որ) կայր ի մէջ երկուց ազգաց՝ նորոգել. և զայն որ ի միոջէ աղբիւրէ առեալ է զվարդապետութիւն, որ նախ ինքեանք առին զկենդանութեան լոյսն, որպէս ուսուցին մեզ մարգարէքն և առաքեալքն, և ապա ձեզ և մեզ սերմանեցին առհասարակ զուղղափառ աստուածպաշտութիւն, նախ երանելին սուրբ Գրիգոր, և ապա Մաշտոց. և պարտ է մեզ կեալ նովիմբ մինչև ի գալուստն Աստուծոյ մերոյ Տեառն Յիսուսի Քրիստոսի. և յայդպիսի վրիպեալ մնաց ի բաց փախչել արժան է: Քանզի առաքեալքն և որք ի նոցանէ ճշմարտութեամբ ուսանին և մեզ ուսուցին ի սուրբ Երրորդութիւնն մկրտել, ըստ Փրկչին Բանին, և զՈրդի յԵրրորդութենէն մարմնացեալ և միացեալ մի լեալ քարոզեցին, և զնոյնն Աստուած ընդ Հօր և սուրբ Հոգւոյն, և ասեն այսպէս, մի է Տէր մեր Յիսուս Քրիստոս. և դարձեալ, որոց և Քրիստոս ի վերայ ամենայնի Աստուած օրհնեալ յաւիտեանս, ամէն: Իսկ այլ դարձեալ ի Կաթուղիկէին ասէ. Աստուած ճշմարիտ և կեանք յաւիտենականք. և բազումք նոյնպէս և մարգարէքն՝ սկսեալ ի Մովսիսէ մինչև ցՅովհաննէս Մկրտիչ յառաջագոյն ծանուցեալ վկայեցին: Իսկ եթէ վասն ճշմարիտն մարդ լինելոյ առաքեալն յիշատակէ ասելովն, թէ մարդով եղև յարութիւն մեռելոց. և դարձեալ, եթէ եր-

կրօրդ մարդն Տէր ի յերկնից. ոչ ըստ բնութեան ինչ ճառեն առաքեալքն, այլ վասն այնր՝ զի իւրով մարմնովն որ ի սրբոյ Կուսէն Աստուածածնէ էառ՝ մարդ է, և իւրով մարմնովն Աստուած, և ոչ երբեմն մարդ և երբեմն Աստուած՝ մի՛ լիցի, չ՛քարոզեն այնպէս: Այնպէս և երանելի Հարքն՝ որ ի Նիկիայ ժողովեցան, այսպէս ուսուցին ըստ առաքելոցն վարդապետութեանց, հաւատալ աւեն մի Աստուած՝ Հայր ամենակալ՝ արարիչ երկնի և երկրի, և մի Տէր Յիսուս Քրիստոս. այլ ոչ երկուս բնութիւնս կամ երկուս որդիս ասացին, այլ զմի Տէր Յիսուս Քրիստոս ծնեալ ի Հօրէ անճառաբար, և զնոյն մարմնացեալ ի սրբոյ Կուսէն, և մարդացեալ, խաչեալ, և թաղեալ, և յարուցեալ, և համբարձեալ, և գալ ի դատել. որոյ թագաւորութեանն վախճան ոչ գոյ. և ի սուրբ Հոգին՝ որով խօսեցան առաքեալքն և մարգարէքն. զայս սկսաւ հաւատ եկեղեցի Աստուծոյ ի սրբոց առաքելոցն, և սովիմբ պարծի ի վերինն Երուսաղէմ ժողով լինել: Իսկ պիղծ ժողովն Քաղկեդոնի հակառակ սուրբ առաքելոցն և սուրբ ժողովոյն Նիկիայ, խոստովանեցին երկուս բնութիւնս ասել միոյն Քրիստոսի՝ խաբելով զպարզամիտս, և փոխանակ սուրբ Երրորդութեանն՝ չորրորդութիւն քարոզեցին: Նոյնպէս և անիծեալ տոմարն Լևոնի ասէր այսպէս. պարտ է ասէ վասն Քրիստոսի Աստուծոյ ազդէ կերպարան երկուց բնութեանն ընդ յընկերին շարայարութեամբ, միովն գործել զԱստուածայինն որ ինչ վայելէ, իսկ միւսովն զմարդկայինսն՝ որ ինչ մարդոյ արժանն է. և այլ բազում ինչ այսպիսի բարբաջեն. ապա լոկ խոտորումն Աստուծոյ: Արդ եթէ չե՛ք փոխեալ ի մերոց հաւատոց, որպէս բազում անգամ գրեցիք առ մեզ ընդունել զանիծեալ ժողովն Քաղկեդոնի և ըզպիղծ տոմարն Լևոնի, նզովէ և դու որպէս և նախնին քո երանելին Գաբրիէլ Կաթուղիկոսն Վրաց նզովեաց զնոսա ընդ ե-

բանելի հայրն մեր հանդերձ աթոռակցօք իւրովք, որոց ան-ուանքն են այսոքիկ. որ ինքն Գաբրիէլ Եպիսկոպոս Մծխի-թայի անուանի, և Պաղդէն Եպիսկոպոս Թագաւորութեան տանն, Եղիփաս Եպիսկոպոս Ըսսուրիաղէ, Սամուէլ Եպիս-կոպոս Տիմուէլ, Գաւիթ Եպիսկոպոս Բողնիսայ, Յակոբ Եպիս-կոպոս Սրշաւի, Ստեփաննոս Եպիսկոպոս Ռուզթաւի, Սահակ Եպիսկոպոս Տփխեաց, Եզատէս Եպիսկոպոս Մանգլեաց, Ջնէս Եպիսկոպոս Մարուելի, Եւգինիս Եպիսկոպոս Սամթա-ւայի, Յովսէփ Եպիսկոպոս Ըդուննելի, Յօհան Եպիսկոպոս Սառութի, միւս Յովսէփ Եպիսկոպոս Կումրայ, Ղազար Ե-պիսկոպոս Բողկղնլա, Թէոդորոս Եպիսկոպոս Փորթայ, Զա-քարիաս Եպիսկոպոս Կասսացի, Փիլաս Եպիսկոպոս Ըստեր-միւղայ, Իսահակ Եպիսկոպոս Հնարակերտի, Մովսէս Եպիս-կոպոս Տարոի, Բասնդենէ Եպիսկոպոս Բորդանայ: Երդ այս երանելի Եպիսկոպոսունք, որ յաշխարհէդ ձերմէ էին, և ընդ Եղուանք, և ընդ Սիւնիք ի Հայս հանդիպեցան յաւուրս Բար-գենի Հայոց Կաթողիկոսի. յայնմ ժողովին յորում անիծաւ ի նոցանէ միաբանութեան ժողովն Քաղկեդոնի, և տոմարն Լևոնի և աղանդոյն: Իսկ դարձեալ գրեցէք միանգամ և երկիցս թէ յառաջ և դուք զԼուսաւորչին հաւատն ունէիք: Եւ արդ ունիմք մեք զայն որ յառաքելոցն քարոզեցաւ, որպէս և գրեալ է, եթէ ի Սիօնէ ելցեն օրէնք, որ են առաքելականքն ժողո-վեալ ի Վերնատունն, և Բան Տեառն յԵրուսաղեմէ, որ է Բանն Աստուած Քրիստոս: Եւ զոր ի նոցանէ ուսաք, պահեմք և պահեսցուք միշտ և յաւիտեան: Եւ այլում պատուիրեմք մի՛ խոտորիլ, և մի՛ օտար ուսումն ուսանել: Քանզի զայս գիտէք Պօղոսի առաքելոյ, որ գրեթէ զարմանամ, զի այդպէս վաղվաղա-կի փոփոխիք յայլ յԱւետարան, որ ոչ գոյ այլ, և ոչ միայն իմացիք զայս, այլ թէ և մեք սակ կամ Հրեշտակ աւետարա-

նեն ձեզ քան զոր աւետարանեցաքն, նզովեալ եղիցին։ Իսկ զնոյն և ես ասեմ՝ զոր առաքեալքն ասեն։ Իսկ զոր վասն Եպիսկոպոսին Յուրտաւայ գրեալ է թէ՝ յորժամ ոչ գիտէր զմեզ ուղղափառ, չէր արժան օրհնիլ ի մէնջ. երդմամբ հանդերձ հաստատեաց զայդ անդի՝ թէ չ՚գիտէաք. բայց զի յետ ձեռնադրութեանն ծանեաք։ Որ և մեզ կարի հաւատարիմ թուեցաւ. քանզի չ՚գիտէր ոք յուղղափառաց ստոյգ զայդ այդպէս։ Վասն զի երանելին Մովսէս՝ որ յառաջ քան զիս զառաքելական աթոռս (յաջորդեալ) յորջորջեալ էր, չ՚գրեաց այնպէս, թէ դուք չէք ուղղափառ, այլ թէ ընդ չ՚ուղղափառսն ընդէ՞ր հաղորդեցայք։ Արդ ինձ՝ այս անգամ յաղագս անիծեալ ժողովոյն Քաղկեդոնի և պիղծ տումարին Լեոնի՝ թէ որպէս ընդունիք՝ ճշմարտութեամբ և հաւաստի պատասխանի արարէք. և թէ Աստուած կամի և բան միաւորութեան դնես, թող ժամադրես ինձ և քեզ տեղի մի գալ, լինի խաղաղութիւն՝ թէ Աստուած կամի։ Եւ զայլն յԵպիսկոպոսէդ տեղեկանայք ի Պետրոսէ։

## ԳԼՈՒԽ ԾԸ

Պատասխանի երրորդ թղթին Տեառն Աբրահամու Հայոց Կաթողիկոսէ ի Կիւրոնէ։

Սրբասիրի և ճշմարտասիրի Տեառն Աբրահամու Հայոց Կաթողիկոսի, ի Կիւրոնէ Վրաց Կաթողիկոսէ խոնարհութեամբ և սիրով ողջոյն։

Ահաւասիկ այս է մինչ երրորդ թուղթ դրեցաւ առ ձեր սրբութիւնդ։ Որ եթէ զհաւատս մեր կամիք քննել և գիտել, տուր թարգմանել և բերել զգիրս չորից ժողովոյն, որով Հո-

ունք վարին, և ի սուրբ Անաստաս և ի սուրբն Սիովնոյն քա-
րոզի. եթէ կամիք և եթէ չկամիք՝ հաւատ մեր այդ է։ Եւ այն՝
զոր գրէք առ մեզ թէպէտ վասն ողջունի՝ թէպէտ վասն այլ
ինչ պատճառի և պիտոյից՝ որ սիրոյ մասամբ լինի՝ գրեցէք,
ընդունիմք. բայց վասն այսր դատաստանի աւելի առ իս մի՛ ինչ
գրէք և մի՛ աշխատ լինիր. ապա թէ ոչ պատասխանի ոչ ըն-
դունիս։ Արդ եթէ միաբանութիւն և սէր կամիս պահել և
կեալ ընդ ձեզ խաղաղութեամբ՝ որպէս և Հարքն մեր և ձեր
կեցին, մեք պատրաստ եմք ի խաղաղութիւն։ Իսկ եթէ տարազի
ինչ կամիք խորհել, ես աւելի աշխատ մի՛ լինիք. և յաղագս
այդորիկ այլ մի՛ գրէք առ մեզ. զի ապա ինձ ընդ Հայս՝ բայց
եթէ ճանապարհաւ հասանիցէ անցանել երբէք, եթէ ոչ այլ
ինչ գործ չկայ։

## ԳԼՈՒԽ ՆԲ

### Որ ինչ զկնի երրորդ պատասխանոյն պապին վասն Կիւրոնի։

Արդ զայս այսպէս պատասխանի արարեալ Կիւրոնի լրբաբա-
նութեամբ առ Աբրահամ, զի որքան յայնժամ յոյս էր ուղ-
ղութեան և զգուշութեան, իսկ այժմ քաջասատարութիւն
զհակառակութիւնսն ընդ դէմ իւրոյ փրկութեանն։ Նա և
յերկրորդ թղթին այսպէս ընդդիմաբանեալ ընդ հակառակսն
ձեպիւր. այլ թէպէտև յիւրում կարգին մեք ոչ յիշատակե-
ցաք՝ բաւական համարելով զանարժան պատասխանիս նորա,
բայց դարձեալ ասեմք յաղագս յանդիմանելոյ զնա. վասնզի
ինքն զինքն իսկ յանդիմանեաց. քանզի խոշտանգեալ ի հրեշ-
տակէ խոստովանի զատոյգ. բազում Եպիսկոպոսունք՝ ասէ,
ոմանք ի Հայոց ոմանք ի Վրաց ի Հայս ուսեալք, և գիտունք

և Վարդապետաց, և ընդ միմեանս խաղաղութեամբ կային, ի միմեանց ուսանէին, և ի սրբոյն Շուշանկանն ի պաշտօն գային և ի Մծխիթայ յաղօթել, և օրհնաց հաղորդէին։ Նոյնպէս և որ աստի անդր գային, այնպէս առնէին. ի սուրբ Կաթուղիկէ և յայլ յեկեղեցիսդ յաղօթս կային, և անխիղճ ի միմեանց հաղորդէին ի մարմին և յարիւն Փրկչին օրհնօք հաւատոյն և սիրոյն, և միաբանութիւն էր Հայոց և Վրաց ընդ միմեանս. և ամենեքեան իսկ վիճակ սրբոյն Գրիգորի, և միաբանութեամբ ընդ հաւատոյն Երուսաղէմի. . . . չէին լեալ ի ներքս. իսկ այժմ ուստի՞ եղեն այդ զօր Երուսաղէմացի սրբոյն Յակոբու եղբօրն Տեառն զանեղին յաջորդեալ է, և նա մեզ հաւատ տուեալ՝ և մեր հարանցն՝ և մեզ մինչև յայս պահեալ. արդ զիա՞րդ թողուցումք զայն՝ և ձեզ հաւատասցուք. և կամ այլ եպիսկոպոսունք և թագաւորք և իշխանք և ամենայն բընակիչք աշխարհիս մերոյ զնոսա զամենեսեան զիա՞րդ մարթի թողուլ, և ընդ ձեզ միաբանել։ Եւ ոչ գիտէր Թշուառականն, թէ ինքն եղև պատճառ կորստեան անձին իւրոյ և նոցա։ Եւ դարձեալ ասէ, այս երեսուն և հինգ եպիսկոպոսունք՝ որ ի Վրկան չեն ուղղափառ և գիտուն, այդ Մովսէսդ մին եղև ուղղափառ։ Եւ այսպէս յամենայն թուղթս իւր մաքառի, և գոռայ ընդ երանելւոյն Մովսիսի. վասնզի նա եղև պատճառ յայտնելոյ զչարութիւն նորա, զոր ծածկեալ ունէր պատրուակաւ կեղծաւորութեամբ։ Եւ ոչ յայնժամ միայն, այլև յամենայն ժամ, որ այժմ ևս տակաւին առագաստ ձգեալ կայ ի վերայ սրտից նոցա, և ոչ վերանայ. քանզի Քրիստոսիւ խափանելոց է. բայց աս առ սակաւ յայտնէ զիւր զչարութիւնն աստանօր և յայլում վայրի, նախ ի պատասխանում թղթին՝ որ առ Վրթանէս, թէպէտև ոչ գրով է բովանդակ, զոր առ ինքն և առ այլսն՝ սակաւ գրով, և

բաղում բանիւք և սպառնալեօք ի ձեռն մանկանն Մովսիսի, զոր այլ ընդ այլոյ արարեալ, իբրև հիւանդ ոք ի չար ցաւս մտեալ, և առ նեղ անձին իւրոյ ոչ գիտէ զի՞նչ խօսի։ Բայց ապա ի հաւան եկեալ կեղծաւորութեամբ, մեք ասէ զայս ունիմք հաւատ և զայդ, և օրինաց աստ հաղորդիմք և անդր։ Ու դարձեալ մեր Հարքն՝ ասէ՝ և Վարդապետք և ամենայն բնակիչք աշխարհիս՝ յորժամ գային անդր՝ աղօթէին ի սուրբ եկեղեցիսդ. նոյնպէս և ձերդ աստ գային առ սուրբ Խաչս Մցխիթայի՝ և աղօթէին. և այսպիսի բանիւք խոստովանի և մօտի, և գործովք ուրանայ և հեռանայ, և. անուամբքն միայն մեծարէ, այլ ոչ. արդեամբ՝ ըստ Տերունական բանին, թէ ժողովուրդս այս շրթամբք իւրեանց մեծարեն զիս, և սրտիւք իւրեանց հեռացեալ մեկուսի են յինէն, և զուր պաշտեն զիս։

Երդ զայսոսիկ միանգամ և երկիցս գրեալ էաք յայլում տեղւոջ, է ինչ՝ որ յիւրաքանչիւր թղթոց անտի, և է ինչ՝ որ մեզէն իսկ կրկնաբանեալ, որ կարծեմ ոչ զերծանիմք ի բամբասելոյ ի ձէնջ։ Բայց գիտէք, զի յորժամ ցաւք հիւանդին խիստ հանդիպի, հեծն յոլով ելանէ. բայց յաղագըս սատուգելոյ յաւելուած գրել զնորա որոմանցն, որ սերմանեաց ի վերայ ցորենոյն իւր մահաշունչ բերանովն. որ ըստ կարի յապաղմանց իւրոց հազիւ յայտնեաց զանձառելիսն զոչ գովելոյ արժանիսն։

# ԳԼՈՒԽ ՂԳ

## Յաղագս Պետրոսի Նոպիսկոպոսի։

Պետրոսս այս Նոպիսկոպոս լեալ ի տան դրան Նոպիսկոպոսին յաւուրս Աբրահամու Հայոց Կաթուղիկոսի, այր կորովամիտ, և ճոխախօս, և ճարտարաբան, և բանիբուն դպիր։ Զսա առաքեալ Աբրահամ առ Կիւրոն զկնի թղթոցն իւրոց հանդերձ աղաւտ արամբք, զոր յերկրորդում նուագի անդ սպառնացեալ նմա իշխանքն Վրաց՝ եթէ մի՛ առնես երթևեկ ի մեզ վասն հաւատոյ ինչ իրաց. ապա եթէ ոչ՝ մեռանիս ի ձեռաց մերոց. և կամ զի՞ այդպէս յարձակեալ ես ի վերայ մեր գայլաբար գալով քո առ մեզ գրով և պատգամաւ. զոր յայսմ բանէ պարծին դեռ ևս բնակիչք Վրաց աշխարհին, աւանդութեամբ ի միմեանց առնելով որդի ի հօրէ ուսեալք, եթէ զձեր Գայլ Պետրոսն սպանին Իշխանքն մեր ի վերայ լերինն՝ որ կոչի Կանգարք. բայց մեք ոչ գիտեմք այնպէս լեալ՝ որպէս նոքայն ասեն։ Նաև Հոռոմք կոչեն Գայլ զՊետրոս Անտիոքացին, որ փախեաւ ի չար ժողովոյն Քաղկեդոնի. և ասեն ոմանք՝ մի լեալ զայս և զայն. զոր ոչ սոքա զայն գիտեն, և ոչ նոքա զայս. զի այն Պետրոսն յամբարիշտն Մարկիանոսի ժամանակս էր, և այս ի Մօրկայ կայսեր. բայց նոքա անիմաստ մտօք կարծեն և ասեն մի։ Զի ի Մարկիանոսէ մինչև Մօրիկ են ամք ՃՂ։



# ԳԼՈՒԽ ՂԲ

Թէ ո՞րպէս պատիժ հասն Բդեշխոյն Աշուշայ Վրկան Մարզպանին. և դարձեալ է նոյն խորհուրդ:

Եւ զթուղթն Սմբատայ Վրկան Մարզպանի ոչ գտայ ի կարգի գրեալ ի գիրս Թղթոցն՝ յորում հանդիպեցաք. նոյնպէս ապա և ասա եղև անցանել միանգամայն. և մոռացեալ եղև. քանզի կարծիս տայր մեզ խորհուրդ բանին, եթէ զկնի առաջնոյն թղթի Աբրահամու էր՝ որ առ Կիւրոն թուղթս այս: Քանզի խնդրեալ յայլ օրինակի գտաք այսպէս՝ որպէս կարծէաք. քանզի և ինքն իսկ թուղթս յայտ առնէ ճանաչօք բանիւք. զոր ի թղթի անդ Աբրահամու՝ որ առաջին գրեցաւ առ Կիւրոն, եթէ համազոյգ և միաբան և ախոյանակից են միմեանց: Քանզի անդ ասէ, եթէ կամեցաք Եպիսկոպոսունս առաքել առ ձեզ հանդերձ Վարդապետօք, որ զայլն ծանուցանէին ձեզ զօրինակ աղանդոյն Քաղկեդոնի և այլ հերձուածողաց, զի դուք ստուգիւ գիտակ լինէիք. և ասա զնոյն յիշէ դարձեալ և այլ ևս մեղադրանք որ առ Կիւրոն. եթէ ոք՝ ասէ՝ յաշխարհականաց և ի տգիտաց լինէր պատճառ, քեզ պարտ էր խրատել՝ թող թէ քեզ առնել զայդ: Եւ դարձեալ զամենայն սէր և զմիաբանութիւն հոգևոր և մարմնաւոր առաջի արկանէ, և իսկզբն տեղեկութիւն տայ նմա զհաստատութիւն հաւատոյ երկոցունց կողմանցս, և եթէ աշակերտք եմք սրբոյն Գրիգորի մեք և դուք, և եթէ զհաւատ ուղղափառութեան ունիմք զոյգ զսրբոյ Հարցն աւանդեալն մեզ: Եւ դարձեալ, եթէ լուեալ է մեր յաշխարհականաց ոմանց զպակասութիւն ձեր սակս հաւատոյ, և սակաւ ինչ հաւատացաք. որ ապա և յԵպիսկոպոսէս Յուրտաւայ տեղեկացեալ՝ ստուգիւ հաստա-

տեսցուք։ Եւ դարձեալ զսուրբ վկայարանս զսրբոյն Շուշանկայ՝ որ միջնորդ էր խաղաղութեան և տեղի աղօթից երկուց կողմանցս։ Այսպիսի բանք միաբանի թղթոյն Աբրահամու։ Եւ դարձեալ յիւրում պատասխանում անդ՝ որ առ Եպիսկոպոսն Ցուրտաւայ, զսոյն նշանակէ բան, թէ համազգիք են միմեանց, և ի միասին երթեալ թուղթքս այս առ Կիւրոն։ Եւ յայլում տեղւոջ ասէ, եթէ ի միասին գրեցաք զթուղթդ մեք և Տէր Աբրահամ։ Քանզի այսպէս ասէ առ Մովսէս. քո հոգդ նախ առ ողորմութիւնն Աստուծոյ յանձն եղեցի՝ ասէ, և ապա Տեառն Կաթուղիկոսի, թող զի գրէ նա ասէ երկիցս անգամ և երիցս։ Արդ քանզի ոչ թուեցաւ մեզ օտար ինչ և հեռի յառաջին խորհրդոյն թուղթս այս, որ գրեցաւ ի դիմաց Աբրահամայ առ Կիւրոն, թէպէտև սակաւ ինչ ընդմիջեցաւ յառաջին թըղթոյն Աբրահամու, վասն այնորիկ յայտ արարաք մեք։

## ԳԼՈՒԽ ԾԸ

### Թուղթ Տեառն Աբրահամայ Վրկան Մարզպանի առ Կիւրոն Վրաց Կաթուղիկոս։

Արքասիրի Տեառն Կիւրոնի Վրաց Կաթուղիկոսի և այլ Եպիսկոպոսաց աթոռակցաց ձերոց և Իշխանաց աշխարհիդ Ատրներսեհի և ամենայն լաւացդ, ի Աբրահամայ Վրկան Մարզպանէ և Տերանց զինուորէ և Գաշտկարնէ և ի Վարդապետէ Հայոց Շարասաղարէ՝ և յայլ յԱզատաց՝ խոնարհութեամբ և սիրով ողջոյն։

Քանզի որպէս յառաջագոյն հարցն մերոց և ձեր և Վարդապետաց աշխարհիս միաբանութեամբ զյետին կարգս ումանց և զատելի վարս տեսեալ, որ աննման և թերի էր, ի մեր հաւա-

տոյս և ի կանոնաց մերժեալ էր զնոսա Նզովիւք. և յայնմհետէ ամենայն հակառակութիւն եղև և Քրիստոս Աստուած փառաւորեցաւ. երանելի Հայրն մեր և սուրբ Վարդապետացն հաւատն հաստատեցաւ, և եղաք ամենեքեան մի հաւատ՝ որ ընդ արքայից արքայի իշխանութեամբս եմք։ Արդ զայսոսիկ հարկաւորեցաք գրել առ ձեզ, և զձեզ ընդ մեզ միաբանեալ որպէս և մեր Հարքն էին։ Քանզի ի միոյն իսկ վարդապետի աշակերտ և վիճակ եմք լեալ, և նովին հաւատով որպէս և Հարքն մեր և զյոյս և զհաւատ առ Աստուած ունել և զսէր առ միմեանս. բայց արդ է ինչ լուր՝ որ յաշխարհականաց լուաք. և սակայն չհաւատացի. իսկ հաւատացի և յԵպիսկոպոսէս Յուրտաւայ՝ որ աստ է, լուաք և կարի դժուարացաք։ Քանզի մեր և այդ աշխարհի ազատերոյ թէպէտ արիւն և հարազատութիւն ի միջի կայր, բայց հաստատութիւն և վստահ լինել մեզ որպէս յերդումն ինչ այդ սուրբ վկայարանդ՝ որ ի Յուրտաւայ պատուական եկեղեցիդ հայրենի որ ի ձեր միջի էր, և փոխեն թշնամութիւն իմն ի մէջ արկանէ, մանաւանդ թէ թերութիւն՝ արգելեալք և զմեզ որք աստի կամին գալ և երկրպագանել սրբոյ Խաչիդ, և ոչ գալ մտա. և որք այտի գան ի սուրբ Կաթուղիկէ և յայլ վկայարանս աղօթել. և այս մեծի պարգևի որ յԱստուծոյ տուան մեզ՝ և ձեզ խափանումն լինի. եթէ ոք յանխրատից կամ ի տգիտաց լինէր, քեզ պարտ էր խրատել վարդապետութեամբ զայնպիսին և պատուհասել, որ հակառակութիւն ի միջոյ բառնայր, թող թէ քեզ առնել զայդ, որ կարի անհնարին չար է։ Կամէաք Եպիսկոպոսունս հանդերձ քերթողօք արձակել, որ գիտեն զչարութիւն հերձուածոյ, որ զձեզ ի վերայ հասուցանէին, և զճշմարտութիւն ծանուցանէին։ Բայց ապա առ ժամս բաւական համարեցաք ի ձեռն աղատարանցդ նախ թղթով զկամս ձեր գիտել։ Ողջ լերուք։

## ԳԼՈՒԽ Ղ.Ե.

### Պատասխանի թղթոյն Տեառն Սմբատայ Վրկան Մարզպանի է Կի-րոնէ Վրաց կաթողիկոսէ։

Փառաւորելոյ Տեառն Սմբատայ Վրկան Մարզպանի, և Տե-րանց զինուորի՝ Դաշտկարնի՝ և Վարդապետի Հայոց Հար-տաղարի, և այլոց ազատորերոյ Հայոց աշխարհիդ՝ ի սրբոյ Նշա-նէս աղօթք, և ի Կիւրոնէ Վրաց կաթուղիկոսէ՝ և յամենայն Եպիսկոպոսաց աթոռակցաց իմոց և յիշխանաց յԱտրներսեհէ և յԱշուշանէ և յամենայն լաւաց աշխարհիս Վրաց՝ խոնար-հութեամբ և սիրով ողջոյն։

Օթուղթս՝ զոր առաքեալ էր՝ տեսի, և զողջոյն ձեր լսե-լով՝ խնդացի։ Եւ որ գրեալ էր, թէ զհարանց մերոց և մեր զթիւր և զառելի զկարգս ոմանց և զհաւատս տեսեալ խոտե-ցին և ի բաց ընկեցին. վասն այդր բարերարութեան հրամանի զՏէրդ յայդ գործ պարապեցուցանելով. Աստուած զարքայից արքայ անմահ արասցէ. և զքեզ Տէր Տէրանց աւելի պատուա-կանագոյն արասցէ զաւակօք հանդերձ՝ քան որչափ եսդ։ Որ վա-սըն հաւատոց գրեալ էր, թէ Հարքն մեր և ձեր միաբան էին. թէ որովհետև սուրբն Գրիգոր զուղղափառ հաւատս ուսոյց մեզ, որ յԵրուսաղէմին ուսաւ, զդոյն հաստատեաց, և անսղալ մեր և ձեր հաւատ այդ է. իսկ եթէ Մովսէսդ այդ այլազդ ըն-դունի, զոր ոչ ընդունէաք մեք և դուք, և դուք կամիք դմա հաւանել, և նորաձևս առնել, մեք այդմ ոչ հնազանդիմք։ Վասնզի զոր ինչ ուսաքն՝ ոչ թողումք. քանզի մեր եկե-ղեցիքս այսպէս հաստատեալ են, նոյնպէս և Յուրտաւայ եկե-ղեցին որպէս էն և կայր և կայ, և պաշտօն եկեղեցւոյն չէ ինչ փոխեալ կարգն։ Բայց զի Եպիսկոպոսն, զոր առաքաք, Վրացի

և Հայ դպրութիւն գիտէ, և զպաշտօն կատարէ երկոքումբք։ Բայց իմ սրտի պակասութիւն մեծ է մարդոյ միոյ բանից հաւատալ ձեզ, որ և իւր գլխոյն չէր հաւատարիմ, թող թէ վասն մեր. որ վասն չար գործոց իւրոց գաղտ գիշերի փախստական գնաց, և յապստամբն գնաց առ Վահրամ. և այնպէս չարութիւն գնաց առնել. զի սակաւ ինչ պիտեցաւ, և դեռ զքաղաքս առնուլ տայր, և Արեաց աշխարհիս մեծ վնաս հասուցանէր։ Նա արդ դուք նմա հաւատացէք, և նորա բանիւ առ մեզ խափանեցայք գալ։ Ողջ լերջիք ի Տէր. այլ կեցոյց Աստուած զկայսր, զի նա զաշխարհս մեր կեցոյց։

## ԳԼՈՒԽ ՂԵ

Թէ ո՛րպէս յերկուս կողմանս բաժանեաց զկամս իւր Կիւրոն կեղծաւորութեամբ։

Ասել կայ մեզ առաջի (ի) դրուագի աստ զկամս Կիւրոնի կեղծաւորութեանն, զոր յերկուսն էր բաժանեալ կողմանս, ի կողմն Պարսից և ի կողմն Հոռոմոց, և այն լի նենգութեամբ և կեղծաւորութեամբ։ Քանզի յորժամ կամեցաւ խորամանկութեամբն իւրով հիմն դնել խարխուլ իւրոց չար շինուածոյն, և զխուժիկն զայն Նեստորական, որ սկիզբն եղև կորստեան նորաձեռակերտ սկսաւ ձեռնադրել՝ դնելով ի վերայ նորա զաջ իւր զաջն մեղաց, և կազմեաց՝ զնա իւր մահիճս մահու, և հիւանդացաւ ի նմա զհիւանդութիւն հոգւոյն. որով և մեռաւ իսկ ի նմին, և մեռոյց զամենայն աշխարհն Վրաց նովին հիւանդութեամբն։ Իսկ մեք ի տես ընթացեալ նոցա հիւանդութեանն, և մատուցեալ առ նոսա բժշկապետաբար ի պատել զվէրս նոցա, և խոնարհեալ յախտն նոցա, և ժահա-

հոտութեանն համբերեալ՝ ոչ կարացաք բժշկել զնոսա. վասնզի բուժական դեղն՝ զոր կազմեալ էր մեր օրինօք և մարգարէիւք և Աստուածային աւետարանութեամբն և առաքելական քարոզութեամբն, և նոյն ինքն ուսմամբ սրբոց Հարցն և երանելի Վարդապետացն եդեալ ի վերայ նոցա՝ ոչ ընկալան՝ զի առողջացեն ի վիրաց անտի, զոր ընկալեալ էին ի նետիցն Նեստորի՝ որ ի կապարճս Քաղկեդոնականացն թաքուցեալս, և ձգեալ յաղեղնաւորէն Լևոնի. այլ աւելի ի բաց ընկեցին յինքեանց լեալք անշնորհակալու ստացուածք չարին ստացուածք, և ինքեանք կազմեցին իւրեանց դեղ մահացու և մահաբեր. զոր եդին դաւանութեամբն Նեստորական խուժկին ի վերայ իւրեանց: Իսկ մեր տեսեալ զայն՝ հիւանդամիտք եղաք՝ հեծելով յերկար՝ յաղագս նոցա կործանմանն և մահուն. և զմիանգամ ասացեալսն ի նոցանէ զհակառակսն և զընդդէմսն կրկնաբանեալ էր միւսանգամ և երկիցս անգամ՝ մանաւանդ եթէ յոլովս. զի որպէս նախ ասացաք, թէ յորժամ ցաւք հիւանդին յերկար հանդիպի և խիստ հեծն շատ եղանէ և յոլով, այսպէս և մեզ հանդիպեցաւ յաղագս նոցա, զի հիւանդացեալ մտօք վասն նոցա հեծեմք հանապազ, և յամենայն ժամ յոգւոց հանիցեմք, և ջանամք մի բանի նոցա՝ հազար բանի պատասխանի տալ կրկնաբանելով զմինն յերկուս և զերկուսն յերիս եթէ ախորժիս: Այլ մեք յառաջինն դարձցուք ոճ ի խորհուրդ ի սկզբան ճառիս: Արդ բաժանեալ Կիւրոնի զկամս իւր յերկուս թեւակոխէր յայն կողմն Հռոմոց՝ շուք դնելով և շնորհուկս առնելով Մուրկայ կայսեր, և նովաւ պարծի ասելով. մեք ասէր զկայսեր ընկալաք զհաւատ, և ունիմք. և ոչ իմանայր մարդադաւանն այն՝ թէ պարտ է Աստուծով պարծել զօրհանապազ. և որ պարծին ի Տէր պարծեսցի: Եւ դարձեալ ասէր, Կոստանդնուպօլիս սրբոյն Յովհաննու աթոռ է և տուն կայսեր.

և մեք զոր ի նմա հաւատ քարոզի՝ զայն պաշտեմք. և դար-ձեալ եթէ ետու թարգմանել և բերել զգիր չորից ժողովոցն, որով Հռոմք վարին, և մեք զայն ունիմք հաւատ. և Աստ-ուած զկայսր կեցուսցէ: Իսկ ապա թեկն ածէ յայս կողմն Պար-սից. զի և նոցա աշխարհն ընդերկուացեալ էր ի Պարսից կող-մն և ի Հռոմոց. և նա ի կասկածի եղեալ յարքայից արքայէ՝ թէ զի մի՛ գուցէ խնդիր առնիցէ իմոց իրացս ի սադրելոյ Արմ-բատայ Վրկան Մարզպանի, զի բան նորա՝ որ գրեաց առ Մով-սէս՝ ծանօթ տայ խորհրդոյս: Քանզի վաղ ասացի, ասէ, թէ գրեմ առ արքայից արքայ. որ բարերարութեամբն իւրով հր-աման տայ քեզ, որ երթաս նստիս ի քո յեկեղեցւոջն. դու ոչ առեր յանձն: Արդ յաղագս այսպիսի կասկածի կայր Կիւրոն, յայն կողմն պարծէր, վասնզի հաւատ զնոցայն էր ընկալեալ. և յայս կողմն երկնչէր, թէ խնդիր լինի յարքայէն հաւատոյն ի յազգմանէ Ազատացն Հայոց. և ասէր փառաւորեսցէ Աստ-ուած զարքայ: Նա այսպէս յերկուս ոտս կաղալով՝ հակամի-տէր յայս կողմ յայն կողմ, և կոծելով յածէր ընդ ծով և ընդ ցամաք՝ եկամուտ առնել առ ինքն զդաւանողսն պիղծ ժողովոյն Քաղկեդոնի և անիծեալ տոմարին Լևոնի, մանա-ւանդ եթէ զհայհոյութիւնն հին Հրէութեանն առ ինքն նորա ցուցեալ, և այնու ի մարդիկ ապաւինեալ պարծէր, և շոգմոգ բանիւք և աղերսանօք կեանս խնդրէր կայսեր և փառս հայցէր արքայի սնոտի իմացմամբք:

## ԳԼՈՒԽ ՆԸ.

### Թուղթ Մովսէսի Եպիսկոպոսին Ցուրտաւայ առ Տէր Սմբատ Վրկան Մարզպան։

Աստուածաշնորհ պատուով պայծառացելոյ Տեառն Սմբատայ Վրկան Մարզպանի՝ և Տէրանց զինուորի, ի Մովսիսէ Տէրամբ ողջոյն։

Զպատասխանիսն թղթոցն տեսի. զոր անօրէնութեամբ և ամբարշտութեամբ արարեալ էր Վրաց աւերիչ Կաթուղիկոս անուանեալ՝ առ մեր Աստուածապատիւ Տէր Կաթուղիկոս և առ քեզ Տէր իմ։ Եւ յաղագս Տեառն Կաթուղիկոսի՝ վասն իմ չէ սրտի պակասութիւն, զի տեղեկացեալ է, և բովանդակ ի վերայ հասեալ, թէ վասն է՞ր կամ զի՞ հալածեցաւ. բայց վասն քո Տեառնդ կարի պակասութիւն է սրտի, գուցէ արդեւք ամբարիշտ թղթովք, զոր գրեաց առ ձեր փառաւորութիւնդ, երկմտեցոյց ինձ զձեզ։ Բայց Տեառնդ ձեռնհասութիւն է ողորմութեամբն Աստուծոյ։ Եւ է և ի հեռագոյն տեղիս քննութիւն իմիք պէտք էին տեղեկանալ, թող թէ կարի ի մօտ է Հայք և Վիրք, և սահմանակից են միմեանց, և շատք յԱզատաց և յոլովք Իշխանականաց աստի անդր հասանեն և անտի այսր գան. յորոց մարթի տեղեկանալ, թէ արդարև այդպէ՞ս գըտանիմ որպէս առ ձեր սրբութիւնդ գրեալ է ի նոցանէ, և ես այլտարազ ծանուցի ձեզ, և զայսպիսի Վարդապետս և զԻշխանս և զաշխարհս խաբեցի, պատուհաս զոր արժան է ածել ի վերայ իմ. զի որ յիս նայի, այլ չկարէ խաբել։ Բայց թէ քըննել հրամայէք, յուսամ յողորմութիւնն Աստուծոյ, թէ զամենայն բանս թղթոցն՝ որ վասն իմ գրեալն էր, սուտ գտանէք, մանաւանդ զի ի հալածանացն ժամ, զինն օր ի Տփխիս ի նո-

րա դրունս կացի և յանդիման չարար. և աշխարհն ամենայն գիտէր, զի չար(ար) վասն այլ ինչ իրաց, բայց վասն հաւատոյ։ Այլ ես բազում բանիւք ի ձեռն պատգամի խօսեցայ ընդ նա, և ծանուցի նմա զամենայն որ ինչ տեսեալ էր իմ զնոսա և իմացեալ՝ ոչինչ զանգիտացեալ զնմանէ։ Իսկ նա ոչ ետ ինձ պատասխանի և ոչ յանդիման արար զիս. և յետ ինն աւուր ինքն ի Մցխիթայ գնաց. և ես այսր լուսով գնացի, և ոչ ընդ խաւար, որպէս և նայն գրեաց։ Եւ յորժամ նոքա գնացին, որ օր եւթն էր, ի սրբոյ Յովհաննու վանս եկի ես, յանձն արարաք զժողովուրդն շնորհաց Հոգւոյն. և չեմ երթեալ առ Վարհամ, և ոչ նոքա կացուցանել կարեն զայդ. այլ ես անգոսման առնեմ զՏէրդ զՎարրամ: առ իս գրեալ էր, եթէ իմ սրտի մեծ պակասութիւն է ձեր ի սրբոյ եկեղեցւոյն հեռանալ. բայց մինչ գնացէքդ՝ ճանապարհ առ մեզ պիտէր առնել. զի և եկեղեցւոյն մեծ բաժին կայ աստ, որով և զձեզ յանձն ունել մարթ էր։ Զայս Թուղթ Տեառն Կաթողիկոսին տեսեալ է, և քեզ Տեառնդ ցուցանեմ։ Եւ ես անդրէն պատասխանի արարի և ասեմ, ապա անտի զի՞ գնայի՝ թէ առ քեզ գայի. զի հաւատ ձեր և նոցա մի է։ Եւ որ վասն չար գործոց գրեալ էր՝ թէ հալածեցաւ ի ծածուկ, քան զիս մարդ մեղաւոր չմարթի լինել. զմեղս իմ՝ ոչ Աստուած միայն գիտէ և ես, բայց յայտնի չկարէ ցուցանել, և զպաշտօն զի փոխեցի՝ յայտ է։ Եւ զԵպիսկոպոսն Նեստորական, զոր արարին դպրութիւն, զի և Վրացերէն գիտէ՝ որպէս արժանն է՝ թող թէ Հայերէն, և անյայտ է։ Բայց փառաւորութեանդ ձերում տեղեկութիւն լիցի, զի այնպիսի չարութեան մեքենայս շատ գիտէ, և զձեզ հաւատացուցանել կամի և զգործդ խափանել. բայց վասն Աստուծոյ և ձեր հոգւոյդ ջանացարո՛ւք. որով և հնար է՝ ո՞ գիտէ՝ տառապեալ աշխարհին փրկութիւն առնէ Տէր Աստուած

ի ձեռն փառաւորութեան ձերոյ: Եւ դուք վարձս յԱստուծոյ ընդունիք և բարգաւաճանք ի մարդկանէ լինիք. և անարժանութիւնս իմ մինչև կենդանի է, Տեառն և զորդեկիդ զփրկութիւն հոգոց և մարմնոց՝ որպէս զանձին իմում՝ խնդրեմ ի Տեառնէ Աստուծոյ: Ողջ լե՛ր ի Տէր:

## ԳԻՐ ՍԻԽ ՆԹ

### Պատասխանի Եղբօրն Մովսէսի Եպիսկոպոսին Յորդանանայ է Սըմբատայ Վրկան Մարզպանէ:

Զգիր ողջունի սրբութեան ձերոյ ընկալաք, և ի Քրիստոս ուրախ եղաք. որ վասն թղթոյն պատասխանեաց զարմացեալք, զոր առ մեզ գրեաց Վրաց Կաթողիկոս. մեք աւելի զարմացեալ եմք յերկոցունց կողմանց յաղագս նորա՝ թէ զիա՞րդ զայսպիսի բանս մահաբեր սուտ գրէ առ մեզ. և զի յանդիմանիւր ի ձէնջ և ի մէնջ ի յանձն ձեր վստահ աստէն որ ի մօտ, զիա՞րդ կայր արդեւք և զմեզ յորդորէր, և թուղթս տայր առնել աշխարհին, և զինքն ինքեան յանդիմանէ: Բայց ապա էր ինչ որ յառաջագոյն աշխարհականաց լուեալ էր յաղագս սրբութեան ձերոյ, և այժմ ի Վրթանիսէ Քերթողէ աւելի տեղեկացաք, թէ որպէս հալածեցայք և եկիք այսր և մանաւանդ վասն հոգևոր իրաց. որում Տեառն Կաթողիկոսի վերահասեալ է և տեղեկացեալ, և զձեզ ընկալեալ, մեզ աւելի քննութիւն առնելոյ զի՞նչ պէտք են: Արդ զիս ահաւասիկ փութով ի դուռն խնդրեալ է արքայից արքայի, քեզ վաղ ասացի, թէ գրեմ առ արքայից արքայ, որ բարերարութեամբ հրաման տայ, և երթաս ի քո եկեղեցւոջն նստիս. և քո հաւատով զքո ժողովուրդն ունիս: Գուսանս՝ թէ Ատրներսեհի

և Վաչանայ և եղբարցն ոչ արարեալ, են ընդ դէմ կալ. ես ոչ կարեմ սուր առնուլ, և ընդ ամենայն Վիրս կռուել։ Արդ քո հոգդ և գործդ նախ ողորմութեանն Աստուծոյ յանձն եղիցի, և ապա Տեառն Կաթողիկոսի. զի գրեալ էր առ մեզ, թէ գրեցաք առ Կիւրոն երկիցս։ Այլ այս թող, զի գրէ երկիցս և երիցս անգամ, ո՞ գիտէ թէ գան յուղղութիւն։ Ապա եթէ ի նոյն յամառութեան կան, տեսցուք զի ի նոցա թղթին իսկ աւանիկ գրեալ էր, թէ հարքն մեր և ձեր զԵրուսաղէմի հաւատն ունէին, և սուրբն Գրիգոր զայն եւ նոցա, և մեք զնոյն ունիմք։ Արդ այդում պատասխանի Տէր Կաթողիկոսն առնէ։ Եթէ ի նոյն խելագարութեան կան, և ի միաբանութենէ մերմէ հեռանան, զարիւն նոցա ի գլխոյ իւրեանց խնդրեսցէ Տէր Աստուած. և մեք անպարտ եղիցուք։ Բայց սակայն զիա՞րդ գործդ ի գլուխ երթայ, գրեցէք առ իս. թէ զհնազանդութենէ լսեմ, և Տէր Աստուած ժամ յաջող տայ, ո՞ գիտէ թէ և աստէն իսկ ընդունին հաստուցումն յԱստուծոյ ի ձեռն մարմնաւոր Տէրանց։ Ողջ լեր ի Տէր։

## ԳԼՈՒԽ Կ

Յաղագս երրորդ պատճենին՝ որ ինչ վասն բաժանմանն Վրաց գրեցան, և յայտարարութեան ժամանակաց։

Գրեցան և գլխաւորեցան թուղթքս իւրաքանչիւրոց՝ որ առ միմեանս գրեալ վասն բաժանմանն Վրաց՝ սկսեալ ի Մովսիսէ Կաթողիկոսէն մինչև ցայսօր, և դարձեալ գրեցան պատճենք երրորդ յայտարարութեան իւրաքանչիւր ժամանակաց՝ որ ինչ յաղագս բաժանման Վրաց։

Նախ որ ինչ միանգամ ի ժամանակս Տեառն Մովսիսի Հայոց Կաթողիկոսի և ի ձեռն իւր թղթին, և պատճառին, և ապա

երկրորդ էր ինչ յաւուրս Վրթանիսի Քերթողի եղև, որ Տեղապահ էր Աթոռոյ սրբոյն Գրիգորի, նմանապէս ի ձեռն գրոյ և պատգամի։ Իսկ երրորդ ի ժամանակս Տեառն Աբրահամու, որ յաջորդեաց զԱթոռ Հայրապետութեան Հայոց զկնի Մովսիսի։ Արդ սկիզբն բաժանման Վրաց ի ժամանակս Մովսիսի եղև, որպէս ուսուցանեն քեզ յառաջագոյն գրեալքն ի թղթի անդ իւրում՝ որ առ Կիւրոն։ Իսկ երկրորդն և երրորդն որ յաւուրս Վրթանիսի և Աբրահամու եղև, ուսուցանեն և զայն գիրք թղթոցն՝ որ գրեցաւ ի պատմութեան աստ։ Այլ այսչափ բաւական լիցի ասացեալքս ի մէնջ։

## ԳԼՈՒԽ ԿԱ

Յաղագս Կիւրոնի հերձուածողութեան՝ և որ ինչ է նմանէ գիր և բան ընդդէմ Աբրահամու երրորդ թղթոյն, և որ այլևս է բանից պատասխանի։

Զհաւատոյն որչափ կարացեալ ի բազմաց ընտրեալ բանից կարգեցաք ի թուղթս յայսոսիկ։ Բայց էր բազում և այլ ինչ զկնի միոյ միոյ թղթոցս և ի միջոցի իւրաքանչիւրոց որ պատմիւր բանք. զոր ոչ կարևոր համարեալ մեր և ոչ հարկաւոր, այլ զհաւատոյն և զպիտանին մեզ գրեցաք զոլովս մեկին և զկէսս կրկին՝ սակս ստուգելոյ զբանն և քեզ ի յայտ բերելոյ ով Հայր հոգևոր։ Արդ կարգեցաք դոյզն յիշատակք բանից յաղագս Կիւրոնի կշտամբելոյ և զոր ի նմանէ զկնի երրորդ թղթին Տեառն Աբրահամու և պատասխանւոյն Կիւրոնի, որ հակառակ ճառեալ ընդ դէմ Աբրահամու ապշեալ չարափառութեամբ և մանաւանդ չարին միտեալ կայծակունս կորստեան կամաց իւրոց. և ջանահնար լեալ առ ի խափանել զբովան-

դակ ջանս հաւատոյ սրբոց Հարցն և երանելի Վարդապետացն, և խարխալեալ և խախտեալ զկարգս եկեղեցւոյ սրբոյ և զբարեպաշտութիւն բոլոր աշխարհիս ի բաց բառնալ, նաև զխոստովանութիւն մարմնացեալ Բանին Աստուծոյ և զմիաւորութիւն տնօրէնութեան նորա յերկուս բաժանեալ բնութիւնս՝ ըստ չարափառութեան ժողովոյն Քաղկեդոնի։ Այլև բազում հայհոյութիւնս և հերձուածս չարաչարս եմոյծ յեկեղեցի Սիւրոնս այս հանդերձ իւրովք միաբանելովք. զոր Աստուած զսա և զնոսա խափանեսցէ. զորոյ և չարանդակ և չարահնար չար մտածմունս չարիմաց առն բովանդակ ուսուցանեն քեզ թուղթք իւր և բանք։ Իսկ ի սակաւուց՝ եթէ ախորժես՝ ցուցանէ քեզ և այս գիր յայտարարութեան բանից, որ ընդ դէմ չարնամակագրին Սիւրոնի տասցեալ լինի ի մէնջ՝ և ասի։ Արդ իբրև ընթերցեալ եղև թուղթն երրորդ պատասխանի թղթոյն Աբրահամու ի Սիւրոնէ՝ ոչ ըստ առաջին գրոյն կամ երկրորդին, այլ այլիմն լի խծբծանօք և խարդախութեամբ ի բաց տարամերժեալ ի մէնջ, զի յերկուսն յայն թագուցեալ էր չարութիւն նորա կեղծաւորութեան, թէպէտ ի տեղիս տեղիս խըթեալ լինէր. իսկ յերրորդումն չարալուր բանից նորա խորհրդեանն լսելի եղև յականջս ընթերցողացն, որ քաջայայտ զտիչ եղև չարի վարդապետ չար ուսմանցն, և երկրագործ չար սերմանցն, որ ցանեցաւ ի վերայ ցորենոյն ի սադրելոյ տիեզերակործան ժողովոյն Քաղկեդոնի՝ և անյիշելի տոմարին Լևոնի. զոր զնոցայն ինքնակամ կամօք և յօժարական մտօք յինքն բերեալ ցուցակութիւն՝ ցանեաց յաշխարհն Վրաց. և կամ թէ կամեցեալ լինէր վրիպակ և խոտորեցուցիչ սնոտի և ունայն բանիւք իւրովք՝ ոչ գիտելով զինչ գրէր ի չար նամակի անդ, պայման դնելով չար կամաց իւրոց, զոր խորհէր։ Այլ թէ վասն հաւատոյ՝ ասէ՝ գրեք առ իս, պատասխանի ոչ ըն-

դունիք յինէն։ Նա դարձեալ եթէ ինձ ընդ Հայք՝ բայց եթէ ընդ ճանապարհ ուրէք լինի անցանել, թէ ոչ այլ չկայ ինչ։

Նա զայս այսպէս վճիռ մահու հատեալ կորստեան իւրոյ, և զայն ոչ եթէ գրովք կամ գիտութեամբ ասացեալ որոշեալ ի մէնջ, այլ մարդկեղէն իմն ուսմամբ և իշխանութեամբ խաւարի վարեալ, գործակից գտեալ իւր և հակառակ հաւատոյ զխուժիկն զայն Նեստորական և զհամախոհն իւր՝ որ ընդ նմա, և նոքօք մարտնչէր ընդ դէմ ողջամիտ վարդապետութեան սրբոց Հարցն և երանելի Վարդապետացն, որ ուղիղ դաւանութեամբ հետևեցին զհետ Աւետարանի փառացն Աստուծոյ։ Զի մինչև ցայն վայր զնանրութեան խորհուրդ իւրոյ ամբարշտութեան ծածկեալ ունէր սակս երկիւղի կասկածանաց մերոց կողմանցս, նախ մինչ կենդանի էր Հայրապետն մեր Մովսէս, յորոյ ձեռանէ նորա ընկալեալ էր զձեռնադրութիւն. վասնզի ի նորա ժամանակին եհաս նորա երկունք մահու և հեծ հիւանդութեան հոգւոյն. որով յղացեալ էր զցաւս երկանցն. և ի ժամանակս Մրթանիսի և յաւուրս Աբրահամու ծնաւ զանօրէնութիւն. և ի նմին մեռաւ ի ցաւս իւր և. մեռոյց ընդ ինքեան ազգ մի ողջոյն։

Բայց քանզի յանիշխանութեան հայեալ աշխարհ Հայոց, և Հոռոմք և Պարսիկք ունէին բաժանել ի միջի իւրեանց ի ժամանակս Մուրկայ կայսեր և Խոսրովու արքայից արքայի, ի բաց ընկեցեալ յիւրմէ զերկիւղ կասկածանաց մերոյ կողմանս, և յաղագս այնորիկ վստահացեալ համարձակութեամբ ի մէջ երկուց իշխանութեանցն հակառակեալ ընդ դէմ դարձաւ ճշմարիտ քարոզութեան Աւետարանի սրբոց Հարցն, որպէս առաքելովքն Եղիաս մոգ, և կամ Կերինթոս կախարդ, և կամ թէ նոյն ինքն Սիմոն մայր կախարդաց՝ հակառակեալ ընդ երկուց պատուիրանաց մարգարէականաց և առաքելականաց վասն ան-

օրէնութեան Տեառն և միաւորելոյն ընդ մեզ բնութեան յեր-
կուս բաժանէր բնութիւնս, և զաղեցան խորութիւն խաւարայինն
խորհրդոց իւրոց զայն ներհակ դնել և հակառակ հակաճառ-
բաբբաջմանն իւրոյ. և այնպէս կարծեմ խնդրանէ մարդասպան
լեալ նենգագործն այն փոփոխելով զինքն ի տեղւոջէ ի տեղի,
և յամենայնի սուտ գտեալ. այլ ես ընդ այս ոչ կարի զարմա-
ցեալ եմ. քանզի սուտ է և հայրն նորա սատանայ, և խնդրա-
նէ մարդասպան վկայեալ ի Տեառնէ։ Քանզի և սա զհրէիցն
ունէր զհայհոյութիւն յՈրդին Աստուծոյ. իսկ սա ոչ մարդա-
սպան, և այլև ոգեսպան, զի զոգիս անձանց անմեղաց, որ դեռ
ևս տղայաբարոյ մտօք մարդիկք սպանանել ջանացաւ, կամ
թէ սպան իսկ գրով և բանիւ, և զկեցուցիչ հոգին ի բաց
տարամերժեաց ի նոցանէ, և զեկամուտ չարն իբր բնութեամբ
յինքն բնաւորեալ բոլորովին, որպէս է սովորութիւն չարին
ընդ բարւոյ մարտնչել և՚ մտանել գիտել զազատութիւն, և հա-
կառակաւն ընդ հակառակն ծեպել, և զայն ի ձեռն համակամաց
իւրոց առնէ. զոր և աստ իսկ զսա էր մեզ տեսանել. զի զան-
հեթեթ և զանձոռնի զապիրատ և զդրդուող բանս իւր այսր
անդր յածելով, ջանահնար լեալ Աստուածամարտիկոս և զնոյն
տալով սերմ չար իւրոյ վարդապետութեանն, և զչար ոխից
տրտմախառն մրուր արբուցանել զկիսակատարն Բանին արդա-
րութեան, զոր ինքն ունէր ի հնմէն և ի քացախուտ չարու-
թեան ի հրէական զանգուածոյն, դրժօղ և դառն և դժնդակ
անբժշկելի արբուցանեն. որոց մրուրն ոչ սպառի։ Նա և այնպէս
հակառակորդ լեալ աջակողմանն, և հակամիտեալ զինքն ի
ձախակողմն կոյս՝ ոխորտի և խամ մտօք զհետ ընթացեալ սը-
նոտի բանից առասպելաց՝ սատանական և սնոտի խաբէութեամբ
զմարդկան պահելով պատուիրանս անդ թողեալ զպատուի-
րան Աստուծոյ, զի թերևս յաւարի կարասցէ առնուլ և զերել

զհաւատեալս նմա պարզամտութեան՝ նաև Առաջնորդս եկեղեցւոյն Յուրաստանայ, որպէս պատմեցաւ յառաջագոյն զատեալ ի հօտէ իւրմէ, և հալածեալ ի տանէ Տեառն, որ խօսէր նմա զԲանն Աստուծոյ. համարձակութեամբ. վասնզի նախ քան զյայտնել նորա չարութեանն՝ զկասկած առեալ յանդիմանէր զնա՝ որպէս ինքն իսկ յիշէ ի թղթի անդ իւրում, և զայն ոչ կարծեօք ինչ, այլ ստուգիւ: Իսկ նա ոչ հաւանեալ նմա, և ոչ ընկալեալ զբան խրատու վարդապետութեանն նորա՝ մինչև անկաւ (ի) խորխորատ կորստեան: Այլ այնուհետև վարանեալ ի վերա իւր և ի խաւարային խորհուրդս՝ կամէր զաղտնի սպանանել զամբիծն. և հարեալ ընդ վիմին ընդ այնմիկ՝ փշրեցաւ, որպէս Հրէայքն (ի) Փրկչէն. այլ թէպէտ վիմին ոչինչ սասանեալ՝ ինքն առ վիմին խորտակեցաւ: Վասնզի կամեցաւ զնա արտա-սահմանել ի ժառանգութենէ իւրմէ, ինքն արտաքսեցաւ ի կենացն անվախճանից: Վասնզի եգիտ համակամ իւր զխու-ժիկն զայն Նեստորական և զնմանիսն իւր. որ ինքն իսկ Կիւրոն երբեք զբազմաց խօսի և ոչ զմիոյ: Վասնզի ասէ ինքն ի թղթի անդ իւրում՝ որ առ Աբրահամ.. յորժամ իմա-ցաք՝ ասէ՝ զնոցա չար աղանդն, ի բաց մերժեցաք ի միջոյ. և յայնմհետէ նոցա ողջոյն ոչ ոք իշխէ տալ: Իսկ զայն զօղեալ թագուցանէր առ ինքն, և զայս ինչ ՝և զայս պատ-ճառէր. և նոքօք կաճառեալ ընդ ճշմարիտ հաւատ ուղղա-փառութեան, որպէս անդ երբեմն իսկզբանն սատանայ օձիւն ի դրախտին ընդ նախահայրն մեր: Վասնզի որպէս նովաւ և ի ձեռն նորա մահ եմուտ յաշխարհ, նոյնպէս և ի ձեռն սորա բազում հերձուածք և հայհոյութիւնք մտին յեկեղեցիս: Բայց որում և զինքն կերպարանեալ ի հրեշ-տակ լուսոյ, որպէս սովորութիւն է սատանայի կերպարանել, և չէր ինչ զարմանք թէև սա նոյնպէս. վասն զի զնորայն

գործեաց պատրանս Վրաց աշխարհին։ Քանզի պատրուակեալ զինքն չարն իբր բարի գոլ, որ էր ճշմարտապէս խաւարն լոյս կերպարանիւք, և կամեցեալ լինել վարդապետ օրինաց, խոտորեալ յուղղութենէ բանից իւրոց՝ ոչ իմանայր զինչ խօսէր՝ և ոչ վասն որոյ պնդեալն էր։ Իսկ հանգոյն Հիմենեայ և Աղեքսանդրի մատնեցաւ սատանայի, զի խրատեսցի չհայհոյել. զի սաստիկ և չար ախտիւ սատակմամբ անկեալ վճարեալ զկեանս իւր Միւրոնն այն Սկուտարացի։ Քանզի մերժեալ էր յիւրմէ զհաւատս սրբովք մտօք, և նաւաբեկեալ ի հաւատս ճշմարիտս՝ ոչինչ օգտեաց նմա բան ինչ ամբքելով ի հնազանդութիւն։ Իսկ եկեղեցիք ուղղափառաց, որք Աստուածայնոյն են տեղեկացեալ պատուիրանի, և ուսեալք ի տան Տեառն, և յինքեան ունին բնաւորեալ բերելով զբան Աւետարանին, և գործ կատարեալ հաւատովք խոստովանութեամբ ճշմարիտ առաքելական քարոզութեանն, ոչ դղորդեցան դրդուեալ ի շփոթմանէ վրիպական չար վարդապետութեան խաբեբայի այնմիկ։ Քանզի զինուորեալ էին զգեղեցիկ զինուորութիւնն, և սնեալք բանիւ հաւատոց և բարւոք վարդապետութեամբ, և զհետ երթեալ ճշմարտութեանն, և կան և մնան մինչև ցայժմ յեցեալ և յուսացեալ յօրէնս Տեառն։ Իսկ զսահման բարեպաշտութեան պատուիրանաց Աստուծոյ յինքեանս բերելով ընդնաւորաբար՝ որպէս ստացաք օրինօք մարտուցեալ ընդ չար ոսոխին, որ զեռ ևս կան և մնան ի նմին, և միշտ հայրն յոյս մոլորութիւն և ի վարդապետութիւնս դիւաց կեղծաւորութեամբ՝ հարեալք յիւրեանց խղճի մտացն. իսկ մերքն և որ վասն մերոցն հալածեալ ի նմանէ զհետ իսկ եղեն բարեպաշտութեան ուղղափառ խոստովանութեամբ սուրբ և աստուածահաճոյ Հարցն, որ ժողովեցան ի Նիկիայ, և յԵփեսոս, և ի Կոստանդնուպօլիս. և նոքա ընկալեալք ի սրբոց առաքելոցն, և

առաքեալքն ընկալեալք ի Հոգւոյն սրբոյ, որ իսկզբանէ մինչեւ ցարդ եւս ներգործի ի մեզ միշտ գեղեցիկ հաւատոյ ուղղափառ խոստովանութիւն. ընդ որոց եւ դաւանեցաք մեք եւ դաւանեմք մինչեւ իսպառ. եւ նորա ի նոյն կանխեալ բարեպաշտութեան, եւ զնոյն աւանդեալ եկեղեցւոյ իւրոյ բանիւք հաւատոյ եւ բարւոք վարդապետութեամբ մինչ ոչ էր հալածեալ ի Կիւրոնէ, եւ զկնի հալածանացն գրով զնոյն հաստատէր ի հեռաստանէ։ Իսկ Կիւրոն մինչդեռ ոչ էր ի դերեւ ելեալ, ոչ առնէր ընդդէմ ումեք պատասխանի գրով կամ անգիր՝ մինչեւ ի գրելն առ նա Վրթանիսի. այլ միայն զՄրքանոսին ցուցանէր խոնարհութիւն՝ որ առ երանելին Կեւրեղ, եւ կամ նոյն ինքն զՍիմոնի կախարդին՝ որ առ Պետրոս. թէպէտեւ գրէր յոք եւ կամ խօսէր ումեք մինչեւ ի պատասխանի երկրորդ թղթին Աբրահամու։ Իսկ իբրեւ ծանուցեալ եղեւ կեղծաւոր կրօնաւոր Կիւրոնի յԵպիսկոպոսէն Ցուրտաւայ գրով, եւ ի Վրթանիսէ Քերթողէ բանիւ, նոյնպէս եւ ի Սմբատայ Մարզպանէ, նաեւ յիշխանաց եւ ի շինականաց, որք գիտակք էն նորա մոլորութեանն. որ ապա զնոյգն եւ զհաւատոյն յերրորդում թղթին իւրոյ պատասխանոյն իմացաւ զքաջայայտ չարութիւն Կիւրոնի՝ ի կատարումն եկեալ եւ ի գլուխ մոլորութեան հասեալ։ Գրէ ապա եւ նա նամակ ընդդէմ նորա Շրջաբերական յամենայն եկեղեցիս ուղղափառաց. եւ ի բաց հատանէ զնա սրով սուրբ Հոգւոյն, եւ գրէ զգուշանալ ի նմանէ՝ եւ ի նորաձայն չար վարդապետութենէ նորա, եւ յաշխարհին սիրելութենէ եւ ի խնամութենէ, եւ որ մկրտութեամբն ընդ նոսա միաւորին, եւ կամ առնուն ի միմեանց եւ որ այլ եւս հաղորդութիւն միաւորութեամբն, այլ միայն այլազգաբար վաճառաւ տալ ինչ. եւ առնուլ ի միմեանց։ Նաեւ խաչիւն որ ի Մցխիթայինն, եւ որ ի Մանկղիս, ոչ պաշտել ումեք երթալով յերկրպագութիւն առ նոսա՝.

և կամ յայլ եկեղեցի ուրեք խափանեք ուխտի, և կամ թէ ուրեք ուրեք խաչ անուանեն ուխտի պատճառաւ, և այնու պատրեն զմիրոս անմեղաց. և ի վերայ այսոցիկ ամենայնի կաց և կնիք եղեալ չարաչար նզովիւք և սպառնալեօք տուժից ի հոգևորաց՝ և տուգանօք ի մարմնաւորաց։ Այսպէս ապա բաժակ բարկութեան Տեառն հասեալ ի վերայ Վրաց առ ի պատել զնոսա անէծս և հեծս ցաւագինս։ Վասնզի ոչ կացին նոքա յուխտի Տեառն. և ըստ հրամանց նորա ոչ կամեցան գնալ։ Վասնայնորիկ բարձեալ թողան երթալ զհետ կամաց իւրեանց. և այս ի Կիւրոնէ եղև նոցա։ Վասնզի խածաւ նա յիժէն անհնարին վիրօք առանց բժշկութեան. և հարաւ յօձէն նախաչար և խաբեբայ։ Քանզի քակեաց զցանգ հայրենի, և գտաւ գտիչ չարեաց՝ և հակառակորդ մոլար անուն գիտութեանքն իւրոյ նորաձայն իմն բանիւ, հակառակութիւն և կռիւ ի մէջ արկեալ երկոցունց կողմանց։ Իսկ զի՞նչ ապա ասացից վասն նորա, և կամ զի՞նչ նմա առ ի մէնջ գովութիւն պարսաւանաց, ասացից ի գրոց, հեգնելով զնորա անիմաստ իմաստութիւնն, և զաներկիւղ երկիւղածութիւնն, որ խաբեբայ չարութեանքն իւրով խաբեաց և խախտեաց ի հաւատոց զայնքան Արեաց աշխարհն Վրաց՝ անզգամն և անիմաստն այն՝ իմաստուն՛ զինքն կարծելով։ Որով և ի վերայ գայ բան իմաստնոյն Սողոմոնի այնոցիկ՝ որոց թուին իմաստուն լինել. քանզի ասէ, վա՜յ այնոցիկ որ թուին իմաստուն լինել յանձանց իւրեանց։ Եւ աստուածային առաքեալն ասէ, խաւարեցան մթութեամբ սիրտք նոցա, և զանձինս առ իմաստունս ունէին, յիմարեցան։ Իսկ սա այսպիսի գտաւ անմտութեամբն իւրով՝ իմաստուն զինքն կարծելով անիմաստն այն, և փոխանակեաց զճշմարտութիւնըն Աստուծոյ ընդ ստութեան։ Քանզի ստեղծութիւն բերաւ

ի բերան նորա. և սուր շողաց ի շրթունս նորա. և նենգու-թիւն գտաւ ի լեզուի նորա. և ամենայնիւ յամենայնի իսկ խոտան գտաւ. զի խոտորեցաւ յուղիղ ճանապարհէն, զոր հե-տևեցին Հարքն մեր ուղղափառութեամբ, և մեզ ուսուցին ընդ նոյն գնալ։ Իսկ նա հեգն և թշուառականն թողեալ զօրէնս սրբոցն Հարցն, և հետևեալ զհետ խուժկին, և մատուցեալ*) զպատուէր երանելի Վարդապետացն, չոգաւ զկնի Նեստորա-կանացն. խոհեմ զինքն և իմաստուն կարծեցեալ, ամբարշտա-բար զայրացոյց զՀոգին սուրբ յանօգուտ փոյթ զինքն ձգելով, և սնոտի ցանկութեամբն իւրով դաւաճանեաց զմիտս բազմաց. և զոր Հարցն մերոց սրբոց և Վարդապետացն ուղղափառաց հաւանութեամբ միմեանց և հաճութեամբ Հոգւոյն սրբոյ աւանդեցին մեզ զքարոզ առաքելական և զդաւանութիւնն իւրեանց մեզ, ճշմարիտ խոստովանութեամբ պատուել մեզ և պաշտել և տօնել զտօն տնօրէնութեան Տեառն մերոյ. որ մին-չև ցայս վայր բերէ բնաւորաբար եկեղեցիք ուղղափառաց։ Որում ոչ ոք կալ հակառակ, բայց նա միայն՝ որ հակառակն եկաց անձին իւրում և դատաստան ընդ հերձուածողացն ըն-դունի, որք հերքեալ կործանեցան ի սրբոց Հարցն և ի Վար-դապետացն։ Իսկ արդ վասնզի այսքիկ այսպէս ի սրբոցն և ի բարեպաշտիցն Հարցն եղև մեզ աւանդեալ, որպէս ասացաք, յետ այսորիկ ապա և զպաշտօնն յանձն առցուք պահել և առ-նել. զի թերևս կարասցուք զգուշանալ ի սուտ ուսմանէ. չար ոսոխին՝ և ի սերմանողէն զչար սերմն ի վերայ ցորենոյն ի չար մշակէն ցանողին ի գիշերի և ի թշնամոյն ճշմարտութեան։ Այսուհետև՝ ասէ՝ զաղջամղջին գիշերայնոյ սևութիւն սեր-մանողին ի բաց արարէք ի ձէնջ զգուշաբար։ Արդ օ՞ն առեալ

(*) Գուցէ մոռացեալ։

դիակ Ջանս հաւատոյ սրբոց՝ արցն և երանելի Վարդապետացն, և խարխալեալ և խախտեալ զկարգս եկեղեցւոյ սրբոյ և զքաղա-պաշտութիւն բոլոր աշխարհիս ի բաց բառնալ, նաև զխոստովանութիւն մարմնացեալ Բանին Աստուծոյ և զմիաւորութիւն անօրէնութեան նորա յերկուս բաժանեալ բնութիւնս՝ ըստ չարափառութեան ժողովոյն Քաղկեդոնի։ Այլև բազում հայհոյութիւնս և հերձուածս չարաչարս եմոյծ յեկեղեցի Կիւրոնս այս հանդերձ իւրովք միաբանելովք․ զոր Աստուած զսա և զնոսա խափանեսցէ․ զորոյ և չարանդակ և չարահնար չար մտածմունս չարիմաց առն բովանդակ ուսուցանեն քեզ թուղթք իւր և բանք։ Իսկ ի սակաւուց՝ եթէ ախորժես՝ ցուցանէ քեզ և այս գիր յայտարարութեան բանից, որ ընդ դէմ չարնամակագրին Կիւրոնի տասցեալ լինի ի մէնջ՝ և ասի։ Երդ իբրև ընթերցեալ եղև թուղթն երրորդ պատասխանի թղթոյն Աբրահամու ի Կիւրոնէ՝ ոչ ըստ առաջին գրոյն կամ երկրորդին, այլ այլեմն լի խծբծանօք և խարդախութեամբ ի բաց տարամերժեալ ի մէնջ, զի յերկուսն յայն թագուցեալ էր չարութիւն նորա կեղծաւորութեան, թէպէտ ի տեղիս տեղիս խըթեալ լինէր․ իսկ յերրորդումն չարալուր բանից նորա խորհրդեանն լսելի եղև յականջս ընթերցողացն, որ քաջայայտ գտիչ եղև չարի վարդապետ չար ուսմանցն, և երկրագործ չար սերմանցն, որ ցանեցաւ ի վերայ ցորենոյն ի սանդրելոյ տիեզերակործան ժողովոյն Քաղկեդոնի՝ և անյիշելի տոմարին Լևոնի․ զոր զնոցայն բնքնակամ կամօք և յօժարական մտօք յինքն բերեալ ցուցակութիւն՝ ցանեաց յաշխարհն Վրաց․ և կամ թէ կամեցեալ լինէր վրիպակ և խոտորեցուցիչ սնոտի և ունայն բանիւք իւրովք՝ ոչ գիտելով զինչ գրէր ի չար նամակի անդ, պայման դնելով չար կամաց իւրոց, զոր խորհէր։ Այլ թէ վասն հաւատոյ՝ ասէ՝ գրէք առ իս, պատասխանի ոչ ըն-

դունիք յինէն։ Նա դարձեալ եթէ ինձ ընդ Հայք՝ բայց եթէ ընդ ճանապարհ ուրեք լինի անցանել, թէ ոչ այլ չկայ ինչ։

Նա զայս այսպէս վճիռ մահու հատեալ կորստեան իւրոյ, և զայն ոչ եթէ գրովք կամ գիտութեամբ ասացեալ որոշեալ ի միջոյ, այլ մարդկեղէն իմն ուսմամբ և իշխանութեամբ խաւարի վարեալ, գործակից գտեալ իւր և հակառակ հաւատոյ զխուժիկն զայն Նեստորական և զհամախոհն իւր՝ որ ընդ նմա, և նոքօք մարտնչէր ընդ դէմ ողջամիտ վարդապետութեան սրբոց Հարցն և երանելի Վարդապետացն, որ ուղիղ դաւանութեամբ հետևեցին զհետ Աւետարանի փառացն Աստուծոյ։ Զի մինչև ցայն վայր զնանրութեան խորհուրդ իւրոյ ամբարշտութեան ծածկեալ ունէր սակս երկիւղի կասկածանաց մերոց կողմանցս, նախ մինչ կենդանի էր Հայրապետն մեր Մովսէս, յորոյ ձեռանէ նորա ընկալեալ էր զձեռնադրութիւն. վասնզի ի նորա ժամանակին եհաս նորա երկունք մահու և հեծ հիւանդութեան հոգւոյն. որով յղացեալ էր զցաւս երկանցն. և ի ժամանակս Վրթանիսի և յաւուրս Աբրահամու ծնաւ զանօրէնութիւն. և ի նմին մեռաւ ի ցաւս իւր և մեռոյց ընդ ինքեան ազգ մի ողջոյն։

Բայց քանզի յանիշխանութեան հայեալ աշխարհ Հայոց, և Հոռոմք և Պարսիկք ունէին բաժանել ի միջի իւրեանց ի ժամանակս Մուրկայ կայսեր և Խոսրովու արքայից արքայի, ի բաց ընկեցեալ յիւրմէ զերկիւղ կասկածանաց մերոյ կողմանս, և յաղագս այնորիկ վստահացեալ համարձակութեամբ ի մէջ երկուց իշխանութեանցն հակառակեալ ընդ դէմ դարձաւ ճշմարիտ քարոզութեան Աւետարանի սրբոց Հարցն, որպէս առաքելովքն Եղիմաս մոգ, և կամ Կերինթոս կախարդ, և կամ թէ նոյն ինքն Սիմօն մայր կախարդաց՝ հակառակեալ ընդ երկուց պատուիրանաց մարգարէականաց և առաքելականաց վասն ան-

օրէնութեան Տեառն և միաւորելոյն ընդ մեզ բնութեան յերկուս բաժանէր բնութիւնս, և զաւեցան խորութիւն խաւարային խորհրդոց իւրոց զայն ներհակ գնել և հակառակ հակաճառբաբբաջմանն իւրոյ. և այնպէս կարծեմ խնկըրանէ մարդասպան լեալ նենգագործն այն փոփոխելով զինքն ի տեղւոջէ ի տեղի, և յամենայնի սուտ գտեալ. այլ ես ընդ այս ոչ կարի զարմացեալ եմ. քանզի սուտ է և հայրն նորա սատանայ, և խնկըրանէ մարդասպան վկայեալ ի Տեառնէ։ Քանզի և սա զՀրէիցն ունէր զհայհոյութիւն յՈրդին Աստուծոյ. իսկ սա ոչ մարդասպան, և այլև ոգեսպան, զի զոգիս անձանց անմեղաց, որ դեռ ևս տղայաբարոյ մտօք մարդիկք սպանանել ջանացաւ, կամ թէ սպան իսկ գրով և բանիւ, և զկեցուցիչ Հոգին ի բաց տարամերժեաց ի նոցանէ, և զեկամուտ չարն իբր բնութեամբ յինքն բնաւորեալ բոլորովին, որպէս է սովորութիւն չարին ընդ բարւոյ մարտնչել և մտանել զխտել զազատութիւն, և հակառակաւն ընդ հակառակին ձեպել, և զայն ի ձեռն համակամաց իւրոց առնէ. զոր և սատ իսկ զսա էր մեզ տեսանել. զի զանհեթեթ և զանձոռնի զաղկրատ և զդրդուող բանս իւր այսր անդր յածելով, ջանահնար լեալ Սամարտիկոս և զնոյն տալով սերմն չար իւրոյ վարդապետութեանն, և զչար ոխից տրամախառն մրուր արբուցանել զկիսակատարն Ռանին արդարութեան, զոր ինքն ունէր ի հնմէն և ի քացախուտ չարութեան ի Հրէական զանգուածոյն, դրժօղ և դառն և դժնդակ անբժշկելի արբուցանելն. որոց մրուրն ոչ սպառի։ Նոյն այնպէս հակառակորդ լեալ աջակողմեանն, և հակամետեալ զինքն ի ձախակողմն կոյս՝ ոխորտի և խառն մտօք զհետ ընթացեալ սընոտի բանից առասպելաց՝ սատանայական և սնոտի խաբէութեամբ զմարդկան պահելով պատուիրանաւ անդ թողեալ զպատուիրան Աստուծոյ, զի թերևս յաւարի կարասցէ առնուլ և գերել

զՀաւանեալս նմա պարգեւաւորան՝ նաև Առաջնորդս եկեղեցւոյն Յուլիանեայ, որպէս պատմեցաւ յառաջագոյն զատեալ ի հօտէ իւրմէ, և հալածեալ ի տանէ Տեառն, որ խօսէր նմա զԲանն Աստուծոյ. համարձակութեամբ. վասնզի նախ քան զյայտնել նորա չարութեանն՝ զկասկած առեալ յանդիմանէր զնա՝ որպէս ինքն իսկ յիշէ ի Թղթի անդ իւրում, և զայն ոչ կարծեօք ինչ, այլ ստուգիւ: Իսկ նա ոչ հաւանեալ նմա, և ոչ ընկալեալ զբան խրատու վարդապետութեանն նորա՝ մինչև անկաւ (ի) խորխորատ կորստեան: Արդ այնուհետև վարանեալ ի վերա իւր և ի խաւարային խորհուրդս՝ կամէր գաղտնի սպանանել զամբիծն. և հարեալ ընդ վիմին ընդ այնմիկ՝ փշրեցաւ, որպէս Հրէայքն (ի) Փրկչէն. այլ Թէպէտև վիմին ոչինչ սասանեալ՝ ինքն առ վիմին խորտակեցաւ: Վասնզի կամեցաւ զնա արտասահմանել ի ժառանգութենէ իւրմէ, ինքն արտաքսեցաւ ի կենացն անվախճանից: Վասնզի եդիր համակամ իւր զխուժիկն զայն Նեստորական և զնմանիսն իւր. որ ինքն իսկ Կիւրոն իբրև զգազանաց խօսի և ոչ զմարդոյ: Վասնզի ասէ ինքն ի Թղթի անդ իւրում՝ որ առ Աբրահամ. յորժամ իմացայք՝ ասէ՝ զնոցա չար աղանդն, ի բաց մերժեցաք ի միջոյ. և յայնմհետէ նոցա ողջոյն ոչ ոք իշխէ տալ: Իսկ զայն գողեալ Թագուցանէր առ ինքն, և զայս ինչ և զայս պատճառէր. և նոքօք կաճառեալ ընդ ճշմարիտ հաւատ ուղղափառութեան, որպէս անդ երբեմն ի սկզբանն սատանայ օձիւն ի դրախտին ընդ նախահայրն մեր: Վասնզի որպէս նովաւ և ի ձեռն նորա մահ եմուտ յաշխարհ, նոյնպէս և ի ձեռն սորա բազում հերձուածք և հայհոյութիւնք մտին յեկեղեցիս: Ըստ որում և զինքն կերպարանեալ ի հրեշտակ լուսոյ, որպէս սովորութիւն է սատանայի կերպարանել, և չեն ինչ զարմանք Թէև սա նոյնպէս. վասն զի զնորայն

գործեաց պատրանս Մարաց աշխարհին։ Քանզի պատրուակեալ զինքն չարն իբր բարի գոլ, որ էր ճշմարտապէս խաւարն լոյս կերպարանիւր, և կամեցեալ լինել վարդապետ օրինաց, խոտորեալ յունայնութենէ բանից իւրոց՝ ոչ իմանայր զինչ խօսէր՝ և ոչ վասնորոյ պնդեալն էր։ Եւ հանգոյն Փիլոնեայ և Աղեքսանդրի մատնեցաւ սատանայի, զի խրատեսցի չհայհոյել. զի սաստիկ և չար ախտիւ սատակմամբ ասեն վճարեալ զկեանս իւր Միւրոնն այն Մակուտրացի։ Քանզի մերժեալ էր յիւրմէ զհաւատս սրբովք մօք, և նաւաբեկեալ ի հաւատս ճշմարիտս՝ ոչինչ օգտեաց նմա բան ինչ ամոքելով ի հնազանդութիւն։ Իսկ եկեղեցիք ուղղափառաց, որք Աստուածայնոյն են տեղեկացեալ պատուիրանի, և ունեալք ի տան Տեառն, և յինքեան ունելն բնաւորեալ բերելով զբան Աւետարանին, և գործ կատարեալ հաւատովք խոստովանութեամբ ճշմարիտ առաքելական քարոզութեանն, ոչ դղորդեցան դրդուեալ ի շփոթմանէ վերիպական չար վարդապետութեան խաբեբայի այնմիկ։ Քանզի զինուորեալ էին զգեղեցիկ զինուորութիւնն, և սրբեալք բանիւ հաւատոց և բարւոք վարդապետութեամբ, և զհետ երթեալ ճշմարտութեանն, և կան և մնան մինչև ցայժմ յեցեալ և յուսացեալ յօրէնս Տեառն։ Եւ զամենայն բարեպաշտութեան պատուիրանաց Աստուծոյ յինքեանս բերելով բնաւորաբար՝ որպէս ասացաք օրինօք մարտուցեալ ընդ չար ոսոխին, որ դեռ ևս կան և մնան ի նմին, և միշտ հային յայս մոլորութիւն և ի վարդապետութիւնս դիւաց կեղծաւորութեամբ՝ հարեալք յիւրեանց խղճի մտացն. իսկ մերքն և որ վասն մերոցն հալածեալ ի նմանէ զհետ իսկ եղեն բարեպաշտութեան ուղղափառ խոստովանութեամբ սուրբ և աստուածահաճոյ Հարցն, որ ժողովեցան ի Նիկիայ, և յԵփեսոս, և ի Կոստանդնուպօլիս. և նոքա ընկալեալք ի սրբոց առաքելոցն, և

առաքեալքն ընկալեալք ի Հոգւոյն սրբոյ, որ ի սկզբանէ մինչև ցարդ ևս ներգործի ի մեզ միշտ գեղեցիկ հաւատոյ ուղղափառ խոստովանութիւն. ընդ որոց և դաւանեցաք մեք և դաւանեմք մինչև իսպառ. և նորա ի նոյն կանխեալ բարեպաշտութեան, և զնոյն աւանդեալ եկեղեցւոյ իւրոյ բանիւք հաւատոյ և բարիոք վարդապետութեամբ մինչ ոչ էր հալածեալ ի Սիւրանէ, և զկնի հալածանացն գրով զնոյն հաստատէր ի հեռաստանէ։ Իսկ Սիւրոն մինչդեռ ոչ էր ի դերև ելեալ, ոչ տանէր ընդդէմ ումեք պատասխանի գրով կամ անգիր՝ մինչև ի գրելն առ նա Վրթանիսի. այլ միայն զՆերքանոսին ցուցանէր խոնարհութիւն՝ որ առ երանելին Կիւրեղ, և կամ նոյն ինքն զՍիմոնի կախարդին՝ որ առ Պետրոս. թէպէտև գրէր յոք և կամ խօսէր ումեք մինչև ի պատասխանի երկրորդ թղթին Աբրահամու։ Իսկ իբրև ծանուցեալ եղև կեղծաւոր կորուստն Սիւրոնի յԵպիսկոպոսէն Ցուրտաւայ գրով, և ի Վրթանիսէ Քերթողէ բանիւ, նոյնպէս և ի Սմբատայ Մարզպանէ, նաև յիշխանաց և ի շինականաց, որք գիտակք են նորա մոլորութեանն. որ ապա զատոյգն և զհաւաստին յերրորդում թղթին իւրոյ պատասխանոյն իմացաւ զքաջայայտ չարութիւն Սիւրոնի՝ ի կատարումն եկեալ և ի գլուխ մոլորութեան հասեալ։ Գրէ ապա և նա նամակ ընդ դէմ նորա Շրջաբերական յամենայն եկեղեցիս ուղղափառաց. և ի բաց հատանէ զնա սրով սուրբ Հոգւոյն, և գրէ զգուշանալ ի նմանէ՝ և ի նորաձայն չար վարդապետութենէ նորա, և յաշխարհին սիրելութենէ և ի խնամութենէ, և որ մերձաւորութեամբն ընդ նոսա միաւորին, և կամ առնուն ի միմեանց և որ այլ ևս հաղորդութիւն միաւորութեամբն, այլ միայն այլազգաբար վաճառաւ տալ ինչ. և առնուլ ի միմեանց։ Նաև խաչիւն որ ի Մցխիթային, և որ ի Մանգլիս, ոչ պաշտել ումեք երթալով յերկրպագութիւն առ նոսա՝.

և կամ յայլ եկեղեցի ուրեք խափանեք ուխտի, և կամ թէ ուրեք ուրեք խաչ անուանեն ուխտի պատճառաւ, և այնու պատրեն զսիրտս անմեղաց. և ի վերայ այսոցիկ ամենայնի կապ և կնիք եղեալ չարաչար նզովիւք և սպառնալեօք տուժից ի Հոգևորաց՝ և տուգանօք ի մարմնաւորաց: Այսպէս ապա բաժակ բարկութեան Տեառն հասեալ ի վերայ Վրաց առ ի պատել զնոսա անէծս և հեծս ցաւագինս: Վասնզի ոչ կացին նոքա յուխտի Տեառն. և ըստ իրաւանց նորա ոչ կամեցան գնալ: Վասնայնորիկ բարձեալ թողան երթալ զհետ կամաց իւրեանց. և այս ի Կիւրոնէ եղև նոցա: Վասնզի խածաւ նա յիժէն անհնարին վիրօք առանց բժշկութեան. և հարաւ յօձէն նախաչար և խաբեբայ: Քանզի քակեաց զցանգ հայրենի, և գտաւ գտիչ չարեաց՝ և հակառակորդ մոլար անուն գիտութեանն իւրոյ նորաձայն իմն բանիւ, հակառակութիւն և կռիւ ի մէջ արկեալ երկոցունց կողմանց: Իսկ զի՞նչ ապա ասացից վասն նորա, և կամ զի՞նչ նմա առ ի մէնջ զովութիւն պարսաւանաց, ասացից ի գրոց, հեգնելով զնորա անիմաստ իմաստութիւնն, և զաներկիւղ երկիւղածութիւնն, որ խաբեբայ չարութեամբն իւրով խաբեաց և խախտեաց ի հաւատոց զայնքան Արեաց աշխարհն Վրաց՝ անզգամն և անիմաստն այն՝ իմաստուն՛ զինքն կարծելով: Որով և ի վերայ գայ բան իմաստնոյն Սողոմոնի այնոցիկ՝ որոց թուին իմաստուն լինել. քանզի ասէ, վա՜յ այնոցիկ որ թուին իմաստուն լինել յանձանց իւրեանց: Նա աստուածային առաքեալն ասէ, խաւարեցան մթութեամբ սիրտք նոցա, և զանձինս առ իմաստունս ունէին, յիմարեցան: Իսկ սա այսպիսի գտաւ անմտութեամբն իւրով՝ իմաստուն զինքն կարծելով անիմաստն այն, և փոխանակեաց զճշմարտութիւնսն Աստուծոյ ընդ ստութեան: Քանզի ստեղութիւն բերաւ

ի բերան նորա. և սուր շողաց ի շրթունս նորա. և նենգութիւն գտաւ ի լեզուի նորա. և ամենայնիւ յամենայնի իսկ խոտան գտաւ. զի խոտորեցաւ յուղւոյ ճանապարհէն, զոր հետևեցին Հարքն մեր ուղղափառութեամբ, և մեզ ուսուցին ընդ նոյն գնալ։ Իսկ նա հեգն և թշուառականն թողեալ զօրէնս սրբոցն Հարցն, և հետևեալ զհետ խուժկին, և մատուցեալ*) զպատուէր երանելի Վարդապետացն, չոգաւ զկնի Նեստորականացն. խոհեմ զինքն և իմաստուն կարծեցեալ, ամբարշտաբար զպղծացոյց զՀոգին սուրբ յանօգուտ փոյթ զինքն ձգելով, և սնոտի ցանկութեամբն իւրով դաւաճանեաց զմիտս բազմաց. և զոր Հարցն մերոց սրբոց և Վարդապետացն ուղղափառաց հաւանութեամբ միաբանից և հաճութեամբ Հոգւոյն սրբոյ աւանդեցին մեզ զքարոզ առաքելական և զդաւանութիւնն իւրեանց մեզ, ճշմարիտ խոստովանութեամբ պատուել մեզ և պաշտել և տօնել զտօն տնօրէնութեան Տեառն մերոյ. որ մինչև ցայս վայր բերէ բնաւորաբար եկեղեցիք ուղղափառաց։ Որում ոչ ոք կայ հակառակ, բայց նա միայն՝ որ հակառակն եկաց անձին իւրում և դատաստան ընդ հերետիկոսացն ընդունի, որք հերքեալ կործանեցան ի սրբոց Հարցն և ի Վարդապետացն։ Նա արդ վտանգի այսոքիկ այսպէս ի սրբոցն և ի բարեպաշտիցն Հարցն եղև մեզ աւանդեալ, որպէս ասացաք, յետ այսորիկ ապա և զյաջորդն յանձն առցուք պահել և տօնել. զի թերևս կարասցուք զգուշանալ ի սուտ ուսմանէ չար ոսոխին՝ և ի սերմանողէն զչար սերմն ի վերայ ցորենոյն ի չար մշակէն ցանողին ի գիշերի և ի թշնամոյն ճշմարտութեան։ Այսուհետև՝ ասէ՝ զաղջամղջին գիշերայնոյ սևութիւն սերմանողին ի բաց արարէք ի ձէնջ զգուշաբար։ Արդ օ՞ն առեալ

(*) Գուցէ մոռացեալ։

մեր զպատուէր սրբոց Հարցն՝ զչարն չար խորհողին ի գլուխ կու-
տեսցուք. և դարձեալ զչարն չարով կորզեսցուք, զի դարձցին
ցաւք ի գլուխ նորա, և անօրէնութիւնք իւր ի վերայ գագա-
թան նորա։ Զի քարաձիգ եղև բանիւք իւրովք, և բանս առ
Բարձրեալն խօսեցաւ. և ըստ իմաստնոյն բանի ընկալաւ առ ին-
քըն զոր ձգեաց. թէ որ ձգէ քար ի բարձունս՝ ի գլուխն իւր
անկցի։ Եւ այլ ումն ի սրբոց Հարցն հաստատէ զբանս զայս,
եթէ որք՝ ասէ՝ գազան հերձուածող անբանից է՝ ի խոնարհ
մնացէ. ապա թէ քարկոծեսցի բանիւ ճշմարտութեան. քան-
զի զՔրիստոսի մարդանալն մարմնով և զմարմինն միաւոր-
եալ ընդ Բանին շփոթ և խառնակեալ խորհեցաւ աւերիչն
այն Վրաց անուանեալ Կաթուղիկոս Կիւրոն կոչեցեալ Կե-
րինթոսի զօդ հաւասար. յորմէ երանելի առաքեալն և աւե-
տարանիչն Յովհաննէս երկուցեալ փախեաւ ի բաղանեացն՝
զԿերինթոս ի ներքս տեսեալ, և կամ թէ ծնունդ ամբարիշտ
ժողովոյն Քաղկեդոնի՝ և պտուղ ազանդոյն Լևոնի։ Քանզի
հանդերձեաց զինքն զկնի նոցա՝ այլ Քրիստոսն քարոզել,
զոր ի Պաւղոսէ ոչ քարոզեցաւ, և հոգի օտար առնուլ, զոր
ոչ ոք յառաքելոցն էառ և ի քարոզելոցն ի նոցանէ, և կամ
աւետարան օտար ընդունել, զոր ոչ ոք ի սրբոց Հարցն ըն-
կալաւ, և կամ երկրորդ առաքեալն սուրբ՝ և երանելին Գրի-
գոր Լուսաւորիչն մեր, որ ուսոյց մեզ զճշմարտութիւնն.
և այսպէս ապա խորհիչն չարեաց կամ թէ գտիչն ոչ շա-
տացեալ յիւրն կալ մնալ ի հնացեալ չարութեան և կամ թէ
յանօրէն հայհոյութեան, այլ դարան կալ նստուցանել առ ին-
քըն զխուժիկն զայն և զնմանիս նորա Նեստորականք. որ և
ինքն իսկ Նեստոր եղև և երկրորդ և առաջին մեզ փչող
զԱրիոսին չար և զաղտեղի մտածմունս, առ ի տարագրել և
ի գերել զայնոսիկ. որ դեռ չև ևս էին թիւրեալ ի չար խոր-

մօրէ նորա, այն ոչ լինի հաց կենդանական, և կամ զանկուածոյն, որ փարիսեցւոցն անաստուած վարդապետութեան նշխար բերեալ խուժիկն այն ի Հրէական աղանդոյն ի հնմէն և ի քացախուտ չարութենէն, և խմորեալ նովաւ առհասարակ զամենայն աշխարհն Վրաց. և այսպէս մաքառեալ և կռուեալ նովաւ Կիւրոն ընդ ճշմարտութեան ի ձեռն գրոյ անարժանութեան և չար նամակին իւրոյ՝ որ առ Աբրահամ, և այնպէս ժառանգիչ լեալ անիծից՝ որպէս Քուշանն այն Մեստրաց ծնունդ անիծիցն Կայենի, որ հնարեցաւ լինել ուսուցիչ արեաց երանելի ազգին Ասեմայ։ Նա և արդ վասնզի այսպէս եղև մեզ ասել յաղագս Կիւրոնի, կարգեսցի աստանօր և ի բաց տարեալ տարագրեսցի ի միջոյ անհանճար և անընտրող միտք նորա, և հերեսիափոփ լեզու նորա արգելցի ի խօսելոյ զնենգութիւն. և զծաղրական նորա և զշամուշ մնաց բանս՝ իբրև զփխրան ինչ ի բաց թքեալ թողցուք, և զգժոխագնաց ճանապարհ նորա խոտանել ջանասցուք, որ թուէր նմա՝ թէ ուղիղ է։ Վասնզի ասէ պատուածայինն Սողոմոն, թէ են ոմանք՝ որ թուի նոցա թէ՝ ուղիղ են ճանապարհք իւրեանց. բայց կատարած նոցա հայի ի յատակս դժոխոց։ Արդ՝ այսուհետև մինչ ցայս վայր յայսմ մասին բաւական լիցի քեզ առ ի միջոյ ասացեալս. զայլն յայլում տեղւոջ թողցուք ասել։



## ԳԼՈՒԽ ԿԲ

Յաղագս յայտարարութեան առաջին պատճառին՝ որ վասն բաժանման Վրաց է Կիւրոնէ։

Գրեմ քեզ այժմ՝ որ ինչ մերոցս եղեալ հասողութիւն՝ որ յաղագս առաջին պատճառի բաժանման Վրաց։ Վասնզի ի գիրս Թղթոցն ոչ այլ ինչ գտաք աւելի պատճառ գրեալ, բայց միայն զխուժիկն զայն Նեստորական, զորմէ գրեաց առ Կիւրոն երանելի Հայրապետն Մովսէս՝ որ յիշի մինչև ցայժմ։ Արդ անցից սակաւ ինչ բանիւք յիշատակել վասն առաջին պատճառին՝ յաղագս որոյ վերագոյնն խրոխտացաք ասել՝ Թողլով յետ զխուժիկն զայն։ Քանզի մեր ի վերայ հասեալ ստուգիւ ի կարգի զրուցաց ոչ ի միոյ միայն կամ յերկուց և կամ յերից, այլ ի բազմաց բազում անգամ, և այժմ ասացից քոյին հարցասիրութեանդ ըստ իմում առաջին յանձնառութեանն՝ ով հոգևոր Եղինակ. վասնզի պատուէր ընկալայ յառաջագոյն ի քէն ամենայնի հոգ տանելով և զհաւաստին կարգել մեզ ի պատմութեանս աստ՝ որ ի լրոյ և ի գրոյ։ Իսկ մեք փոյթ յանձին կալեալ, թէ վասնզի մեզ հաւատացաւ ի քէն այսմ գործոյ վերակացութիւն, ոչ երբէք անցանել զքոյով հրամանաւ, այլ ջան տանել ամենայնի, և խնամով հոգալ որչափ միտք մեր և հասողութիւն բաւիցէ։ Վասնզի փոյթ քոյոյ յօժարութեանդ սակս խնդրոյն հաճոյ թուեցաւ մեզ, և զտկարութիւնս մեր ի բաց դնել, և ի վերայ քո հրամանիդ զդժուարութիւնն հեշտութիւն համարել։ Արդ կարգեսցուք զայս դոյզն յիշատակաւ բանից զկնի առաջնոյ պատճենիցն՝ որ ըստ միոյ միոյ ժամանակաց պատմեցաւ յիւրաքանչիւր տեղոջ։ Նա յետ այսորիկ՝ զոր պատշաճն վարկանեմք ի կարգի ըստ խորհրդոյ բեր-

մանն յիշատակել և զայն։ Որդ և ծանիր՝ զառաջարկութիւնս մեր յայսումիկ խորհուրդ թէպէտև փոքր թուի փոյթոյ մերոյ հաւաստի քննութիւնս. զի թէպէտև քեզ հեշտութիւն թըւի և կամ ուրախանալ ի վերայ ասացելոցս, սակայն ընդ միմեանս համեմատեալ զխորհուրդս և զկամս, արդ ընկալ զհաւաստի քննեալս. զի որչափ կարացեալ ըստ կարի մերում քննեցաք ստուգիւ ի բազմաց, որպէս վերագոյնն ասացաք։ Բայց զհաւատարմութիւն յընթերցասիրաց ոմանց ուսաք. որ կարծեմ բաւական լեալ, զի միևնոյն առաջին պատճէնսն՝ որ յիւրեանց թուղթսն պատմի ստուգիւ ի գիրս թղթոցն. և մերս ըստ մերում կարի և հասողութեան ի խորհուրդ ածեալ գրով զնոյն պատմեցաք քեզ։ Վ՟անզի այն պատճէնք վիճոյ էին ընդ միմեանս, իսկ այս պատճառք իսպառ ի բաց գնալոյ։ Քանզի անդ յղացաւ զ ցաւ, և աստ ծնաւ զանօրէնութիւն. անդ հիւանդացաւ ի հեծ և ի ծոմ, իսկ աստ մեռաւ զմահ հոգւոյ մերոյ։ Վ՟անզի զայս այսպէս ասեն յաւանդութենէ ծերոց, եթէ ի ժամանակս Աբրահամու Հ՟այոց Կաթուղիկոսի իբրև եկաց նա յաթոռ Հ՟այրապետութեան իւրոյ, եկին առ նա Կաթուղիկոսն Վ՟րաց և Աղուանից. քանզի յայնժամ էին ի պատիւ Արք Եպիսկոպոսութեան աթոռոյ սրբոյն Գրիգորի, և ըստ առաջնոց Հ՟արցն սահմանադրութեան և սովորութեան եկին առ Աբրահամ յառաջին ամին Հ՟այրապետութեան իւրոյ ի սէր և ի հնազանդութիւն։ Իսկ նա ընկալեալ զնոսա մեծաւ պատուով և սիրով Հ՟ոգւոյն որպէս օրէն է, և նստուցեալ զնոսա յիւրաքանչիւր գահի, որպէս սովորութիւն էր նոցա նստել. և ի ժամ ճաշոյն առեալ զհացն ի ձեռանէ Տեառն Աբրահամու՝ օրհնեցին և կերան մինչև ի ժամ գինոյ. և ապա առեալ Տէր Կաթուղիկոսն՝ օրհնեաց և ետ նախ՝ Կաթուղիկոսին Աղուանից. իսկ (ի) միւսում նուագին յորժամ կամեցաւ տալ Կիւ-

րանի, նա ոչ կամեցաւ առնուլ խոժոռեալ ընդ միտս իւր։ Իսկ Կաթուղիկոսն Աբրահամ իբրեւ ետես զայն, առժամայն ոչինչ ասաց. ապա իբրեւ ստիպեաց զԿիւրոն ասել զպատճառն, եհարց զտրտմութիւն գործոյն։ Իսկ նորա պատասխանի տուեալ ասէ. զի՞ եղեւ ինձ այս փոքրկանալս ի քէն. քանզի ես աւագ եմ քան զնա, և մեծ ի տան իմում. և այս տանս գահերէցութիւնս նախ իմ էր, և ապա դորա։ Վասնզի վիճակաւ վերագոյն եմ քան զդա, և Եպիսկոպոսք ես առաւել, իսկ հաւատով նախ քան զդա ի սրբոյն Գրիգորէ և այլք։ Իսկ Աբրահամ քանզի կամեցաւ խաղաղութիւն առնել, սկսաւ արդարացուցանել զնա՝ և ասէ, ոչ գիտէի զայդ ամենայն ով Տէր եղբայր, միանգամայն և պատիւ արարի զայն նորա ծերութեանն՝ ուսեալ ի գրոց սրբոց։ Քանզի ասաց մի ոմն յիմաստնոցն, թէ զալիս պատուեսցի, և առաջի ծերոց յոտն կացի։ Եւ դարձեալ Աստուածայինն Պօղոս, եթէ զծերն ընկալցիս իբրեւ հայր. և այլ ոմն, թէ ծերութիւնն պատուականագոյն է։ Եւ անդ առ Մովսիսիւ ի խրատ ժողովրդեանն Իսրայէլի ասէ գիրն, առաջի ալեաց յառնիցես, և պատուիցես զերեսս ծերոյն. և երկից(ես) յԱստուծոյ քումմէ, և այլ որ ինչ սոցին նման ասի յայլում տեղւոջ։ Արդ նա քանզի ծեր էր և դու մանուկ, նմա զայն պատիւ ոչ վասն մեծութեան արարաք, և ոչ այլ ինչ իրօք զնա նախամեծար համարեալ, այլ վասն ծերութեան միայն։ Եւ այսքանիւք և այսպիսի բանիւք խօսեցեալ ընդ նմա՝ ոչ կարաց հաշտութիւն առնել. և որ այլ պաշտօնեայքն էին Աթոռոյն՝ զնոյն բանս խօսէին, զի թերեւս խաղաղասցի ի խռովութենէն և լռեսցի։ Այլ նա ևս առաւել քան զևս առաւել յորդորէր լի ցասմամբ ի խռովութիւն շարժեալ զինքն, որ կարծեմ զպատճառն միայն խնդրէր խռովութիւն։ Եւ այնուետև ոչ ոք կարաց յայնցանէ լռեցուցանել զնա. զի թէպէտև կամեցան հատանել ըղ-

պատճառն այնմիկ, որ զպատճառսն կամէր, ոչ կարացին. և այնուհետև ոչ էր խաղաղութիւն ի մէջ երկոցունց։ Քանզի գիրն ասէ, խաղաղութիւն խաղաղութիւն, և անդ ոչ էր խաղաղութիւն։ Արդ այնուհետև յարուցեալ Կիւրոն եւ արտաքս ի սեղանոյն. և այլ ոչ ոք կարաց ի մարդկանէ՝ որ անդն կային՝ դարձուցանել զնա. այլ ընդ միոյ բաժակի զանդրանիկութիւնն վաճառեաց, որպէս Եսաւն այն ի հնումն, որ ընդ միոյ կերակրոյ զանդրանկութիւնն վաճառեաց ընդ եղբօրն իւրում Յակոբայ. որ թէպէտև յետոյ արտասուօք զղջացաւ, ոչ եգիտ թողութիւն. իսկ սա և ոչ յառաջ զղջացաւ և ոչ յետոյ. Նա առնլով կերակուր և տալով օրհնութիւն, իսկ սա եւս բաժակ, և էառ անէծս անձին իւրոյ առանց թողութեան։ Արդ այս յաւանդութենէ ի մեզ հասեալ՝ այլ ոչ գրով. քանզի սովորութիւն է գրոց սրբոց և զրուցաց ասել բան որ յարտաքնոց և առնուլ վկայութիւն։ Նաև առաքեալ յիշէ զայն բան ի թղթի անդ իւրում՝ որ առ Տիմոթէոս. պարտ է ասէ վկայութիւն բարի և յարտաքնոց ընդունել։ Եւ դարձեալ ի գաւհիկ առասպելաց զայն բան, եթէ կերիցուք արբցուք, քանզի վաղիւն մեռանիմք. որ ի յառասպելս յայս կործանեցաւ Կիւրոն սակս ըմպելեացն։ Իսկ ի կատարելագունից ոմանց, զորոց զանուն և զբան յիշէ մի ոմն ի պատմագրաց, և ասէ այսպէս. Ողոմպիոսս անուն ասաց, պատմեցից ձեզ՝ ասէ՝ զրոյցս անգիրս յաւանդութենէ ի մեզ հասեալս. զոր և բազումք ոմանք ի գեղջկաց զրուցեն մինչև ցայժմ. և դարձեալ եթէ ոմանք այլազգաբար և ոմանք այլաբանաբար զրոյցս մատենից տային։ Արդ մեք ոչ ի գեղջկաց և ոչ ի գաւհիկ առասպելաց ասացաք, այլ ի կարի քաջ արանց ուսումնասիրաց ուսեալ պատմեցաք քեզ։ Վասնզի պարտ էր մեզ զանգիրս հինս զրուցաց ասացեալս մեզ յաւանդութենէ ծերոց հաւատարիմ արանց պատ-

մեզ քեզ ի մատենի աստ պատմութեան, նաև որ ի մերումս ժամանակի, թէպէտև ոչ տակաւին ես հաստատեալ գրով։ Ասացաք զպատճառս առաջին պատճենիս՝ որ ի դրուագի աստ՝ որ յաղագս փառասիրութեան մարդադաւանն Կիւրոնի մեզ ի վերայ եհաս հարկ. որ մի էր և պատճառ եղև՝ սակս միոյ բաժակի՝ բաժանման ի մէնջ այնքան բազմութեան ազգի։ Քանզի գոյ մահ և ի միոյ ցաւոյ հանդիպեալ մարդկան։ Քանզի ասէ աստուածային գիր յաղագս Ադամայ անկելոյն ի փառաց, եթէ ի միոյ պտղոյ ճաշակեաց, և անկաւ զմահ ի միոյ՝ ասէ, այլ ոչ եթէ յերկուց կամ յերից պտղոց, և այն յաղագս փառաց. ուստի և մեղք, և ի մեղաց անտի մահ. զոր լուաւ յաստուածային հրամանացն, թէ հող էիր և ի հող դարձցիս. զի ցանկանալով այլ փառաց, զոր ոչ ունէր, և զայն ես կորոյս՝ զոր ունէր։ Եւ յաղագս այնր մահ ամենեցուն, և մահուամբ միոյ մարդոյն մեռան ամենեքեան գրեալ է. և զկնի մահուանն մեղք. որ տիրեաց բնութեանն մարդկան, և այն յետոյ ի ներքս մտեալ ի մեզ՝ այլ ոչ յարարչէն, և ապա կռապաշտութիւնք ազգի ազգի. զի թողլով զԱրարիչն՝ զարարածս պաշտեցին՝ այսինքն զարեգակն և զլուսին և զաստեղս, նաև զոսկի, և զարծաթ, և զքար, և զփայտ և զայլ ես անթիւս որ ի տարերս, թողում ասել և զսողնոց և զջրային զեռնոց, զորս զամենեսեան և զնոսա ի բաց եբարձ Քրիստոս։ Եւ Քրիստոսի քարոզն, և ապա զպաշտօն նոցա Քրիստոսի մատուցին, և մատուցանեմք, այն որ օրհնեալն է յաւիտեանս, ամէն։

# ԳԼՈՒԽ ԿԳ

### Յաղագս Երկրորդ պատճառի բաժանմանն Վրաց՝ որ եղև է հա-
### կառակութենէ Կիւրիոնի։

Զայս ասելով մեզ յայլոց պատմագրաց թելադրութենէ՝ տամ մեզ նպաստ լինելով ի գործս մեր. վասնզի ուսեալ մեր և այլ պատճառ ի պատմութենէ գրոց յաղագս բաժանմանն Վրաց։ Ընդ յայնու ժամանակս մինչ բաժանեալ ունէին Պարսիկք և Յոյնք ի միջի իւրեանց զաշխարհս Հայոց, եղև քննութիւն ի մէջ Հայոց և Յունաց վասն դասակարգութեանն եկեղեցւոյ նման ինն դասուցն վերնոց. զի վիճէին Յոյնք և մեծամեծքն ի վերայ Հայոց, եթէ՝ զի մեր ասէին ինն դասակարգութիւնք եկեղեցւոյ՝ և ձեր ո՞չ. մերն կարգեալ կան ըստ ինն թուոյ դասուց վերնոցն՝ որք են այսոքիկ։

Պատրիարգք, Արք եպիսկոպոսք, Մետրապոլիտք, Եպիսկոպոսք, Քահանայք, Սարկաւագք, Կիսասարկաւագք, Կղերիկոսք, Գրակարդացք։ Ընդդէմ այս բերաւ բան ի բերան մերոյս յետ զկարգին նոցա գնելով, և ասեն. և մեք ունիմք կարգեալ զնոյն դաս եկեղեցւոյ աւանդեալ մեզ ի սրբոյն Գրիգորէ, և այլ կարգեմք կամօքն Աստուծոյ։ Զի և մերս առաքելական է աթոռ սրբոյն Թադէոսի, և զկնի նորա սրբոյն Գրիգորի, որ եղև մեզ երկրորդ առաքեալ, միանգամայն և Լուսաւորիչ։ Իսկ յայնժամ զՀայս Պարսիկք և Յոյնք ունէին որպէս բազում անգամ ասացեալ եղև՝ բաժանեալ ի միջի իւրեանց, և Տէր Մովսէս յաթոռ սրբոյն Գրիգորի նստէր ի Դուին։ Իսկ ի կողմն Յունաց հակառակաթոռ նման նստուցին զՅոհան ոմն մերձ առ նա. իսկ զերկուեանն Աթոռ Հայրապետութեան խոստեցին Տեարքն Արևնեաց. և ոչ հաւանեցան ընդ

հակառակութեան հնազանդել ումեք հրամանաց Եպիսկոպո-
սին իւրեանց առաքինոյն Պետրոսի. որ հասեալ ի վախճան՝
պատուէր ետ վիճակին իւրոյ առնուլ ձեռնադրութեան յԵղ-
ուանից և զմեռոնն օրհնութեան՝ մինչև միասցի Աթոռ Հայ-
րապետութեան սրբոյն Գրիգորի: Եւ յայնմ հետէ և առ յա-
պայ առնուին ձեռնադրութիւն և մեռոն Սիւնք ի յԱղուանից՝
մինչև բարձաւ հակառակութիւն՝ ասէ պատմագիրն: Վասն
այնորիկ ոչ եկն Կաթուղիկոսն Աղուանից ի ժողովն ձեռնա-
դրութեան Աբրահամու՝ մինչև միապետեաց Աբրահամ զԱ-
թոռ Հայրապետութեան իւրոյ: Եւ սակս ինն դասակարգու-
թեանն եկեղեցական կարգաց գլխաւորեցին և կարգեցին զԱբ-
րահամ Պատրիարգ, և զԱղուանից՝ Արք Եպիսկոպոս, և ըզ-
Վրացն՝ Մետրապօլիտ. որում ոչ հաւանեալ Վրացն Կիւ-
րոն կալ ի կարգին յայնմիկ՝ յորում կացուցին, խեռացաւ և
զհակառակութեան բերէր վէճս: Իսկ Հայրապետն Աբրահամ
լինել ասէր յառաջահաւատ քան զՎիրս, և նոցա անդ է
Արք Եպիսկոպոսութիւն. յայսմ մաքառմանն և ի խնդիր ուղ-
ղափառ հաւատոյ դարձան Վիրք և եղեն Քաղկեդոնիկ ի սա-
դրելոյ սատանայի և Կիւրոնի, միանգամայն և ի կամաց կայսե-
րըն Մաւրկայ, և (ի) Յունական զօրավարացն գրգռեալ լինէր
լիրբն այն Կիւրոն՝ խնդրել զգահերէցութիւնն իւր ի վերայ
Աղուանից: Որում ոչ հաւանեալ Աղուանից, զայլ ոմն երե-
ւեցուցանեն կանխաւ եկեալ առաքեալ յաշխարհն Աղուա-
նից՝ Եղիշայ անուն. զորոյ որպիսութիւնն ասել կամէի զառաջին:
Սա լեալ յաշակերտաց Փրկչին ձեռնադրեալ (ի) Յակոբայ
յեղբօրէն Տեառն, և հաւանեալ այնմ, ետուր զԱրք Եպիս-
կոպոսութիւնն տանն Աղուանից՝ իւրաւունս համարելով, և
զՄետրապետութիւնն տանն Սիւնեաց: Իսկ Կիւրոն ի բաց գը-
նացեալ և այն անգամ, և մեծի Հայրապետին Աբրահամու

միաբանեալ ընդ յինքեամբ զԱղուանս և զՍիւնիս, և յայնմ-հետէ եղեն մի հօտ և մի հովիւ, և հնազանդ սուրբ երկնայարկի Աթոռոյ սրբոյն Գրիգորի։

## ԳԼՈՒԽ ԿԴ

### Դարձեալ է նոյն խորհուրդ խնդրոյ յայլմէ պատմութենէ։

Երկուքս այսոքիկ են՝ որք աշխատութիւն տագնապաւ մեզ ի վերայ հասուցանեն պատմել զմի և զնոյն խորհուրդ։ Վասն զի դարձեալ աղմուկ և շփոթ ինն շարժեալ ի կողմանէ Յունաց ի նոյն խնդիր եկեղեցական կարգաց դասուց, և շարժեցան ամենայն մեծամեծքն Յունաց. և ուր Առաքեալ էր վախճանեալ՝ զամենեցուն աթոռ Պատրիարգ խոստովանեցին. և ի մեծի մաքառման լեալ ընդ մերս կողմ, առ ի փոքրացուցանել ջանացան զկայս հանգստեան սրբոյն Թադէոսի առաքելոյ, ոչ ունել Պատրիարք, և Արք Եպիսկոպոս, և Մետրապօլիտ հանդերձ այլ դասակարգօքն։ Իսկ ապա նոցա տեսեալ զԱղուանս միաբան ընդ Հայոց ի հաւատս ուղղափառութեան իսկզբան սրբոյն Գրիգորէ և այսր։ Քանզի խնդրեալ էին իւրեանց Առաջնորդ զերանելին Գրիգորիս ի զարմից սրբոյն Գրիգորի։ Այլ Թէպէտ և նոքա զայլ ոմն ասէին կանխաւ եկեալ յաշխարհն Աղուանից Եղիշէ անուն, զոր վերագոյնդ յիշեցաք, յաշակերտաց Փրկչին ձեռնադրեալ ի սրբոյն Յակովբայ եղբօրէն Տեառն, և քարոզեալ անդ, և եկեղեցի շինեալ նախ քան զլուսաւորութիւնն Հայոց, որ է մայր եկեղեցեացն Գեսու եկեղեցին այն առ ստորոտով Ամարասու՝ ի գաւառին՝ որ կոչի Գորողու՝ մերձ ի դաշտն Պարտաւ քաղաքի, որ կոչի Փայտակարան. և ինքն մեռանի անյայտաբար ի մարդկանէ՝ ոչ գիտե-

լոյս յումեքէ լեալ եւք կենաց նորա։ Զայս նախագրութիւն տեսեալ և զմիաբանութիւն հաւատոյն Աղուանից առ Հայս, նոցա ետուն պատիւ լինել Արք. Եպիսկոպոս Հայոց. Նոյնպէս տեսանելով զաստուածերկեղ և հաւատարիմ ի հաւատս զՏէրսն Սիւնեաց, և քաջութիւնս և ուղղափառ յամենայնի, և նոցա ետուն պատիւս լինել Մետրապոլիտս Հայոց, և խաչանիշ մեծարանօք պատուեալ զնոսա. և այսպէս կարգ ըստ կարգի հաստատեցին զնոյն դասս, և եղեն մի հօտ և մի հովիւ՝ յայնժամ և այժմ, և մինչև ի վախճան ժամանակաց իւրեանց։ Եւ զԿիւրոն կործեալ ընդ մեզ, և զբաժին նորա ընդ կեղծաւորս եդեալ, ի բաց թողին զնա երթեալ զկնի կամաց իւրոց։ Զի ամենայն ծառ՝ որ ոչ բերէ զպտուղ բարի, հատանի և ի հուր արկանի. և ամենայն տունկ զոր ոչ տնկեաց Հայրն երկնաւոր, խլեսցի. այսպէս և նա. զի ի հակառակութիւն և ի կռիւ եղև կենաց նորա՝ յորմէ հետէ տնկեցաւ նա ծառ անպտուղ և որթ անքարունակ, և ապա կործեաւ յիշատակ նորա աղաղակաւ։ Ահա ցուցաք քեզ զպատճէն թղթոցն Կիւրոնի։ Եւ դարձեալ զպատճառ բաժանմանն զոր ի լրոց և ի գրոց է մեզ հասեալ։

## ԳԼՈՒԽ ԿԸ

Թէ յորում ժամանակի հաւատացին Աղուանք յառաջեան զՀայոց՝ ի պատմութենէ իւրեանց։

Լսելով զայս մեզ (ի) պատմագրացն Աղուանից զարդար և զբուն և զառաջին հաւատալն աշխարհին իւրեանց. հաւաստի մեզ պատմեալ. զի պատմութիւն ճշմարիտ է. և առաւել քան զխոնարհելն զՌանայ ի Վաղարշակայ տանն Աղուանից,

այլ ինչ զոյգ՝ սակ պատմութիւնն՝ մինչև ցքաջն Մաշտոցն, որ միանգամայն տիրեաց կողմանցն Եղուանից: Իսկ ի հասանել ժամանակի արեգակն արդարութեան և ձայն ելանէր մերոյ փըրկութեան անքննին էութեան լոյս փառաց, և էութեան Հօր ծագումն զանօրինականս կատարեալ զամենեցս ամենայն, և յետակայն նուաստ փառս, ուստի ոչն էր մեկնեալ: Եւ զսուրբ և գ ցանկալի աշակերտսն իւր առաքեաց քարոզ տիեզերաց. որում և մերում արևելեայցս վիճակեցաւ սուրբ առաքեալն Թադէոս: Սա եկեալ ի Հայս յԱրտազ գաւառ, և անդ առնու զվախճան մարտիրոսութեան ի Սանատրկոյ արքայէն Հայոց: Եւ աշակերտ նորին սուրբ Եղիշէ դառնայ յԵրուսաղէմ, և պատմէ անդ մեծին Յակովբայ եղբօր Տեառն զսքանչելի նահատակութիւն առաքելակցաց նորա: Ընդանոր ապա յաջողմանէ սուրբ Հոգւոյն ձեռնադրի Եղիշայ ի ձեռաց սրբոյն Յակովբայ, որ էր առաջին Հայրապետ Երուսաղէմի. վիճակ առեալ իւր Եղիշայ զարևելս, ճանապարհ արարեալ յԵրուսաղէմէ ընդ Պարսս մտանէ ընդ Մասքութս, խօսս տուեալ ի Հայաստանեայցն. սկիզբն առնէր քարոզութեան ի Ճորայ, որ է Պարքանդ, և ի տեղիս տեղիս բազումս աշակերտեալ ծանոյց նոցա զփրկութիւն: Եւ անտի եկեալ յՈւտի գաւառ ի Մոհառըն քաղաք երիւք արամբք աշակերտակցովք, որոյ հարազատք՝ անօրէնք ոմանք զկնի եկեալ՝ զմինն յաշակերտակցացն ընկալեալ ի նոցանէ զնահատակութեան վախճան, և երկուսն թողեալ զերանելին Եղիշէ, գնացին զկնի ամբարիշտ և խողողիչ արանցն: Իսկ սուրբ Հայրապետն Եղիշայ եկեալ ի Գիս՝ կանգնեաց անդ եկեղեցի, և մատոյց զանարիւն պատարագն: Յայնմ տեղւոջ եղև սկիզբն արևելեայց եկեղեցեաց մայրաքաղաքաց, և լուսաւորութեան տիեզերաց: Եւ անտի անցեալ ի դաշտն Զարգունի ի տեղիս զոհարանաց դիւամոլ կռապաշտիցն, և անդ

էառ զնահատակութեան պսակն, անյայտ իմն եթէ յումեմնէ եղև ելք կենաց սրբոյն. և անդէն ի գուբ մի մահապարտաց ընկեցաւ պատուական նշխարք սրբոյն, և ծածկեցաւ ի տեղւոջն՝ որ կոչի Հոնեանք՝ բազում ժամանակ ի փառս Քրիստոսի Աստուծոյ։ Արդ վասն այսր պատճառի պատեհ համարեալ Հայրապետն մեր Աբրահամ տալ զԱրք Եպիսկոպոսութիւն՝ տանն Աղուանից, և տանն Վրաց՝ զՄետրապօլտութիւն. որում ոչ հաւանեալ Կիւրոնի բաժանեցաւ ի Հայոց, և ի բաց տարագրեցաւ։

## ԳԼՈՒԽ ԿԶ

Պարզեալ է նոյն խորհուրդ վասն Կիւրոնի՝ որ ինչ գծնէ Թղթոցն պապին։

Զամենայն յարմարեալ կարգեցից քեզ ի գիրս այսոսիկ՝ որ ինչ վասն Կիւրոնի զինի Թղթոցն, զոր գրեցաւ առ նա. և ոչինչ ոչ կարացին հնարել դարձի և փրկութեան նորա։ Քանզի վաղուրեմն հաստեալ էր զմիտս իւրոյ անդարձութեան. վասնզի Սաւուղարար երկու ամ եղև ճշմարտութեան հաւանեալ, որպէս միանգամ ասացաւ, որդի տարեւոր Սաւուղ ի Թագաւորելն իւրում, և երկու ամ Թագաւորեաց գրեալ է։ Վասնզի այնչափ ինչ եղև հաճոյ Աստուծոյ, ապա այնուհետև սկսաւ ամբարշտել և ատել ուխտի Տեառն։ Զի թէպէտև մատոյց ողջակէզս Տեառն Աստուծոյ յաղագս կուտելոց ազգացն ի վերայ նորա, ոչ հաճեցաւ ընդ նա Տէր. այլ ասէ ցնա Սամուէլ մարգարէն սպառնալով ի դիմաց Աստուծոյ, մի՛ կացցէ ասէ թագաւորութիւն քո, զի ի զուր է քեզ այդ՝ զոր արարեր, զի ոչ պահեցեր զպատուիրանն իմ՝ զոր պատուիրեաց Տէր։

Արդ այսուհետև խնդրեսցէ իւր Տէր այր ըստ սրտի իւրում, և կացուսցէ զնա իշխան ի վերայ ժողովրդեան իւրոյ, զի ոչ պահեցեր զոր ինչ պատուիրեաց քեզ բերանով իմով. արդ վասըն այնորիկ ընկալաւ նա վճիռ ի Տեառնէ, զի ոչ եկաց յուխտին Տեառն, և ըստ հրամանաց նորա ոչ կամեցաւ գնալ, և ոչ լուաւ պատուիրանի Տեառն. ունկն դիր լերուք պատուիրանաց Տեառն՝ գրեալ է. վասնզի պատուիրանք Տեառն լոյս են՝ և որ ի կարգին է, և ոչ է ընդունելի ողջակէզք և զոհք քան լսել ձայնի Տեառն. վասնզի ձայն Տեառն պատուիրանք նորա են. և ահա՛ լաւ է ունկնդրութիւն քան զզոհ ընտիր, և հնազանդութիւն քան զճարպս խոյոց՝ ասաց ոմն յիմաստնոց։ Արդ այսոքիկ ի Միւրոն կատարեցաւ, թէպէտև ի հնումն առ Սաւուղ ասացաւ. զի և սա ոչ լուաւ ձայնի Տեառն։ Արդ լեալք սորա յառաջագոյն ցուցանէ յԱպիսկոպոսէն Յուրտաւայ, և յայտնիք նորա հանդիպեցան վաղվաղակի գոլ՝ յանդիման առնելով Սամթուղիկոսին զայն՝ զոր ի վաղնջուցն ունէր ծածկեալ։ Իսկ իբրև հրապարակագոյժ եղև գործք նորա և քաջայայտ ամենեցուն, և ևս քան զևս յորդորէր զնմանէ համբաւ ապստամբութեան։ Ապա այնուհետև սկսաւ ընդդէմ վիճել բիւր շատախօսութեամբ այնոցիկ՝ որք բանիւ յանդիմանէին զնա. զի զմիտըս իւր ի վեր աճեցուցեալ և ոչինչ գտեալ զինքն առաւել քան զինչ էրն, իբրև զայնոսիկ որք զանձինս առ իմաստունս ունէին, յիմարեցան։ Իսկ սա զանզգամութեան իւր առ ձեռն պատրաստ ունելով, յետոյ գտաւ հաղորդ անմտաց իւր չար և սնոտի վաստակօք ի հանդերձելումն աճեցուցեալ զիւր չար ուսումն չար վարդապետութիւն ցանելով որոմն ի վերայ ցորենոյն չար իւրով երկրագործութեամբն. զոր Փրկիչն ի ժամանակի հնձոցն խոստացաւ ի ձեռն հնձողացն քաղել և կապել խրձունս առ ի այրել, և զցորեանն ժողովել յշտեմա-

բանս արքունիս։ Իսկ իբրև հայեցան յանդգամութիւն նորա, թէ ինքնամբ ձգէ յինքն զխորհուրդս բազմաջանս, և կամ թէ յեղյեղէ զբանս իւր այսր անդր իբրև զհողմ ինչ կոծելով, և կամ թէ յուսմունս աչօ ակս և յօտարաձայնս գանդաղէ, այնուհետև անփոյթ արարեալ զնմանէ, բարձեալ թողին զնա երթալ զհետ կամաց իւրոց, ասեն. եղեցի ժամանակ նորա յաշխարհի աստ. վասնզի այս է նորա ժամանակ և իշխանութիւն խաւարի. քանզի մեծ թշուառութիւն է մարդոյ չար գործել՝ գրեալ է։ Եւ դարձեալ ի լեզու խնայել բարիոք է և համառօտագոյն, քան թէ վարել սրտիւ բանիցն փոյթ. վասնզի պարտ և արժան է ամենեւին փախչել յոյժ գեղեցիկ բանիցն հոսմնաց. քանզի որպէս բազում անուրջք սնոտիք՝ նոյնպէս և յոլով բանք ասաց Իմաստութիւնն. իսկ նա յոչինչ յայսցանէ զգայր, և ոչ հայէր ի բանս իւր ունայն, այլ անիմաստ մտօք ձգէր զբանս իւր իբրև զպարան աներկիւղ համարձակութեամբ, և ոչ գիտէր՝ եթէ երկիւղ Աստուծոյ՝ մարդկան փրկութիւն է ըստ գրեցելումն։ Քանզի թէպէտ և յոյժ ի բաց եմք յերկնէ ծանուցել, զի ի լսողին Աստուծոյ յականջս խօսիմք՝ ի գրոց ուսաք։ Իսկ նա յուսացեալ յանձախութիւն բանից իւրոց, և շատախօսութեամբ թշուառականն համառօտէ իւր զկեանսն՝ որոշելով զինքն ի լաւագունէն ի վատթարագոյնն, վայել կարծէր զինքն ի վաստակս իւր, զոր ոչ Աստուծով գործեաց՝ բարերար զինքն վարդապետելով իւրոցն հաւանելոցն. որ ամենեւին չարն էր, հպարտեալ ինքն զինքն ի բարւոյն ինքնակամօք և չարաչար տարակուսանօք մոլեալ ի ցնորս մտաց իւրոց։ Եւ յայտնի մահու հանդիպեալ ոչ եղից բարութեամբ զանձն իւր. և կատարեցաւ առ նա բան գրոյն՝ զոր ասաց մի ոմն յաստուածայնոցն՝ հեղգնելով և այպանելով այսպէս. Եւ՝ ասէ՝ ընդ յոլովութիւն կենաց ամպախոյն նախանձէր, այլև լաւագոյն վարկանիմ զառա-

բանժամ՝ յորովայնէ մօր ի բաց անկեալ սաղմն քան զնա. վասն զի այնպիսին որպէս եկն ընդունայնութեամբ՝ նոյնպէս և ի բաց գնաց։

## ԳԼՈՒԽ ԿԱ։

### Յաղագս որբոյն Շուշանայ։

Արդ այսուհետև յըղձալին քո ժամանեալ հասանիցիմ պատմութիւն, որ յաղագս յաղթող և սուրբ նահատակին Շուշանկայ, զբարի վկայութիւն նորա՝ որ վասն Քրիստոսի աստուածպաշտութեանն և ուղիղ խոստովանութեանն՝ եհաս նմա մարտիրոսանալ յուրացող և յանբարիշտ յառնէ իւրմէ, պատմեցից, և ի գովեստ նորա շարժեցից զբերան իմ, որ ինչ գրով և անգիր մեզ եղև ուսանել։ Արդ քանզի ի գիրս Թղթոցն գտաք մեք յիշատակեալ ի սրբոց Հարցն և ի Վարդապետացն զնորա քաջութիւնն և զպահպանութիւն պատուիրանի Հարցն օրինաց, և զուղիղ և զճշմարիտ խոստովանութիւնն և զհաստատութիւն հաւատոյն և զպաշտօն՝ զոր կարգեալ էր յեկեղեցւոջ անդ Յուրտաւայ, զոր ամենայն ուրեք յամենայն տեղիս պատմի այս բան, մանաւանդ ի Թուղթսն՝ որ գրեցան առ Կիւրոն, նախ ի Վրթանիսէ վարդապետէ, և ապա յԱբրահամայ Հայոց Կաթուղիկոսէ։ Քանզի յանդիմանեալ զնա այսպէս ասէին, թէ զպաշտօն սրբոյն Շուշանայ խափանեալ ես՝ զոր ի Յուրտաւայ յեկեղեցւոջն կարգեալ և հաստատեալ։

Արդ մեք որպէս ասացաք, զյիշատակս սորա ի Թուղթս յայս մէջ կարացաք ընդմիջել ի կարգէ խորհրդոց, և յայլում տեղւոջ ասել, զի մի՛ զուգէ օտարաձայնեալ հեռացի խորհուրդն՝ որ առաջի և զկնի կարգեալ Թղթոցն. նաև վերջոյն իսկ

ուսուցեալ սոյն խորհուրդ՝ եթէ զպատշաճն վարկանելոյ գրեանք ի կարգի. զոր և խորհուրդն խնդրէ ուսանել մեզ ։ Իսկ արդ ինձ եթէ հնար ինչ էր՝ փոխել զզօրութիւն տկարութեան իմոյ, և այլ ևս առնուլ առաւելագոյն ոյժ և զօրութիւն. զի տկարութիւնս իմ օժանդակեալ զօրացուցանէր զիս ի պատմութեան աստ սրբոյ վկայի Ղուշանկանն. նաև զլեզու իմ փոխէր ի բարեբանութիւն նորա սքանչելեացն՝ որ զկնի չարչարանաց նորա եհաս նմա ի Յուրտաւ. և նախ քան զկատարումն մեծաւ ճըգնութեամբ ի հանդէս մտեալ, և ի մարմնի զանմարմնոցն բերելով զօրինակ, ի քաղց և ի ծարաւ զինքն մաշէր տքնութեամբ և համապազորդ սաղմոսերգութեամբ, ի տուէ և ի գիշերի ոչ դադարէր օրհնել զԱստուած. ոչ իբր ի բանտի և ի կապանս զնա արգելեալ ոք, այլ որպէս թէ ինքնայօժար կամօք մտեալ ի կապանս, զի զվեց ամ կեցեալ նորա ի կապանս և ի բանտի ի բերդին՝ որ կոչի Ուփրեթ։ Զի քան զչարչարանսն որ՝ եած ի վերայ նորա ամբարիշտ և անօրէն Բդեշխն չարաչար և դառն տանջանօք. նախ զի քարշեալ եղև ընդ փողոցս և ընդ դաշտս, և ջարդեալ զնա քրօք և ծեծեալ յերեսս և ի կզակ՝ մինչև բազում աւուրս ոչինչ կարացեալ տեսանել անյայտմանէ աչացըն. և ապա ի կապանս և յերկաթս և ի բանտս, տեղեացն ժահահոտութիւն և գիջութիւն բանտին այլ առաւելագոյն էր, թողում ասել զայն՝ որ ի լուէ և յորդանցն ի վերայ հասեալ նմա նեղութիւնք, զոր ասի իսկ յիւրում պատմութեանն։ Իսկ երանելի վկային ոչինչ թուէր չարչարանքն այն յաղագս յառաջիկայ յուսոյն և սիրոյն և հաւատոցն՝ որ ունէր առ Աստուած։ Զի ի նախնեաց անտի իւրոց ունէր զբարեպաշտութիւն, բարի արմատոյն բարի շառաւիղ. զի ծառ բարի պտուղ բարի առնէ. և ի պտղոյ անտի ծառն ճանաչի։ Արդ այսքանեաց և այսպիսի նեղութեանց համբերեալ նաև տարեալ՝ ոչինչ զգայր, այլ

առաւել քան զառաւել յորդորէր ի ճգնութեան իւրում, զոր ունէր ազգի ազգի առաքինութեամբ, անսուաղութեամբ հացի և ծարաւով ջրոյ, և տքնութեամբ և արտասուօք և անդադար սաղմոսերգութեամբ զցայգ և զցերեկ։ Այլ ունէր առ ինքեան գրկունք մի, զպաշտօնն իւր և զսաղմոսն այնու կատարէր, և քարոզէր ամենեցուն առ նա եկելոց զամենայն զկարգս Աստուածպաշտութեան։ Այլ նման Նունէի առաքելուհի լեալ, մինչև քարոզ նորա սփռեցաւ ընդ ամենայն աշխարհն Վրաց։ Այլ որք գային առ նա ի տեսութիւն, ուսանէին ի նմանէ զքարոզ բարեպաշտութեան, և բազումք հիւանդք և ախտաժետք գային առ նա՝ բժշկէին։

## ԳԼՈՒԽ ԿԸ.

### Առաջնորդութիւն յաղագս շրջագայութեան Սրբոյն Տեառն Աբրահամու Հայոց Կաթողիկոսի։

Արդ որ վասն բաժանման Վրաց եղև ի ձեռն Կիւրոնի վիճամունք այս այս և թուղթ ազգի ազգի կարգեցաք ի պատմութեան աստ ընդ մերում համառօտութեան՝ քննեալ և ստուգեալ հաւաստի։ Բայց թէև ոչ կարեմ հնարս ինչ առնել և շահել զանհնարատն զայն Կիւրոն երանելի Հայրապետն մեր Աբրահամ. քանզի կորեաւ ի Կիւրոնէ հանճար, և փախեաւ ի նմանէ իմաստութիւն անդրաւ հեռաւորութեամբ. յայնժամ ապա գրէ ձեռնարկ ընդհանուր ընդ ամենայն աշխարհս Հայոց, և գիր շրջագայական առ ամենայն ուղղափառ հաւատացեալս ի քաղաքս՝ և ի գաւառս՝ և ի գեղս, զի մի՛ ոք ամենևին հաղորդեսցի նոցա կամ ի խնամութիւն կամ ի սիրելութիւն և կամ ի հաղորդութիւն ինչ հոգևոր նոցա, կամ ի մարմնաւոր մե-

տուրեւառութիւն, որպէս առաջուն միանգամ, այլ միայն գնել ինչ կամ վաճառել։ Իսկ դարձեալ թէ մի՛ ոք խաբեսցի ի Նոցանէ անուամբ տեղւոյ ինչ, զոր Նոքա անուանեն Մեքսիքայի Խաչ և կամ Մանգղաւեաց և կամ այլ ինչ տեղօք, որ Նոցա պատճառ գտանի խաբելոյ զպարզամիտսն։ Իսկ այսքանեօք և այսպիսի իրօք գրէ զգուշանալ. և այլ բազում բանիւք պատմագրանէ արտայայտելով Նոցա՝ որ ինչ ենն և եղեն, և մեզ օրինադրէ զհաւատ և զխաղաղութիւն Հայոցն առաջնոց յերից սուրբ ժողովոցն՝ հաստատեալ ի Հայս, և յՎրաց, և ի սուրբ Հոգւոյ, և զտնօրէնութիւն մարմնացելոյ Բանին Աստուծոյ ճշմարիտ անքակ և անբաժանելի միաւորութեամբ։ Պատմէ և այս յաղագս Սիւրոնի, եթէ զկնի մահուանն Մովսիսի Հայոց Կաթուղիկոսի՝ և նախ քան զառաջնորդելն Աբրահամու զաթոռն՝ եկեալ Սիւրոնի որ Սմբատ Վրկան Մարզպան խաբանօք իմն և խորամանկութեամբ խնդրել ինչ ի Նմանէ թուղթ յաշխարհն Վրաց, զի մի՛ հաւանեսցին խուժժիկքն այնմիկ Նեստորականի և համախորհուրդ Նորա, և մի՛ բաժանեսցին ի միաբանութենէ Հայոց. և այն լինէր ընդ Նենգութեամբ և կեղծաւորութեամբ ի չքմեղս երևեցուցեալ. զոր և զայն յիշէ Սմբատ ի թղթի անդ իւրում. որ առ Մովսէս Եպիսկոպոսն Ցուրտաւայ, զի յանձն չէր վստահ Սիւրոն, զիարդ կայր արդեօք և զմեզ յորդորէր և թուղթքս տայր առնել յաշխարհն, և զինքն ինքեամբ յանդիմանէր. և այնպէս ամենայն ուրեք յամենայն տեղիս յանդիմանեալ լինի խաբեբայ և փորձիչն՝ որ խաբեացն և խափանեաց զուղղափառութիւն աշխարհին Վրաց, խարդախութեամբ ինչ գիտելով զդպրութիւն խարդաւանողն այն վիշապն։



## ԳԼՈՒԽ ԿԹ

Թէ յորում ժամանակի անկեալ եղև ժողովն Քաղկեդոնի, և Տաղ Հայոց և Աղուանից միաբան, և Վրաց բաժանումն է Հայոց, և զկնի այնորիկ Գիր շրջաբերական Տեառն Աբրահամու Հայոց

Կաթուղիկոսին։

Քառասաներորդ երորդ ամ էր Թուականին Հռոմայեց՝ յորժամ լուսաւորեցան Հայք ի հաւատս, և Աղուանից լուսաւորութեանն երկերիւր եւթանասուն ամ յառաջ՝ յետ հարիւր ութսուն ամ լցելոյ հաւատալոյն Հայոց, յաղագս տիեզերակործան ժողովոյն Քաղկեդոնի եղև հանդէս ժողովոց ի ժամանակս Բաբգէն Հայոց Կաթուղիկոսի, Յոյնք և ամենայն Իտալիայ, Հայք և Աղուանք և Վիրք միաբանեալ՝ նզովեցին զչարափառ ժողովն Քաղկեդոնի՝ հրամանաւ բարեպաշտ Թագաւորացն Հռոմոց Զենոնի և Անաստասայ. և յետ ութսուն և եւթն ամի անցելոյ ի ժամանակս Աբրահամու Հայոց Կաթուղիկոսի բաժանեցան Վիրք ի Հայոց միաբանութենէ ի ձեռն անիծելոյն Կիւրոնի. այլ և Յոյնք և Իտալիա ընդ նոսա և Աղուանք ոչ քակեցան յուղղափառութենէ և ի միաբանութենէ Հայոց։ Զորոյ ի շրջաբերական թղթին վասն Կիւրոնի դիմադարձութեան՝ Աբրահամ զամբաստանականն վասն նորա յաղագս ամենայնի բաց կտրելով սրով Հոգւոյն ազդէ նախ յԱղուանս և տայ գիտութիւն, և գրէ այսպէս ի թղթին։

# ԳԼՈՒԽ Հ

## Թուղթ՝ Շնորհաբերական Տեառն Էջմիածնա Հայոց Կաթողիկոսին։

Պաշտելի և ի վեր քան զբան ի բերման պարգևի զշնորհ, զոր եւ բանն Աստուած արժանեաց մարդկութեանս աթոռ ունել երկնային, զառաքելոցն ասեմ և զնոցունց յաջորդացն։ Որ և ես Աբրահամ անարժան կոչեցայ յաթոռ երջանկին Գրիգորի յաջորդելոյ մեծի առաքելոյն Թադէոսի, ամենեցուն կացելոյ ընդ այս հովուական իշխանութեամբ Առաջնորդաց Եկեղեցւոյ, և Վանաց Երիցանց, և Քահանայից, և Սարկաւագաց դասուց սուրբ եկեղեցւոյ, Ընտրապետակեցաց և Միայնակեցաց, Ազատաց և Իշխանաց, Շինականաց և համօրէն ժողովրդականաց՝ արանց և կանանց՝ ողջունիւ և խաղաղութեամբն Քրիստոսի Աստուծոյ մերոյ հասցէ ի ձեզ զարգմանաւ։

Արդ քանզի հովք ախտալից շինուածոյ Եկեղեցւոյս Հայրապետաց Հայաստանեայցս՝ որ ի Դրունն արգելեալք եղաք, փութացայ զգուշացուցանել շրջաբերական թղթովս զայթակղութեանցն զարթուցանելոց մահացու թշնամոյն. զոր թանձրամիտքն և մարմնասէրքն ախտացեալ ի նոյն ապերախտք եղեն, և զփրկութիւն յորդւոյն Աստուծոյ, և փառն մարմնոյ նորա զհաղորդութիւն ընդ մեզ, և զմեզ ի վեր տանելով ի բարձրութիւն երկնից երկրի՝ ուրանան, զի յայնպիսեացն խորշելիք, զնոսանիցն հաւատոյ ճանաչելով, ոչ օտար ինչ ձայնիւ նորաձևել յայլայլակն, որպէս զօձտողին լեզուաւ է մեր փորձառութիւնս։ Եւ յառաջագոյն աւետարանեալքն յիսկզբանէ ականատեսացն և ի սպասաւորաց Բանին և ի մարգարէիցն զգուշակեալք՝ զոր մատուցին մեզ երեք հարիւր տասն և ութ Հարքն ժողովեալք ի Նիկիայ, նովիմբ քաջ նահատակօքն հարիւր և

յինոց ի Կոստանդնուպօլիս՝ կործանեցին զՀոգեմարտսն, և երկերիւրքն յԵփեսոս զամբարիշտն Նեստոր. և իւրեանց խոստովանութիւն կալեալ առաջնորդ զկեանսն յաւիտենից. զոր և ես կարճառօտագոյնս և մեկնողօրէն յիշատակեցից. և է այս Հաւատամք ի մի Աստուած Հայր ամենակալ, արարիչն երկնի և երկրի, երևելեաց և աներևելեաց. և ի մի Տէր Յիսուս Քրիստոս, յՈրդի Աստուծոյ, ծնեալ ի յԱստուծոյ Հօրէ միածին. այլ ո՛չ արարեալ կամ հաստատեալ. համագոյ Հօր, այլ ոչ յոչնչէ արարեալ ամենայն երևելեաց և աներևելեաց. և ի սուրբ Հոգին արարիչ և կենդանացուցանող և նորոգիչ. ոչ ծնունդ, այլ ելումն. Աստուած ասի Հայր, Աստուած Որդի, Աստուած սուրբ Հոգի. ոչ երեք Աստուածք, այլ մի Աստուածութեամբ կամօք և զօրութեամբ փառաբանի սուրբ Երրորդութիւնն, զոր իմանամ միաւորութեամբ բաժանեալ, և բաժանմամբ միաւորեալ. ոչ սկիզբն և ո՛չ դադարումն կամ երկցութիւն. քանզի որպէս փառք առանց լուսոյ ոչ իմանի, և ոչ է կամ պատկեր առանց էութեան, և զօրութիւնն առանց զօրութեան, կամ իմաստուն առանց իմաստութեան, այսպէս և Հայր առանց Որդւոյ. և որպէս ի լուսոյ երևաց նորա միշտ լոյս ծագէ անեսաղաց, և ո՛չ ոք զատանի առանձնապէս, կամ միմն յառաջ երևի, այսպէս Հայր և Որդի առանց սրբոյ Հոգւոյն: Իսկ ի վերջին աւուրս որդի իջեալ մարմնացաւ և մարդացաւ, ծնաւ անճառաբար ի սուրբ կուսէ Աստուածածնէ՝ մարմնով հոգւով բանականաւ շնչաւ միովք, և զինչ ի մարդ յօրինակ Աստուածային ճոխութեամբ: Նա է մի Տէր Յիսուս Քրիստոս անմեկնելի ի Հօրէ և բաղնդակ յերկրի խաչեալ՝ և թաղեալ՝ և յերրորդ աւուր յարուցեալ, ելեալ յերկինս նստաւ ընդ աջմէ Հօր. գալ նովիմբ մարմնով դատել զկենդանիս և զմեռեալս. որոյ թագաւորութեանն ոչ գոյ վախճան: Իսկ որք ասենն էր՝ կէծէ յորժամ

ոչ էր, և նախքան զլինելն չէր, և կամ՝ զայս զարդս Հօգւոյն, կամ փոփոխելի կամ այլայլելի և կամ յայլմէ էութենէ, կամ ի գոյութենէ, զայնպիսիսն նզովէ կաթուղիկէ առաքելական Եկեղեցի։

Արդ այս է խոստովանութիւնն մեր հանդերձ ամենայն տնօրինական ներգործութեամբն մարդացեալ Բանին Աստուծոյ։ Իսկ նոքա ասեն բնութիւն մարմնացելոյ Բանին Աստուծոյ զոր և մեզ մի՛ երբէք լիցի ասել։ Քանզի ի յաւուրս Մարկիանոսի Յունաց թագաւորի, որ էր գրեալ, եթէ ի ժամանակս Արշակայ Պարսից արքայի, և կամ՝ թէ փոքր ինչ յառաջ ժողովեալք ի Քաղկեդոն՝ ի ճշմարտութենէ վրիպեցան. զի և զայն ինքն զթագաւորն ասեն չար կամացն Նեստորի միաբանեալ, և ժողովուրդք գլխաւորք և համախոհք նմին արձան կացուցեալ իւրեանց չարափառութեան զթուղթն Լևոնի, հաստատեցին զառաջ եդեալ աղանդն Նեստորի, և կամ՝ զձևս վերնագունին Սամոսատացւոյն. զի թէպէտ զձայնքն որ յիշեմ, այլ դէմք զմիոյ բերեն. քանզի անյիշատակելին Նեստոր անդուռն բերանով յանդգնեցաւ ասել երկուս որդիս, մին զորդին Աստուծոյ, և միւս զՄարիամայ ծնեալ մարդ սոսկ, և տաճար Բանին, և զօրանալ զնա ի Հոգւոյն սրբոյ ուսուցանէ։ Քանզի մարգարէին և ոչ Աստուածածին ասէ զսուրբ Կոյսն. և մարդ մեռեալ ասէ. և ոչ խոստովանի զԱստուածն բանիւ իւրով մարմնով կրեալ զամենայն, վասնորոյ նզովեցաւ։ Իսկ ի Քաղկեդոնի ժողովեալք ոչ իշխեցեալ՝ զնոյն ասել՝ երկու բնութիւնս օրինադրեցին որք ի սուրբ Վարդապետացն Երկաբնակք անուանեցան և Հայհոյօղք. քանզի ուղղեն իսկ զկիրս մերոյ բնութեան, զքացնալն, զվաստակելն յուղեգնացութեան, զգալն ի զեթոյ յանդգնին և անզգայութիւն ասել զխաչն և զամենայն տկա-

այսր հարկաւոր համարեցան գրել յառաջագոյն քան զմեզ կացեալքն յատենին Կաթուղիկոսութեան յԱղուանս, իսկ մեք ի Սիս առ Կիւրոն՝ որ Կաթուղիկոս անուանի՝ և ի նորին աթոռակիցսն. քանզի զԵպիսկոպոսն եկեղեցւոյն Ցուրտաւայ, որ զմիջնորդութիւն ունէր երկուց աշխարհացս, յաղագս ուղղափառ հաւատոյ հալածական արար, և զպաշտօնն հայրենի, զոր սրբոյն Շուշանկանն էր կարգաւորեալ, հակառակ մեզ խրոխտացեալ ի բաց խափանեաց։ Յաղագս որոյ գրեցաք գանալ ի ճշմարիտ հաւատն, և կալ հաստատուն յաւանդութեան առաքելոցն, որ տուաւ ի ձեռն մեր Վարդապետացն։ Նա և նոցա ընդդիմացեալ երկիցս անգամ զհակառակն գրեցին առ մեզ. քանզի նոյն իսկ սուտանունն կացեալ գլուխ եկեղեցւոյն Վրաց, ի նմին ժամանակս Խոսրովու արքայի որդւոյ Որմիզդի ընկալեալ ի Նեստորի ուսմանէն Եպիսկոպոս զոմն, և ի նոյն հայհոյող վարդապետութիւն զինքն տուեալ յառաջ ունելով զՔաղկեդոնի ախտն, ապա թէպէտև զայքն մերժեալ զմրուր դեղոյն պահեցին, և ուժգնագոյն ևս զամբարշտութիւն իւրեանց յերրորդ գրին ընկալաք, և պարծանօք խրոխտացեալ ոչ թողուլ զաղանդն. այլև զմեզ զկնի իւրեանց թիւրեալ խոտորատ ուսուցանել համարձակեցաւ ամբարիշտն Կիւրոն։ Վասնորոյ և զյառաջագոյն սահման վարդապետացն մերոց, զոր ի վերայ Հոռոմին հատին, և կացցէ մինչև ցբուն, թէ ոչ դարձցին ի ճշմարիտն, մեք զնոյն և ի վերայ Վրաց հրամայեցաք, ամենևին մի՛ հաղորդել ընդ նոսա. մի՛ յաղօթս, մի՛ ի կերակուրս, մի՛ յըմպելիս, մի՛ ի բարեկամութիւնս, մի՛ ի դայեակութիւնս, մի՛ աղօթեմք երթալով ի Խաչն, և մի՛ ի մեր եկեղեցիս զնոսա ընդունել. այլև ամուսնութեամբ ամենևին հեռանալ. բայց միայն գնել ինչ և կամ գնոյ. . . . . . . . :

# ՅԱՆԿ

## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՏՈՒԱԾԻ

Երես

Երես

~~~~~~~~~~
~~~~~~~~~~